# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
**ИЗДАЕТСЯ С 1922 г.**
**Выходит один раз в месяц**
**на армянском языке**

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ**
**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



**ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ**

## СОДЕРЖАНИЕ





# ՀԱՍՏԱՏԱԿԱՄՈՐԵՆ ԱՌԱՋ ԸՆԹԱՆԱԼ

## Ընկեր Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ ելույթը Լենինգրադի կուսակցական կազմակերպության ակտիվի ժողովում 1985 թվականի մայիսի 17-ին

*Թանկագին ընկերնե՛ր։ Նախ և առաջ թույլ տվեք ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի անունից ջերմորեն, սրտանց ողջունել այսօրվա հանդիպման մասնակիցներին։* (Երկարատև ծափահարություններ)։

*Լենինգրադում գտնվելու օրերը համընկան մեր ժողովրդի, մեր երկրի, մեր կուսակցության կյանքում մեծ ու կարևոր իրադարձության՝ Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի հետ։ Եվ ես կուզեի օգտվել այս հանդիպումից՝ շնորհավորելու ձեզ բոլորիդ և հանձին ձեզ բոլոր լենինգրադցիներին այդ նշանակալից տարեթվի առթիվ։* (Ծափահարություններ)։

*Երբ ես ասում եմ այդ մասին, ամենից առաջ նկատի ունեմ այն վիթխարի ավանդը, որ լենինգրադցիները ներդրեցին ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակում, ընդ որում ցուցաբերելով չտեսնված հերոսություն, ջերմ նվիրվածություն սովետական հայրենիքին, տոկունություն ու անձնուրացություն մեր իդեալների համար մղված պայքարում։* (Ծափահարություններ)։ *Ես նկատի ունեմ նաև այն վիթխարի ավանդը, որ լենինգրադցիները ներդրեցին ետպատերազմյան շինարարության մեջ անցած քառասուն խաղաղ տարիների ընթացքում։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը, մեր ողջ կուսակցությունն ու ժողովուրդը բարձր են գնահատում լենինգրադցիների մարտական ու աշխատանքային սխրագործությունը, այն ամենը, ինչ արված է և արվում է Լենինգրադի կուսակցական կազմակերպության, քաղաքի և մարզի աշխատավորների կողմից Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նվաճումների ամրապնդման նպատակով։*

*Լենինգրադի կուսակցական կազմակերպությունը, Լենինգրադի բանվոր դասակարգը, քաղաքի և մարզի բոլոր աշխատավորները սովետական ժողովրդի առաջավոր ջոկատն են, լենինյան Կենտրոնական կոմիտեի հուսալի պատվարը պատմության անցյալի բոլոր կարուկ շրջադարձներում և մեր հասարակության զարգացման այժմյան՝ նույնպես բարդ փուլի պատմական խնդիրների իրականացման գործում։* (Ծափահարություններ)։

*Սա իմ առաջին գործուղումն է այն բանից հետո, ինչ Կենտրոնական կոմիտեի որոշմամբ ինձ վրա նոր պարտականություններ դրվեցին։ Եվ, իհարկե, պատահական չէ, որ այն դարձավ գործուղում դեպի ձեր քաղաքը։ Դա պայմանավորված է, ինչպես ես արդեն ասել եմ ավելի վաղ, քաղաքական, հասարակական, տնտեսական և կուլտուրական այն դերով, որ խաղում են Լենինգրադն ու Լենինգրադի մարզը մեր բազմազգ սոցիալիստական պետության կյանքում։* (Ծափահարություններ)։

Այս օրերին մի շարք կարևոր հանդիպումներ ու զրույցներ տեղի ունեցան լենինգրադցիների հետ։ Զրույցներ բանվորների, գիտնականների, մասնագետների, ձեռնարկությունների, կազմակերպությունների, հիմնարկությունների ղեկավարների հետ, հանդիպումներ գործարաններում, կառույցներում, գիտական լաբորատորիաներում, ուսումնական հաստատություններում։ Հանդիպումները ցույց են տալիս, որ կոմունիստները, կոմերիտականները, Լենինգրադի բոլոր աշխատավորները հաստատակամորեն աշխատում են կենսագործել կուսակցության պլանները և իրենց աշխատանքով ծանրակշիռ ավանդ են ներդնում մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական պոտենցիալի ամրապնդման գործում։

Լենինգրադի ռեգիոնի տնտեսական ու սոցիալական հետագա կարգացման հարցերը կուսակցության մարզկոմի խնդրանքով իր. ժամանակին քննարկվել են պետական, գիտական, տնտեսական համապատասխան կազմակերպություններում, ինչպես և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում ու կուսակցության Կենտրոնական կոմիտեում և հավանություն ու աջակցություն ստացել։

Լենինգրադում իմ այժմյան, թեև կարճատև, այցի և նախատեսված պլանների իրականացման ասպարեզում կուսակցական կազմակերպության և աշխատավորական կոլեկտիվների գործունեությանը ծանոթանալու ընթացքում ես մեծ գոհունակությամբ նկատեցի, որ այդ աշխատանքն արդեն ձեռք է բերել խոր, մասշտաբային բնույթ։ Եվ Կենտրոնական կոմիտեի անունից կուզենայի ողջունել մարզի և քաղաքի կուսակցական ու տնտեսական ակտիվի նման մոտեցումն այդ բացառիկ կարևոր պետական խնդրի լուծմանը։

Հավանաբար այսօր արդարացի կլինի ասել, որ աշխատանքի ողջ մասշտաբային ծավալմամբ հանդերձ, դուք դեռևս գտնվում եք այդ կարևոր ճանապարհի սկզբին։ Միևնույն ժամանակ ինձ վրա մեծ տպավորություն գործեց, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման և էկոնոմիկայի զարգացման, այն նոր ռելսերի՝ ինտենսիվացման ռելսերի վրա փոխադրելու պրոբլեմներով այսօր ապրում են թե՛ կուսակցական, թե՛ տնտեսական կադրերը, գիտնականներն ու ինժեներատեխնիկական աշխատողները։ Եվ, որ առանձնապես կարևոր է, այդ պրոբլեմներն առաջին պլան են քաշվում ձեռնարկությունների, տնտեսական կազմակերպությունների, գիտական հիմնարկությունների աշխատավորական կոլեկտիվների գործունեության մեջ։

Քաղաքի արդյունաբերության ապրած արդի նոր փուլի առանձնահատուկ նախանշանն այն է, որ երիտասարդությունն ակտիվորեն հակվել է դեպի գիտատեխնիկական առաջադիմությունը։ «Կիրովի գործարան» միավորման արտադրական ճկուն համակարգերի տեղամասում ես զրուցեցի մի երիտասարդ բանվորի հետ, որը մի այլ տեղամասից անցել էր այն տեղամասը, որտեղ արմատավորվում է ռոբոտների, ծրագրաթվային կառավարմամբ մշակող կենտրոնների համակարգ, ընդ որում կորցնելով աշխատավարձի մի մասը։ Այնուամենայնիվ, նա այստեղ է եկել, որպեսզի դառնա հենց այդ, այսպես ասած՝ գիտատեխնիկական խոպանի մասնակիցը։ Փաստն ինքնին հետաքրքրական է։

Ամբողջ այս երեք օրը, այդ թվում նաև այսօր, երբ «Էլեկտրոսիլա» միավորումում մենք ծանոթացանք ավտոմատ նախագծման համակարգի, այն արտադրության մեջ, կոնստրուկտորների, նախագծողների աշխատանքում արմատավորելու հետ, այդ մասին մեզ պատմեցին հիմնականում դարձյալ երիտասարդ ինժեներները։ Իսկ նրանց կողքին են մեծավաստակ գիտնականներն ու նրանց «նահապետ» ակադեմիկոս Ի. Ա. Գլեբովը։ Այսօր ժողովրդական տնտեսություն եկող երիտասարդ գիտական ու ինժեներական սերնդի և մեր ականավոր գիտնականների այդ դաշինքն էլ ահա գործնականում կապահովի այն մեծ խնդրի լուծումը, որին ձեռնամուխ է եղել ձեր կուսակցական կազմակերպությունը։

Թերևս մենք բոլորս պետք է վերակառուցվենք, բոլո՛րս։ Ես նույնիսկ կասեի այսպես՝ բանվորից մինչև մինիստրը, մինչև կուսակցության Կենտրոնական կոմիտեի քարտուղարը, մինչև կառավարության ղեկավարները։ Բոլորս



պետք է յուրացնենք նոր մոտեցումներ ու հասկանանք, որ մեզ համար այլ ճանապարհ չկա։ Եվ ես ուզում եմ հետո նորից անդրադառնալ դրան։

Ինձ համար օգտակար էին հանդիպումներն ու զրույցները Լենինգրադում։ Դրանք հնարավորություն տվին մի անգամ ևս քաղաքի ու մարզի օրինակով ստուգելու այն մոտեցումները, որոնք Կենտրոնական կոմիտեն և սովետական կառավարությունը դնում են մեր հեռանկարի տնտեսական ստրատեգիայի հիմքում։ Ես նոր, համոզիչ փաստարկներ քաղեցի հօգուտ մեր գծի ճշմարտացիության։ Այստեղ շատ համախոհներ գտնվեցին, և ո՛չ միայն ղեկավարների շրջանում, ո՛չ միայն նախատեսված զրույցների, այլև շատ, այսպես ասած, չպլանավորված հանդիպումների ընթացքում։

Մենք հույս ունենք, որ մեր էկոնոմիկայի հասունացած հարցերի լուծման գործում այսօր աչքից ընթացող լենինգրադցիների փորձը մեծ հետաքրքրություն կներկայացնի և յուրատեսակ դպրոց կհանդիսանա արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, գիտահետազոտական ինստիտուտների և նախագծակոնստրուկտորական կազմակերպությունների համար, կուսակցական ու տնտեսական կադրերի համար։ Չէ՛ որ այդ աշխատանքի մասշտաբներն այժմ ընդլայնվում են երկրի բոլոր ճյուղերում ու ռեգիոններում։

Դա, մի կողմից, պատիվ է բերում լենինգրադցիներին, բայց, մյուս կողմից՝ պատրաստ եղեք հյուրեր ընդունելու։ (Ծափահարություններ):

Դրանով է ուժեղ մեր հասարակությունը, դրանով է ուժեղ սոցիալիզմը, որ նվաճումների փորձից, հատկապես սկզբնական փուլի նվաճումների, երբ սկսում են լուծվել նոր, խոշոր հարցեր, կարող են օգտվել բոլոր մյուսները։ Ահա դա էլ մեր սոցիալիստական կոլեկտիվիզմն է գործողության մեջ, մեր տնտեսավարման սոցիալիստական համակարգը, որը բովանդակում է վիթխարի պոտենցիալ հնարավորություններ։ Փորձի փոխանակում՝ այդ է մեր առաջընթացի հզոր արագացուցիչը։

Մենք հույս ունենք, որ լենինգրադցիները պատշաճ ուշադրությամբ կվերաբերվեն այն բանին, որպեսզի հաղորդեն իրենց կուտակած ողջ լավագույնը և կուսակցությանն օգնեն ավելի արագ իրականացնելու ամենադժվար փուլը՝ նոր պահանջների ոգով կադրերի հոգեբանական վերակառուցման փուլը։ Դրանից հիմքում ընկած է կողմնորոշումը դեպի ժամանակակից առաջավոր տեխնիկան, առաջավոր տեխնոլոգիան, գիտատեխնիկական առաջադիմությունը։

Չեմ կարող չասել, որ Լենինգրադում տեղի ունեցած բազմաթիվ հանդիպումներն ու զրույցները կուսակցության Կենտրոնական կոմիտեի համար վիթխարի քաղաքական նշանակություն ունեն։ Այստեղ ես կարող էի վկայակոչել այն բազմաթիվ դիմումները, ցանկությունները ու խորհուրդները, որոնք այս օրերին լենինգրադցիներն արտահայտել են ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության հասցեին։ Ես դա դիտում եմ որպես պատվիրան, քաղաքական պատվիրան։ Արժե մեջ բերել մի քանի այդպիսի համառոտ, տարողունակ արտահայտություններ։ Ասպստամբության հրապարակում, երբ ես հարցրի՝ «Դուք ի՞նչ կուզենայիք ցանկանալ Կենտրոնական կոմիտեին», մի բանվոր պատասխանեց. «Հաստատակամորեն շարունակել այն, ինչ սկսել եք»։ (Բուռն ծափահարություններ):

Այսօր «Էլեկտրոսիլա» միավորումում արտադրամասից դուրս գալու ժամանակ մեզ ուղեկցելու հավաքվեց բանվորների մի ոչ մեծ խումբ։ Ես կրկին նույն հարցը տվեցի և ստացա, ըստ էության, շատ խոր պատասխան։ Ասվեց՝ «Կարևոր է թույլ չտալ, որ խոսքը գործից տարբերվի»։ Ընկերնե՛ր, դա իսկական ճշմարտություն է։ (Բուռն ծափահարություններ):

Մենք կարող ենք, և դրանում համոզված ենք, որ ճիշտ կսահմանենք մեր սոցիալ-տնտեսական քաղաքականության հիմնական ուղղությունները։ Մենք ունենք վիթխարի քաղաքական փորձ, որ կուտակվել է մեր կուսակցության, մեր ողջ հասարակության կողմից մեր առաջընթացի դժվարին ճանապարհին, որը բացվեց 1917 թվականին այստեղ, Սմոլնիում, Լենինգրադում։ Մեր ժողովուրդը ամենակրթվածն է աշխարհում, ժողովուրդ, որը հավասարը

չումի իր հայրենասիրությամբ։ Մենք ունենք հզոր գիտություն, գիտատեխնիկական, ստեղծագործական մտավորականության հզոր կորպուս։ Այլ կերպ ասած, մենք կարող ենք և, ես համոզված եմ, կգնանք դեպի համագումար երկրի սոցիալ-տնտեսական զարգացման լավ նախապատրաստված, կշռադատված ծրագրով։ Մենք պետք է լայնորեն քննարկենք այն կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում։ Մենք համագումար կգնանք մշակված, ամբողջական, մոբիլիզացնող քաղաքականությամբ, քաղաքականությամբ հօգուտ ժողովրդի, խաղաղասիրական քաղաքականությամբ, ակտիվ քաղաքականությամբ, որը մեր հասարակությանը պիտի դինամիզմ հաղորդի։

Բայց, ընկերնե՛ր, այսօր իսկ ակնբախ է, որ այդ քաղաքականության գլխավոր առանցքը լինելու է մեր առաջընթացի արագացման անհրաժեշտությունը, առավել խելամիտ, առավել պատասխանատու, առավել կարգապահ աշխատանքի անհրաժեշտությունը։ Կպահանջվեն առավել մեծ կարգուկանոն, գիտական որոնում, խոշոր, կարևոր լուծումներ։ Կպահանջվեն ստեղծագործական բոլոր ուժերի վիթխարի մոբիլիզացում, գործը նոր ձևով վարելու կարողություն։ Եվ ոչ միայն էկոնոմիկայի ոլորտում, այլև սոցիալական ոլորտում, մշակույթի, գաղափարախոսության ոլորտում, մի խոսքով, բոլոր ոլորտներում։

Մենք ռեալ հնարավորություններ ունենք։ Բայց, ինչպես ասում են, հնարավորության և իրականության միջև վիթխարի տարածություն կա։ Համախմբվելու կարողության, նախատեսվածի ճշմարտացիությանը համոզված լինելու շնորհիվ մենք պետք է այդ տարածությունը որքան կարելի է արագ անցնենք։

Հիշեցեք, մինչև պատերազմը ավագ սերունդները լուծեցին այն խնդիրը, թե ինչպես տասնամյակների ընթացքում անցնել այն ճանապարհը, որը մյուս երկրներն անցել էին հարյուրամյակների ընթացքում, որպեսզի մեր երկիրը ծանր դրության մեջ չընկնի։ Դեռևս այն ժամանակ զգացվում էր, որ աճում է սպառնալիքն առաջին հերթին սոցիալիստական պետության հանդեպ։ Այն ժամանակ ամեն ինչ չէ, որ հաջողվում էր անել, բայց հիմնականում հաջողվում էր։ Եվ դրանով դրվեցին 1945 թվականի հաղթանակի հիմքերը։

Ահա այժմ էլ հարկավոր է նույնպես մեծ ճանապարհ անցնել և նույնպես կարճ ժամանակում։

Եվ այդ շարժումը պետք է գլխավորեն այնպիսի առաջավոր, իրենց փորձով ու հնարավորություններով հայտնի կուսակցական կազմակերպություններ, ինչպես Լենինգրադինը, Մոսկվայինը, Դոնեցկինը, Սվերդլովսկինը, Նովոսիբիրսկինը և ուրիշներ, ես այժմ պարզապես չեմ ուզում բոլորը թվարկել։ Կարծում եմ, բոլորից առաջ և ամենքից լավ այժմ այդպիսի աշխատանք է ծավալվել Լենինգրադում, ընդ որում ռեալ և ոչ թե դեկլարատիվ։ Ուզում եմ ձեզ հաջողություն ցանկալ դրա իրականացման գործում, իսկ մենք կաջակցենք ձեզ։ (Ծափահարություններ)։

Իսկ ինչո՞ւ է, իսկապես, մեզ հարկավոր երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը։ Ինչո՞ւ հանգիստ կյանքը մեզ ձեռք չի տալիս։ Չէ՞ որ կարելի է և ավելի հանգիստ ապրել։ Լարվածության մոտ յոթանասուն տարի, այսպես ասած, Հոկտեմբերից սկսած։ Թվում է, թե կարելի է նաև փոքր-ինչ լիցքաթափվել։

Ո՛չ, ընկերնե՛ր, նման հնարավորություն, գոնե այժմ, պատմությունը մեզ չի տալիս։ Եվ չգիտեմ՝ կտա՞ արդյոք։ Իսկ հարկավո՞ր է արդյոք լիցքաթափվելու այդ կողմնորոշումը դնել մեր քաղաքականության, մեր գործնական աշխատանքի հիմքում։ Հազիվ թե դա ճիշտ է։

Այդ մասին կան նաև կոնկրետ տվյալներ։ Վերջին ժամանակներս ազգային եկամտի աճի տեմպերով մենք շարժվում ենք տարեկան մոտ երեք տոկոսի սահմաններում։ Մի քիչ ավելի, մի քիչ պակաս, բայց մոտ երեք տոկոս։ Մինչ հաշվումները ցույց են տալիս, որ մեզ հարկավոր է առնվազն չորս։ Եթե չորս տոկոս չլինի, երբ նույնիսկ ավելին է հարկավոր, ապա հարց է ծագում՝



ի՞նչ անել։ Կրճատե՞լ կենսամակարդակի աճի տեմպերը։ Սեղմե՞լ ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման ծրագիրը։ Դրան գնալ մենք չենք կարող։

Կարծում եմ, այն կոնցեպցիան, որ մենք մշակել ենք կուսակցության Կենտրոնական կոմիտեում ու կառավարությունում և որի մասին այսօր ես համառոտակի տեղեկացնում եմ ձեզ, ճիշտ է։ Եվ մենք պետք է ելնենք դրանից։ Այլ մոտեցում չկա։ Իսկ եթե չկա, ապա նաև հանգստավետ կյանքի հույս էլ չի լինի։ Եվ դրան պետք է պատրաստ լինի մեր կուսակցական ակտիվը։ (Ծափահարություններ)։

Կուսակցական ակտիվը մեր կուսակցության հենց այն մասն է, որ միշտ, բոլոր փուլերում ստանձնել է մասսաների մոբիլիզացման, այն խնդիրների լուծման ուղիների որոնման դժվարին դերը, որոնք այս կամ այն պատմական ընագծում մեր առջև դրել է կյանքը։

Այս օրերին ես առիթ ունեցա հաղորդակցվելու Լենինգրադի կուսակցական կազմակերպության ակտիվի շատ ընկերների հետ։ Եվ դրանից խոր տպավորություններ մնացին։ Ես համոզվեցի. այն, ինչ դրվում է Լենինգրադի վրա, կկատարվի։ Լենինգրադցիները բարձր կազմակերպվածության, իրենց խնդիրների պետական ըմբռնողության օրինակ կտան մեր զարգացման արդի փուլում։ (Ծափահարություններ)։

Բայց նկատի ունեցեք, որ ձեզ մոտ ևս տեմպերի առումով ամեն ինչ կարգին չէ, թեև պլանները դուք կատարում եք։ Երևի մենք ձեզ իջեցրա՞ծ պլաններ ենք տալիս։ (Աշխուժություն դահլիճում)։ Իմ կարծիքով, ձեր պլաններն այնուամենայնիվ լարված են։ Բայց և այն դեպքում, որ քաղաքն ու մարզը կկատարեն հնգամյակը, հենց հնգամյակը, և ոչ թե տարեկան պլանների գումարը, պետք է ասել, որ անբավարարվածությունը երկրի էկոնոմիկայի շարժի տեմպերից լիովին վերաբերում է նաև Լենինգրադին։ Ես դրան կավելացնեի, որ աշխատանքի արտադրողականությամբ ևս լենինգրադցիներն այսօր այնքան էլ չեն կարող հպարտանալ։ Իսկ մենք չենք կարող յոլա գնալ առանց աշխատանքի արտադրողականության աճի, առանց այն բանի, որ նա ամեն տարի աճի վեց, յոթ, ավելի լավ է տասը տոկոսի չափով, իսկ վճռական շատ ճյուղերում այն բարձրանա ավելի արագ։ Մենք չենք ապահովի համաշխարհային բարձր մակարդակ դուրս գալը, եթե հենց նման մոտեցում չլինի։

Ուստի ճիշտ է, որ լենինգրադցիները քաջություն ունեցան գնահատելու, թե իրապես գործն ինչպես է ընթանում, կտրուկ շուռ տվին այն և օրինակ ցույց տվին երկրի մյուս ռեգիոններին։

Այդ առնչությամբ, ընկերներ, մի անգամ ևս լիովին հավանություն եմ տալիս «Ինտենսիվացում—90» ծրագրին ու, թեև այն արդեն հավանության է արժանացել, ուզում եմ կրկին պաշտպանել մեր հանդիպման ընթացքում։ Ամենից առաջ նրա համար, որ դա կապահովի բուն այդ նպատակին հասնելը, այն է՝ կապահովի աշխատանքի արտադրողականության հարկ եղած աճը։ Ի դեպ, դա արձանագրված է ինտենսիվացման ծրագրին նվիրված ցուցահանդեսում։ Լենինգրադցիներն այդ ասել են ամբողջ աշխարհի առաջ։ Այժմ դուք այլ ելք չունեք։ Ուրիշ ճանապարհ չկա։

Բոլորի համար պարզ է, և մենք այժմ արդեն լիովին համոզված ենք, որ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու միակ միջոցը գիտատեխնիկական առաջադիմությունն է։ Բայց չէ որ, որպեսզի այն ներթափանցի մեր ողջ էկոնոմիկան, հարկավոր է նախ՝ բոլորովին այլ հիմքի վրա արդիականացնել մեր մեքենաշինությունը, իսկ մեքենաշինության միջոցով, գիտական նվաճումները մեքենաներում ու սարքավորումներում իրականացնելու միջոցով անցնել նոր տեխնոլոգիաների, նորացնել ամբողջ ժողովրդական տնտեսության արտադրական ապարատը։

Դրա համար ժամանակ է պետք։ Եվ ոչ մեկ, ոչ երկու տարի։ Իսկ ի՞նչ անել այն ժամանակաշրջանում, երբ մենք կբարձրացնենք մեքենաշինությունը, կբացենք գիտական նվաճումների ճանապարհը։ Չէ որ հարկավոր է առաջ մղել բոլոր ոլորտները, այդ թվում և՛ պաշտպանությունն ամրապնդել, և՛ ապահո-

վել նյութական բարեկեցության աճը։ Ուստի էկոնոմիկայի առավել արագ զարգացման համար մղվող պայքարի առաջին փուլում մենք կարող ենք և պետք է էական հավելում ստանանք կարգ ու կանոնի հաստատման, աշխատանքային, տեխնոլոգիական և պետական կարգապահության բարձրացման հաշվին։

Թվում է՝ հարցն առաջին անգամ չի բարձրացվում։ Մենք շատ ենք խոսում այդ մասին, և արժե՞ արդյոք կարգապահության մասին խոսել ամեն օր։ Ոչ միայն ամեն օր, ամեն ժամ հարկավոր է խոսել այդ մասին, իսկ ամենից գլխավորը՝ ամեն ինչ անել, որպեսզի կարգապահությունն ամրապնդվի։

Ես կրկին ուզում եմ վկայակոչել ՍՄԿԿ Կենտկոմում աշխատավորական կոլեկտիվների ղեկավարների, մասնագետների և գիտնականների հետ ապրիլյան հանդիպման ժամանակ բերված օրինակը։ ՍՄԿԿ Կենտկոմի՝ Մինսկի ավտոմոբիլային գործարանում գործերի վիճակն ուսումնասիրող բրիգադի աշխատելու օրերին ձեռնարկությունում աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 18 տոկոսով։ Իսկ մենք գրեթե նույնպիսի խնդիրներ ենք դընում ամբողջ հնգամյակների համար։ Տեսեք, թե մենք ինչպիսի ռեզերվներ ունենք։ Այդ նույն ժամանակ հանդիպմանը ելույթ ունեցող մյուս ընկերները, օրինակ՝ Ղազախստանից, ասացին. այո՛, մենք քանիցս համոզվել ենք, որ դա այդպես է լինում, երբ սկսում ենք ակտիվ աշխատել մարդկանց հետ արտադրամասերում, ինքներս բացահայտում ու վերացնում ենք մեր թերությունները։ Չէ՛ որ շատ բանի պատճառը ոչ թե բանվորի անկարգապահությունը կամ անբավարար պատասխանատվությունն է, այլ արտադրության անկազմակերպվածությունը, նրա ոչ ռիթմիկությունը, որը խախտում է աշխատանքային ցիկլը, հունից դուրս բերում բանվորին։ Այսպես, ուրեմն, որտեղ այդ ամենը հենց արտադրության մեջ իրենց ձեռքն են վերցնում վարպետները, արտադրամասերի պետերը, ինչպես և գլխավոր հրամկազմը, այնտեղ աշխատանքի արտադրողականությունն աճում է տասը, տասներկու, տասնհինգ, որպես մինիմում՝ ութ տոկոսով։

Ուստի առաջին փուլում, մինչ մենք կծավալենք գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, մենք պետք է ամեն ինչ վերցնենք ու կորզենք լավագույն կազմակերպումից, գործի նկատմամբ մեր աշխատավորների բարձր պատասխանատվությունից, բարեխիղճ վերաբերմունքից։ Հենց այստեղ է հարկավոր կուսակցական կազմակերպությունների, արհմիությունների, կոմերիտմիության աշխատանքը։ Այստեղ հարկավոր է միջոցառումների մի ամբողջ համակարգ, որն ընդգրկեր դաստիարակչական, կազմակերպական, տնտեսական և, անշուշտ, նյութական խրախուսական միջոցառումների կոմպլեքս։

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի մասնակիցները միահամուռ պաշտպանեցին Կենտկոմի քաղբյուրոյի եզրակացություններն այն մասին, որ մենք իրոք կարող ենք արագ փոխհատուցում ստանալ, եթե գործադրենք կազմակերպական, տնտեսական և սոցիալական բոլոր ռեզերվները, ընդ որում ակտիվացնենք ամենից առաջ մարդկային գործոնը, հասնենք այն բանին, որ ամեն ոք իր բանվորական տեղում աշխատի ազնիվ ու բարեխիղճ, արդյունավետ։ (**Ծափահարություններ**)։

Ընկերնե՛ր, շատ բան է արվում Լենինգրադում, քանզի այն հանդիսանում է բարձրորակ մեքենաշինության, էներգամեքենաշինության, նավաշինության, ռադիոտեխնիկական, սարքաշինական և արդյունաբերության այլ ճյուղերի խոշոր կենտրոն։ Քաղաքում կենտրոնացված են 300 գիտական, կոնստրուկտորական, տեխնոլոգիական, նախագծային կազմակերպություններ, երկրի այդ կատեգորիայի յուրաքանչյուր տասներորդ աշխատող աշխատում է Լենինգրադում։

Ինստիտուտների և կոնստրուկտորական բյուրոների մշակած նախագծերի մակարդակով են պայմանավորված երկրում կառուցվող շատ նավերի, էներգետիկայի, սև, գունավոր մետալուրգիայի օբյեկտների, քիմիական և նավթաքիմիական կոմպլեքսների ցուցանիշները։ Գիտակցելով այդ՝ ձեր քաղաքի և մարզի կուսակցական կազմակերպություններն ու կադրերը շատ բան են



անում իրենց պատասխանատվության բարձրության վրա գտնվելու համար։

Հետաքրքիր շատ բան է ծնվել այստեղ, դարձել ողջ երկրի սեփականությունը։ Լավ հայտնի են գործնական այն նախաձեռնությունները, որոնք ծնվել են քաղաքի աշխատավորական կոլեկտիվներում։ 60-ական թվականներին Լենինգրադի կոմունիստները կանգնած էին արտադրական միավորումների ստեղծման ակունքների մոտ, 70-ական թվականներին ձեր քաղաքում սկսվեց աշխատավորական կոլեկտիվների սոցիալական, իսկ այնուհետև տնտեսական ու սոցիալական զարգացման պլանավորումը։ Այժմ դա արվում է ամբողջ երկրով մեկ։ Լենինգրադի առաջավոր միավորումների կոլեկտիվների սկսած շարժումը՝ հանուն արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման և նոր տեխնիկայի ստեղծման ու յուրացման ժամկետների մեկուկես-երկու անգամ կրճատման, բանվոր դասակարգի համալրման նախապատրաստման ու դաստիարակության փորձը և շատ այլ բաներ մեր կուսակցության արժեքավորագույն սեփականությունն են։

Ինչի վրա կուզենայի ուշադրություն դարձնել։ Քանի որ մենք դուրս ենք գալիս նոր բնագծեր, սարքավորման, սարքերի և այլնի տեխնիկական նոր մակարդակ, ներդնում ենք մեքենաների նոր համակարգեր, անչափ աճում են պահանջները այդ ողջ արտադրանքի որակի, դրա հուսալիության նկատմամբ։ Եվ ահա այդ խնդիրը որոշ կոլեկտիվներ հաջողությամբ են լուծում, լավ, մեծ հաջողությամբ, մյուսները՝ փոքր։ Թերևս այստեղ նույնպես արդարացի կլինի պահանջ ներկայացնել գլխամասային ինստիտուտներին, մասնավորապես Պոլզունովի անվան կաթսայատուրբինային և «Էլեկտրոմաշ» համամիութենական գիտահետազոտական ինստիտուտին, «Էլեկտրասպարատ» արտադրական միավորմանն այն բանի համար, որ աշխատանքի հուսալիությամբ, նյութատարությամբ, ավտոմատացման աստիճանով մի շարք արտադրանքներ հաճախ չեն համապատասխանում առաջավոր մակարդակին։

Ընդհանրապես պետք է դնել այսպիսի խնդիր— Լենինգրադի և Լենինգրադի մարզի արդյունաբերության ամբողջ արտադրանքը պետք է մրցունակ լինի համաշխարհային շուկայում։ Միայն այդպես։ Թե չէ մենք ինչպե՞ս կարող ենք ամբողջ երկիրը կողմնորոշել դրան, եթե Լենինգրադը ձեռնամուխ չլինի և նման խնդիր չդնի։ (**Ծափահարություններ**)։

Առանց պատշաճ հաստատակամության, կարելի է նույնիսկ ասել՝ պասսիվ է կատարում երկրի գլխամասային կազմակերպության իր դերը «Լենինգրադի էլեկտրամեխանիկական գործարան» արտադրական միավորումը թվածրագրային սարքավորումների մշակման գործում։ Ձեր թվային սարքերը միշտ չէ, որ բավարարում են սպառողներին։ Կարծում եմ, ճիշտ կվարվենք, եթե այսպիսի խնդիր առաջադրենք. յուրաքանչյուր գործարան, յուրաքանչյուր միավորում պետք է իմանա իր արտադրանքի գծով լավագույն ցուցանիշները արդյունաբերականորեն առաջավոր մյուս երկրներում և դրանից անհրաժեշտ եզրակացություններ անի գործնական աշխատանքում։

Ես կարող եմ նաև այլ օրինակներ վկայակոչել այն նկատառումով, որ մենք իրատեսորեն նայենք էկոնոմիկայում և մյուս բոլոր ոլորտներում տեղի ունեցող պրոցեսներին, իրադրությանը։ Քանի որ իրադրության ռեալ գնահատականը հնարավորություն կընձեռի մշակելու ռեալ, արդյունավետ միջոցներ։

Սարքավորումների խափանման հետևանքով էլեկտրակայաններում էլեկտրաբլոկների պարապուրդները ամեն տարի վիթխարի կորուստներ են պատճառում ժողովրդական տնտեսությանը։ Այստեղ ամեն ինչ չէ, որ կախված է լենինգրադցիներից, ոչ ամեն ինչ։ Բայց շատ բան է կախված, որովհետև դուք շատ բան եք արտադրում այդ ճյուղերի համար։

Այսօր արդյունաբերությունը հաստոցաշինությունից ակնկալում է ոչ թե առանձին, թող որ նույնիսկ լավ հաստոցների, այլ արտադրական կոմպլեքսների մատակարարում, աշխատանքի արտադրողականության բազմապատիկ բարձրացում ապահովող կոմպլեքսներ, մեքենաշինական արտադրության սկզբունքորեն նոր, շարժունակ կազմակերպում։ Եվ այդ կապակցությամբ

լենինգրադցիների առջև խնդիր է դրվում՝ թողարկել նման կոմպլեքսներ։ Այժմ արդեն այդ աշխատանքը ծավալվել է լայն ճակատով, և կուզենայինք ամեն կերպ պաշտպանել այն ու հույս հայտնել, որ դրա մասշտաբները կընդլայնվեն։

Գիտատեխնիկական առաջընթացի արագացումը և էկոնոմիկայի ինտենսիվացումը պահանջում են կապիտալ շինարարության գործերի բարելավում։ Ինչպես գիտեք, վերջին ժամանակներս մի շարք որոշումներ են ընդունվել այդ ճյուղի զարգացման արմատական պրոբլեմների վերաբերյալ։ Խոսքը կապիտալ շինարարության պլանավորման, կազմակերպման և կառավարման բարելավման, շինարարության մեջ նախագծանախահաշվային գործի, վճարման և աշխատանքի խթանման համակարգի կազմակերպման կատարելագործման մասին է։ Պատրաստվում է ևս մի կարևոր փաստաթուղթ՝ կապիտալ շինարարության մեջ ինդուստրացման հետագա զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման վերաբերյալ։

Այժմ շատ կարևոր է կազմակերպել այդ որոշումների կատարումը։ Կարծում եմ, որ լենինգրադցիներն օրինակ ցույց կտան նաև այս գործում։

Եվս մի հարց, որի մասին կուզեի ասել։ Խոսքը նյութական ռեսուրսների խնայողության մասին է։ Մենք ձեզ հետ, ընկերներ, պետք է հիմնականում անցնենք այն բանին, որպեսզի արտադրողականությունը հաշվվի ազգային եկամտի հիման վրա։ Իսկ ազգային եկամուտն այնքան մեծ է, որքան փոքր են ոչ միայն կենդանի, այլև առարկայացած աշխատանքի ծախսումները։ Դեռևս Մարքսն էր հարցն այդպես դնում, այդպես էր դնում նաև Լենինը։

Այդ առումով մեզ անհրաժեշտ է տնտեսավարների մտածողության մեծ վերակառուցում։ Չէ որ հաճախ մտածում են ոչ թե ազգային հարստության մասին, ոչ թե դրա բնական արտահայտության, այլ այն մասին, որ արտադրանքն ավելի թանկ լինի, որպեսզի դրա մեջ ավելի շատ բան ներառվի, որպեսզի միավորման ներսում միևնույն իրը տեղից տեղ քշվելով, ուռճացնի «համախառնը»։ Արդյունքը՝ «համախառնը» դրամական արտահայտությամբ աճում է, իսկ ապրանքները, արտադրանքները, տեխնիկան չեն բավականացնում։ Իսկ մեզ հարկավոր են համապատասխան սարքավորումներ, կոնկրետ սպառման ապրանքներ։

Հիմա տեմպերի պրոբլեմն այդ ձևով լուծելու համար շատ մեծ «վարպետներ» կան մեզ մոտ։ Նոր գների միջոցով, ասենք, արտադրանքի միջին գնի բարձրացմամբ, ինչ-որ ինդեքսի հավելմամբ լրացուցիչ ծավալներ ստեղծելով կամ պարզապես միևնույն իրը, միևնույն արտադրանքը նույն միավորման ներսում տեղից տեղ քշելով։ Եվ տեսնում ես, որ այս կամ այն միավորումում տեմպերն աճում են։

Մենք այժմ, ընկերներ, զգալիորեն ավելի շատ հումք, էներգիա, այլ ռեսուրսներ ենք ծախսում ազգային եկամտի մեկ միավորի վրա, քան մի շարք երկրներում։ Մենք լող ենք տալիս ռեսուրսների մեջ, որովհետև վիթխարի բնական հարստություններ ունենք։ Այդ հարստությունը, ներեցեք կոպտության համար, փչացրել է մեզ։ Բայց ախր հիմա մեր ռեսուրսների 80 տոկոսը գտնվում է երկրի արևելքում, Սիբիրում։ Եվ դեպի այնտեղ շարժվելու համար հարկավոր է քաղաքներ կառուցել, հարկավոր է ճանապարհներ հարթել, հարկավոր է ամեն ինչ նոր սկսել։ Դա վիթխարի միջոցներ կպահանջի։ Ինչ-որ մի տասը տարվա ընթացքում նավթի մեկ տոննա աճի ծախսերն ավելացել են ավելի քան 1,7 անգամ։ 70 տոկոս տա՜սը տարվա ընթացքում։

Այսինքն՝ ռեսուրսները դառնում են ավելի ու ավելի դժվարամատչելի, դա թանկացնում է մեր ողջ էկոնոմիկան։ Ուստի և ռեսուրսների օգտագործման, խնայողության պրոբլեմը շատ սուր և հրատապ է։

Այնուամենայնիվ այստեղ ևս ամեն ինչ պետք է վճռվի էներգիա և ռեսուրսներ խնայող տեխնոլոգիայի հիման վրա։

Ահա մի հասարակ բան. վերջերս Կենտկոմի քաղբյուրոյում մենք քննարկեցինք ջերմաէլեկտրակայանների վերակառուցման հարցը։ Ուրեմն, հնացած սարքերով արտադրվող մեկ կիլովատ-ժամ էներգիայի վրա ծախսվում է 400, 500, իսկ տեղ-տեղ էլ 600 գրամ վառելանյութ։ Ժամանակակից սարքավորումների դեպքում՝ 240 գրամ, իսկ միջին հաշվով երկրում՝ 326 գրամ։ Եթե բոլոր ջերմաէլեկտրակայաններում ծախսն այժմ իջեցնենք մինչև միջինը, ապա մեկ տարվա ընթացքում կստանանք 20—22 միլիոն տոննա վառելանյութի խնայողություն, իսկ հնգամյակի ընթացքում՝ մոտ 100 միլիոն տոննա։ Ահա թե ինչ կարող է տալ միայն մեկ քայլը։ Ավտոմոբիլաշինության մեջ անցումը դիզելներին միլիոնավոր տոնաների խնայողություն է։ Եվ այլն։



Գյուղատնտեսության մեջ կարելի է հողը հերկել մինչև հիմնաշերտը, կարելի է մշակել նաև հարթակտրիչով ու հասնել միևնույն արդյունքներին և նույնիսկ խնայել հողը։ Այդ դեպքում վառելանյութի ծախսումները 35 տոկոսով պակաս կլինեն։ Երբ անցյալ տարի մենք փորձարկեցինք 21 մետրանոց լայնընդգրկման հնձիչը, քաղելիս մեկ հեկտարի վառելանյութի ծախսը միանգամից 3,2-ից կրճատվեց մինչև 1,7 կիլոգրամ։

Եթե յուրաքանչյուր ճյուղի գծով հարցն այսպես քննենք, կտեսնենք, թե որքան շատ ենք մենք կորցնում։ Բայց ընդ որում ոչ ոք չի սնանկանում։ Թեև, ընկերներ, դա միայն այդպես թվում է։ Ընտանիքում, երբ ինչ-որ բան պակասում է գրպանից, դու զգում ես, իսկ երբ պետական գրպանից է պակասում, ապա ոչ ոք անմիջականորեն չի զգում։

Հարկավոր է հասնել այն բանին, որ զգան, հարկավոր է պատժել մարդկանց վատնողության և խրախուսել ռեսուրսների խնայողության համար։ Իսկ մեզ մոտ դա էլ ինչպես հարկն է չի արվում։ Ահա մի պրոբլեմ, որով հիմնավորապես պետք է զբաղվել, և կրկին այն տանում է դեպի Լենինգրադ, քանի որ Լենինգրադը ճանապարհ է բացում նոր տեխնիկայի համար, որի միջոցով իրացվում են ռեսուրսներ խնայող տեխնոլոգիաները։

Այդ պրոբլեմն ընդգրկում է բոլոր ոլորտները, և պետք չէ կարծել, թե դա վերաբերում է միայն արդյունաբերությանն ու գյուղատնտեսությանը։ Ակնհայտ են շինարարական մեծ կորուստներ։ Իսկ որքան գյուղատնտեսական արտադրանք է փչանում այն պատճառով, որ անբավարար է պահպանման ու վերամշակման բազան։

Ահա մի պարզ հարց, որին մենք բախվում ենք ամեն օր, սափրվելու, լվացվելու համար ծորակը բաց անելիս։ Կոմունալ ջրամատակարարման և ջրի մաքրման գիտահետազոտական ինստիտուտի տվյալներով երկրում խմելու ջրի մոտ 21 տոկոսն առանց գործածվելու գնում է ուղիղ կոյուղի։ Բայց չէ որ այժմ որոշ երկրներ բնակչության քաղցրահամ ջրի կարիքները բավարարելու համար այն բերում են ուրիշ երկրներից։ Մեր երկրի մասշտաբով ոչ ռացիոնալ օգտագործվող ջրի մատակարարման համար ամեն տարի ծախսվում է Դնեպրոհէկի տված արտադրանքին հավասար էլեկտրաէներգիա։ Ջրի խնայողության հաշվին կարելի կլիներ հնգամյակի ընթացքում խնայել 2,5 միլիարդ ռուբլի։

Մի քանի խոսք ապրանքների արտադրության ավելացման և սպասարկման ոլորտի զարգացման մասին։ Այդ հարցերն ունեն սոցիալ-քաղաքական վիթխարի նշանակություն։ Կարևոր է հասկանալ, ընկերներ, որ մենք ապրում ենք յուրատեսակ նոր փուլ, երբ առաջին պլան են ելնում ոչ միայն և ոչ այնքան քանակական ցուցանիշները, որքան որակի, տեսականու պրոբլեմները։ Մի խոսքով այն ամենը, ինչ մենք անվանում ենք սպառողական բարձր հատկանիշներով ապրանքներ։ Եթե մենք չլուծենք որակի պրոբլեմները, չենք լուծի բնակչությանն ապրանքներով ապահովելու պրոբլեմը։ Դա՝ առաջին։

Երկրորդ, մենք պետք է հաղթահարենք մեր ապրանքաշրջանառության և սպասարկման, ես կասեի, ձևախախտված կառուցվածքը։ Այժմ մեզ մոտ մարդու դրամական ծախսերի 75, եթե ոչ ամբողջ 80 տոկոսը ծածկվում է ի հաշիվ միայն ապրանքաշրջանառության, իսկ սպասարկումների վրա շատ քիչ է ծախսվում, ավելի քիչ, քան մի շարք այլ երկրներում։

Բնակարանների նորոգումը մեզ մոտ տարվում է պլանով, բայց փորձեցեք բնակարանն ինքներդ ձեր միջոցներով նորոգել։ Անպայման հարկավոր է շաբաշնիկ գտնել։ Իսկ նա նյութերը պիտի գողանա կառույցից, և դրանք, միևնույն է, գնում են պետական ֆոնդից։ Հարց է ծագում. ի՞նչ է, մեր խելքը չի՞ կտրում ռեալ կերպով գնահատել իրադրությունը։

Կամ վերցրեք այսպիսի մի հարց։ Դուք ուշադրություն դարձրիք. որոշում է ընդունված այն մասին, որ և՛ հող, և՛ անհրաժեշտ ռեսուրսներ հատկացվեն այգիներ ու բոստաններ գցելու համար։ Հենց ոչ թե ամառանոցներ, այլ այգեգործական տնակներ ու բոստաններ։ Արդեն այն, ինչ մենք ունենք, հնարավորություն է տալիս 20 միլիոն մարդու ամռանը ոչ աշխատանքային ժամանակ աշխատել և հանգստանալ։ Եվ դարձյալ շատերը խնդրում են նման այգիներ ու բոստաններ։ Մինչդեռ մենք ինչ-որ վախենում էինք, թե դա իբր մասնավոր ձեռնարկատիրական գործունեություն է։ Իսկ ի՞նչ մասնավոր ձեռնարկատիրական գործունեություն է դա, երբ ընտանիքն զբաղվում է իր փոքրիկ այգով, ժամանակ է անցկացնում բնության գրկում։

Ահա և այժմ մենք որոշում ենք ընդունել ամեն տարի քաղաքացիներին միլիոն, միլիոն երկու հարյուր հազար հողամաս հատկացնել։ Հարկավոր է դրամական պահանջարկն ապահովել ապրանքային ռեսուրսներով ու ծառայություններով։ Այդ մասին պետք է լավ խորհել։

Ժողովրդական սպառման ապրանքների պրոբլեմի առնչությամբ ես կուզեի քննադատել ձեզ ձեր տնտեսության ամենաթույլ տեղի համար՝ Լենինգրադի և Լենինգրադի մարզի թեթև արդյունաբերության վիճակի համար։ Ես պետք է ասեմ, որ այն անհամապատասխան է մնացած ամբողջ էկոնոմիկային։ Հատկապես ետ է մնում տեխնիկայով զինումը։ Եվ ես կարող եմ միայն շնորհակալություն հայտնել թեթև արդյունաբերության աշխատողներին այն բանի համար, որ նրանք այդ ծանր պայմաններում, այնուամենայնիվ, շատ բան են անում, որպեսզի լենինգրադյան ապրանքների որակը պիտանի լինի։

Բայց, այնուամենայնիվ, տեխնիկան այն չէ, ու դրանով արտադրողականություն չես բարձրացնի։ Եվ որակի ու հարդարման չես հասնի։ Դե մի՞թե թեթև արդյունաբերությունը Լենինգրադում կարելի է այդպես վարել։

Ես կուզենայի խնդրել քաղաքի ու մարզի կուսակցական ակտիվին, մինիստրությանը՝ վերջապես ավարտել այդ հարցի մշակումը։ Այժմ պատրաստվում է նոր հնգամյակ, և հարկավոր է, որպեսզի Լենինգրադի թեթև արդյունաբերության արդիականացման, կարգավորման ուղղությամբ մշակումը ավարտվի և դրվի հնգամյա պլանում։

Երբ խորհում ես այն ամենի մասին, ինչը մենք պիտի վճռենք թե՛ էկոնոմիկայի ոլորտում, թե՛ մեր հասարակության կյանքի սոցիալական ոլորտներում, ապա, իհարկե, ամենից առաջ ծառանում են կուսակցական աշխատանքի, կուսակցական գործունեության, կուսակցական ղեկավարության արգասավորության հարցերը, մեր հասարակության զարգացման այս՝ շրջադարձային փուլում նոր խնդիրների լուծումն իր վրա վերցնելու, մեր կադրերին, ամբողջ ժողովրդին բարձրացնել կարողանալու, մեր սոցիալիստական դեմոկրատիայի ողջ համակարգը այդ խոշոր քաղաքական ու սոցիալ-տնտեսական խնդրին ծառայեցնելու կուսակցության ունակության հարցերը։

Մենք մեծ նշանակություն ենք տալիս կուսակցության կազմակերպական-գաղափարախոսական ամրապնդման, նրա աշխատանքի ոճի, մեթոդների կատարելագործման հարցերին բոլոր էշելոններում։ Եվ նման պահանջներ արտահայտվեցին Կենտկոմի ապրիլյան պլենումում։ Դրանց մասին դուք գիտեք։ Դրանք այժմ քննարկվում են կուսակցական կոմիտեների պլենումներում։ Ձեզ մոտ նման պլենում արդեն եղել է, ինչպես ինձ հայտնի է, այդտեղ ծավալվել է բովանդակալից, կուսակցական խոսակցություն։

Առջևում հաշվետու-ընտրական կամպանիան է։ Հարկավոր է, ընկերներ, հիմնավորապես խորհել ու այդ հաշվետու-ընտրական կամպանիան օգտագործել այն բանի համար, որպեսզի է՛լ ավելի բարձրացվի մեր կուսակցության ղեկավար դերը, ուժեղացվի նրա կազմակերպական, գաղափարախոսական առաքելությունը մեր հասարակության մեջ՝ հաշվի առնելով այն նոր խնդիրները, որոնք մեր առջև դրել է ժամանակը։

Հարկավոր է թարմ հայացքով նայել բոլոր թերությունների, նեգատիվ երևույթների, ամեն տեսակ վրիպումների վրա։ Դա առավել կարևոր է, եթե հաշվի առնենք, որ թուլացել է թե՛ կարգապահությունը, թե՛ պահանջկոտու-



թյունը որոշ տեղերում, նույնիսկ մեր կուսակցական ակտիվի մեջ ղեկավար կադրերի շրջանում։ Դրան պետք է վերջ տալ, ընկերնե՛ր։

Կատարելագործելով ժողովրդական տնտեսության կառավարման համակարգը՝ մենք պետք է միաժամանակ մտածենք այն մասին, որ կուսակցական կոմիտեների, ամբողջովին վերցրած կուսակցության աշխատանքի թե՛ ձևերը, թե՛ մեթոդները ժամանակի հետ համահունչ լինեն։ Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում հարկավոր է հոգալ ընտրական ակտիվի կազմավորման, կուսակցական տեղամասերը նախաձեռնող, եռանդուն ղեկավարներով ամրապնդելու մասին։ Այդ առթիվ ողջ որոշակիությամբ ղեկավար ցուցումներ են արտահայտվել և հավանության արժանացել Կենտրոնական կոմիտեի ապրիլյան պլենումում, և հարկավոր է հաստատակամորեն կենսագործել դրանք։

Մենք, իհարկե, մեր բոլոր կադրերին պետք է ինչ-որ մի շանս տանք՝ ըմբռնելու մոմենտի պահանջները և վերակառուցվելու։ Բայց նա, ով մտադիր չէ վերակառուցվել, դեռ ավելին՝ արգելակում է նոր խնդիրների լուծումը, նա պարզապես պետք է հեռանա ճանապարհից, չխանգարի։ Մենք չենք կարող մի մարդու շահերը վեր դասել ամբողջ հասարակության շահերից։ (Ծափահարություններ):

Կադրերի ընտրության, տեղաբաշխման, դաստիարակության հարցում մենք կողմնակից ենք լենինյան նորմերի պահպանման։ Չպետք է լինի կադրերի ոչ մի հալածանք։ Դա անթույլատրելի է։ Մենք պետք է ելնենք Իլյիչի այն դրույթներից, որոնք ամբողջովին հաստատվել են մեր կենսական, պատմական ողջ փորձով բոլոր տարիներին, բոլոր փուլերում, և՛ խաղաղ, և՛ մարտական օրերին։ Իսկ նա սովորեցնում էր, որ մարդկանց պետք է գնահատել քաղաքական, գործնական, բարոյական հատկանիշներով։ Ընդ որում այդ պահանջները յուրաքանչյուր փուլում ձեռք են բերում իրենց հնչեղությունը, ստանում իրենց լիցքը։ Բայց դրանց էությունն անփոփոխ է մնում։

Երբեմն ասում են. այո՛, երիտասարդներն ահա քիչ են, հարկավոր է երիտասարդությանը ճանապարհ բացել։ Ճիշտ է, հարկավոր է երիտասարդությանը, կանանց ղեկավար գործունեության ճանապարհ բացել։ Բայց ամենագլխավորը՝ հարկավոր է փորձված ու երիտասարդ կադրերին հմտորեն զուգակցել մեր, այսպես ասած, կադրային կորպուսում։ Այո՛, դա ամենահուսալի երաշխիքն է զերծ մնալու թե՛ պահպանողականությունից, թե՛ լճացումից, թե՛ ավանտյուրիզմից, վոլյունտարիզմից։

Հենց այդ պրոցեսը պետք է ընթանա մեր կյանքում։ Չի կարելի արհեստականորեն կասեցնել նոր ուժերի ներհոսքը։ Բայց և միաժամանակ, եթե մարդը պոտենցիալ ունի, կարող է էլի աշխատել լրիվ ուժով, օգուտ է բերում, ապա նա պետք է աշխատի և մեր կողմից աջակցություն ստանա։

Մի խոսքով, կադրերին պետք է վերաբերվել լենինաբար, կուսակցականորեն՝ պահանջկոտությամբ և հոգատարությամբ։ (Ծափահարություններ):

Մենք, ընկերնե՛ր, կուսակցական կոմիտեներում պետք է լավ հասկանանք, որ մեծ պատասխանատվություն է ընկնելու այն կադրերի վրա, որոնք ղեկավարման ոլորտը կգան հաշվետու-ընտրական կամպանիաների ընթացքում։ Նրանց հարկ կլինի տասներկուերորդ և հետագա հնգամյակներում գլխավորել տնտեսական, սոցիալական և հոգևոր առաջադիմության լարված պլանների կենսագործման խիստ բարդ աշխատանքը։ Ահա դրան համապատասխան էլ հարկավոր է ընտրել ու տեղաբաշխել աշխատողներին։ Ամեն ոք պետք է լավ իմանա ո՛չ միայն այն, թե ինչ պետք է անել, այլև ինչպես պետք է դա անել, գործնականում կարողանա իրացնել մեր կուսակցության քաղաքականությունը։

Այստեղ ևս, երբ մենք խոսում ենք կադրերի մասին, ես կասեի՝ առանձնապես սուր է դրվում կարգապահության հարցը։

Մոսկվա քաղաքի Պրոլետարական շրջանի աշխատավորների հետ հանդիպումից նույնպես հիշողությանս մեջ մնացել են նրանց ցանկությունները։ Դրանք, ըստ էության, հանգում էին մի պարզ բանաձևի։ Այդ ցանկություն-

ների իմաստն այն էր, որ կուսակցության ու ժողովրդի ընդհանուր ջանքերով երկրում ապահովվի կարգուկանոն, և որ ապահովված լինի խաղաղությունն աշխարհում։ Բնորոշ է, թե իրենք աշխատավորներն ինչպես են մտածում այդ մասին։ Նրանք ակնկալում են, որ կարգուկանոն կապահովվի ամեն ինչում, մեր հասարակության կյանքի բոլոր ոլորտներում՝ արտադրության մեջ, քաղաքային ու կոմունալ տնտեսության ոլորտում, առևտրի, առողջապահության մեջ, սպասարկման ոլորտում և, հատկապես, կառավարման ոլորտում, որտեղ շատ է զարգացել ծայրահեղ բյուրոկրատիզմը։ Եվ իհարկե, որ ապահովված լինի հասարակական կարգուկանոնը։ Դա, ընկերնե՛ր, ճիշտ հարցադրում է։ Եվ աշխատավորներն իրենք պատրաստ են ներգրավվելու և ակտիվորեն ներգրավվելու կարգուկանոնի ու կարգապահության հաստատման համար մղվող պայքարում։ Առանց դրան չի էլ կարելի նման խնդիր լուծել։

Մի խոսքով, կուսակցական կազմակերպությունների, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության ակտիվի խնդիրն այժմ այն է, որպեսզի աշխատավորական բոլոր կոլեկտիվներում, երկրում ամբողջությամբ վերցրած, լիովին օգտագործվեն դեպի բարեփոխումներ տանող այդ նպաստավոր պայմանները։

Ինչպես ասացի, մարդկանց անհանգստացնում է այն, որ մեր խոսքը գործից չտարբերվի։ Այս հարցում ոչ մի կամպանիականության մասին խոսք լինել չի կարող։ Դա մշտական աշխատանք է, ընդմիշտ։ Դեռ ավելին, մենք ունենք Կենտկոմի և կառավարության որոշումը, որտեղ ասված է. այն ղեկավար աշխատողները, որոնք անընդունակ են պատշաճ մակարդակով ապահովելու կարգապահությունն ու կարգուկանոնը իրենց գլխավորած կոլեկտիվներում, միավորումներում, չեն կարող ղեկավար պաշտոն զբաղեցնել։ Մենք հարցն այսպես ենք դնում և այսպես պետք է իրացնենք այդ ցուցումը, այսպես պետք է վերաբերվենք գործին։ **(Ծափահարություններ)։**

Հավանաբար, մենք բոլորս զգում ենք, որ վերջին ժամանակներս մեր հասարակության բոլոր խավերում շարունակ ավելի սուր ու համառորեն են դրվում բարոյական կարգի և սոցիալական արդարության հարցերը։ Մենք, Կենտրոնական կոմիտեում, զգում ենք այդ սրվածությունը։ Այստեղ ևս կարևոր է տեսնել էությունն ու հասկանալ ժողովրդի պահանջները։

Մեր մարդիկ բարձր են գնահատում սովետական երկրի նվաճումները կյանքի բոլոր ոլորտներում, հասկանում են մեր առաջընթացի ճանապարհին ծագող պրոբլեմները, պատրաստ են ակտիվ մասնակցելու դժվարությունների հաղթահարմանը, սոցիալ-տնտեսական զարգացման հարցերի լուծմանը։ Դրա հետ մեկտեղ նրանք ավելի ու ավելի անհանդուրժող են դառնում. ես դա տեսնում եմ իմ ուղևորությունների, մարդկանց հետ շփման ժամանակ, անհանդուրժող՝ չարաշահումների, օրենքի խախտումների, բյուրոկրատիզմի, պորտաբուծության, հարբեցողության, անտնտեսվարության, շռայլության և այլ բացասական երևույթների հանդեպ։

Այժմ մենք պայքար ենք ծավալել այնպիսի վտանգավոր և բավական արմատացած սոցիալական չարիքի դեմ, ինչպիսին հարբեցողությունն ու ալկոհոլիզմն են։ Դա համակուսակցական, համաժողովրդական, համապետական խնդիր է։ Մենք ռեալիստներ ենք և լավ ենք հասկանում, որ այստեղ երկարատև պայքար է սպասվում։ Հաջողությունը ձեռք կբերվի միայն այն դեպքում, եթե այդ աշխատանքին լծվենք ամբողջ երկրով։ Եթե այն վարենք անդուլ կերպով, վճռականորեն, ոչ մի զիջման չգնալով։

Ընկերնե՛ր, սուր բնույթ են ստանում բարոյական նորմերի պահպանման հարցերը։ Դա ճիշտ է։ Մեզ մոտ պետք է լինի մի կարգապահություն բոլորի համար, մի օրենք բոլորի համար, միատեսակ պահանջներ բոլորի համար, և գլխավորը, որպեսզի բոլորի և յուրաքանչյուրի բարեկեցությունը խստագույնս կախված լինի աշխատանքային ներդրումից, աշխատանքի քանակից ու որակից։ Մարդկանց այնքան են վայրացնում անաշխատ եկամուտների փաստերը,



որ նրանք արտահայտվում են համապատասխան օրենսդրական ակտ մշակելու օգտին։ **(Ծափահարություններ)։**

Սովետական մարդիկ վճռականորեն դատապարտում են անհամեստության, պարադայնության, փառաբանության դրսևորումները։ Կուսակցական ակտիվը և մեր կադրերն այդ ամենը պետք է հաշվի առնեն իրենց աշխատանքում։ Ավելի մոտ մարդկանց, ավելի շատ վստահություն նրանց հանդեպ։ Ընդ որում, ես պետք է ասեմ, որ դա ամենևին չի նշանակում սիրաշահել նրանց։ Մարդիկ չեն էլ սիրում նման ղեկավարներին։ Մարդիկ սիրում են խիստ, կազմակերպված, պահանջկոտ, հոգատար ղեկավարներին, որոնք անձնական օրինակով բարեխիղճ վերաբերմունք են ցույց տալիս պետական գործի նկատմամբ։ Եվ միշտ պաշտպանում են նման ղեկավարներին։

Ինչպես տեսնում եք, ինչ հարց էլ որ մենք հիմա շոշափելու լինենք, որպեսզի արագացնենք մեր շարժումը, մեր լոկոմոտիվի, մեր վիթխարի պետության շարժումը, մենք պետք է սկսենք կուսակցության, մեր բոլոր կադրերի ողջ գործունեության բարելավումից։ Դա գլխավոր պայմանն է։ Եվ այն պետք է ապահովվի ճիշտ քաղաքականության մշակման հիման վրա։ Առանց ճիշտ քաղաքականության չի կարող ապահովվել կուսակցության ու ժողովրդի միասնությունը։ Դա՝ առաջին։

Եվ երկրորդ։ Մենք պետք է մեր կուսակցության ուժով, իսկ այն վիթխարի է, ամբողջ երկիրն այժմ ոտքի հանենք ժամանակի առաջադրած նոր խնդիրների լուծման համար։ Եվ այդ առումով մենք հույս ենք դնում լենինգրադցիների օրինակի վրա։ Մեծ հաջողություններ եմ ցանկանում ձեզ, ընկերնե՛ր։ **(Երկարատև ծափահարություններ)։**

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅԻ ԱՆԴԱՄ, ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՐՏՈՒՂԱՐ

# ԸՆԿԵՐ Ե. Կ. ԼԻԳԱՉՈՎԻ ՃԱՌԸ

## Երևան քաղաքին Լենինի շքանշանի հանձնմանը նվիրված հանդիսավոր նիստում

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Ինչպես գիտեք, մեր այսօրվա հանդիպման առիթը հանդիսավոր է, բերկրալի։*

*Երևանին՝ Հայկական ՍՍՀ մայրաքաղաքին, հանձնվում է Լենինի շքանշան։ Հայրենիքի բարձրագույն պարգևին քաղաքն արժանացել է հեղափոխական շարժմանը, Հայաստանում սովետական իշխանության հաստատմանն ու ամրապնդմանը մատուցած ծառայությունների, Հայրենական մեծ պատերազմում ֆաշիստական զավթիչների դեմ տարած հաղթանակի գործում ներդրած մեծ ավանդի և տնտեսական ու մշակութային շինարարության ասպարեզում քաղաքի աշխատավորների ձեռք բերած հաջողությունների համար։*

*Թույլ տվեք Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ կառավարության անունից ձեզ՝ հանդիսավոր նիստի մասնակիցներիդ և քաղաքի բոլոր աշխատավորներին ի սրտե շնորհավորել արժանի պարգևի առթիվ, երևանցիներին, հանրապետության բոլոր աշխատավորներին մաղթել երջանկություն, բարեկեցություն, նոր մեծագործություններ՝ ի բարօրություն մեր սոցիալիստական հայրենիքի։*

*Մեր հանդիպումը ընկերներ, տեղի է ունենում նշանակալից ժամանակ։ Երկրում հասարակական-քաղաքական կարևոր իրադարձություններ են կայացել։ Սովետական ժողովուրդը լայնորեն ու հանդիսավորությամբ նշեց Վ. Ի. Լենինի ծննդյան 115-րդ տարեդարձը, ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի 40-ամյակը։ Կուսակցության ու ժողովրդի կյանքում առանձնահատուկ տեղ գրավեց Կենտրոնական կոմիտեի ապրիլյան պլենումը, որը որոշում ընդունեց ՍՄԿԿ հերթական XXVII համագումարի հրավիրման մասին։*

*Պլենումն իրատեսորեն գնահատեց XXVI համագումարից հետո կատարված աշխատանքը, համոզիչ կերպով ցույց տվեց, որ կուսակցությունը չի խուսանավում առաջացող դժվարություններից, համարձակորեն ձեռնամուխ է լինում դրանց հաղթահարմանը։*

*Ապրիլյան պլենումը, պլենումում ընկեր Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը, ընդունված որոշումները քաղաքական և կազմակերպական բազա են կուսակցության ամբողջ նախահամագումարյան գործունեության համար։ Սրա հետ մեկտեղ, դրանք տալիս են մեր հասարակության առաջընթացի ստրատեգիական հեռանկարը, կոմունիստներին, սովետական մարդկանց մղում են նորարարական մոտեցում ցուցաբերել գործի նկատմամբ, արմատապես բարելավել աշխատանքի ոճը, էկոնոմիկայի ասպարեզում խոշոր տեղաշարժերի հասնել երկրի հասարակական զարգացումն արագացնելու նպատակով։ Արտադրողական ուժերում հեղափոխական վերափոխումները, որոնք օրակարգի հարց են դառնում, մեզանում կառուցված սոցիալիզմի կատարելագործման նյութական հիմքն են։*



*Լիակատար հիմունքով կարելի է ասել՝ պլենումը ալեկոծեց ժողովրդին, առաջ բերեց խանդավառություն, ծնեց մեծ հույսեր։ Կուսակցությունը, բոլոր աշխատավորները դեպի XXVII համագումար են գնում վստահության և լավատեսության զգացումով։*

*Ընդամենը մի քանի օր է, որ մենք գտնվում ենք ձեր հանրապետությունում։ Բայց այս կարճ ժամանակամիջոցում էլ արտադրամասերում, դաշտերում ու ֆերմաներում, փողոցում, մարդկանց հետ ունենալով հանդիպումներ ու զրույցներ, մենք համոզվեցինք, որ Սովետական Հայաստանի բանվորի ու գյուղացու, գիտնականի ու ինժեների, վետերանի ու երիտասարդի կյանքը համակված է լավ տրամադրությամբ, տոգորված է արգասավոր աշխատանքով։ Եվ մեծ երջանկություն է գիտակցել, որ մեր բազմամիլիոնանոց երկրում մարդիկ ամենուրեք ապրում են միասնական ռիթմով, լուծում են ընդհանուր խնդիրներ։*

*Կրկնում եմ, սա մեծ երջանկություն է, և մեր հսկայական ուժը, թանկագին ընկերնե՛ր։*

*Դժվարին, տատասկոտ է եղել հայ ժողովրդի ուղին դեպի տնտեսական, սոցիալական և հոգևոր առաջադիմության այն գագաթները, որոնց հասել է սոցիալիստական Հայաստանը։ Վաղնջական ժամանակներից նա հանուն ազատության հերոսաբար մաքառել է օտար զավթիչների դեմ։ Դարերի ընթացքում նրան բազմիցս հարկ է եղել վերականգնել ավերված քաղաքներն ու գյուղերը, մշակույթի հոյակապ հուշարձանները, զենքը ձեռքին պաշտպանել գոյատևման իր իրավունքը։*

*Քաղաքական իմաստություն է դրսևորվել հայ ժողովրդի ռուսական կողմնորոշման մեջ։ Հենց ռուս ժողովուրդն է նրան օգնության ձեռք մեկնել փորձությունների ամենածանր պահին։ 1827 թվականի հոկտեմբերին Երևանն ազատագրվել է պարսից խաների բռնակալական լծից։ Այն օրվանից մինչև հիմա ռուսները և հայերը հայրենակիցներ են։*

*Ռուսաստանի և Անդրկովկասի աշխատավոր զանգվածների եղբայրական կապերը ամրապնդվել են ցարական ինքնակալության դեմ, ճորտատեր կալվածատերերի, կապիտալիստների և բուրժուական նացիոնալիստների դեմ մղված համատեղ պայքարում։ Ինտերնացիոնալիստ բոլշևիկներ Ստեփան Շահումյանը, Բոգդան Կնունյանցը, Իսահակ Լալայանցը, Սուրեն Սպանդարյանը Ալեքսանդր Մյասնիկյանը, Անաստաս Միկոյանը, լեգենդար Կամոն, Երկաթե դիվիզիայի անվեհեր հրամանատար Գայը և լենինյան գվարդիայի մյուս ներկայացուցիչները մեծ դեր խաղացին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության մեջ, քաղաքացիական կռիվների հաղթական ավարտի գործում։ Նրանց անունները գիտեն և հիշում են մեր երկրում ամենուրեք։*

*Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ վստահորեն ընթանալով սոցիալիզմի ուղիով, հենվելով ռուս ժողովրդի և Սովետական Միության մյուս ժողովուրդների եղբայրական օգնության վրա, Հայաստանը պատմականորեն կարճ ժամկետներում արմատական վերափոխումներ կատարեց կյանքի բոլոր բնագավառներում, վերածվեց բարձր զարգացած հանրապետության։ Սոցիալիստական արարման ընթացքում լիակատար չափով բացահայտվեցին բանվորների, գյուղացիների, բոլոր աշխատավորների լավագույն հատկանիշները՝ հսկայական աշխատասիրությունը, համառությունն ու տոկունությունը, հայրենասիրության բարձր ոգին։*

*Սոցիալիստական հայրենիքի նկատմամբ հայ ժողովրդի ջերմագին սերը ակնհայտորեն դրսևորվեց Հայրենական մեծ պատերազմի ահեղ տարիներին։ Հայաստանի ռազմիկները մյուս սովետական ժողովուրդների հետ ուս-ուսի անձնվեր քաջությամբ կռվում էին սանձազերծ ֆաշիստական զավթիչների դեմ։ Իսկ որքա՜ն հերոսական գործեր կատարեցին թիկունքի աշխատավորները։ Հանրապետությունից գործող բանակին անխափան կերպով մատակարարվում*

էին մարտական ու նյութական միջոցներ։ Երևանում գործում էին հոսպիտալներ, քաղաքի բնակիչները ջերմ, անշահախնդիր հոգատարություն էին ցուցաբերում էվակուացվածների նկատմամբ։ Արիության ու խիզախության համար հայ ժողովրդի տասնյակ հազարավոր որդիներ ու դուստրեր պարգևատրվեցին մարտական շքանշաններով ու մեդալներով։ Նրանցից ավելի քան հարյուրը արժանացան Սովետական Միության հերոսի կոչման։

Այս տոնական դահլիճում մենք տեսնում ենք պատերազմի ու թիկունքի ճերմակահեր, պանծալի վետերանների։ Խոնարհ ողջույն ձեզ, թանկագին ընկերնե՛ր, սրտաբուխ շնորհակալություն ռազմական սխրանքի համար, անձնվեր աշխատանքի համար։

Այժմ Սովետական Հայաստանը բազմաճյուղ, խոշոր ինդուստրիա, բարձր զարգացած գյուղատնտեսություն, հարուստ և ինքնատիպ մշակույթ ունեցող հանրապետություն է։ Նրա սիրտն ու հոգին ձեր սքանչելի մայրաքաղաքն է։

Այսօր դժվար է, իսկ երիտասարդ սերնդի համար, թերևս, անհնար պատկերացնել, որ դարասկզբին սա եղել է մի փոքրիկ գավառական քաղաք, որի բնակչության թիվը հազիվ անցնում էր 40 հազարից, իսկ հիմա Երևանը միլիոնանոց քաղաք է, որն աչքի է ընկնում կառուցապատման մոնումենտալությամբ և ներդաշնակությամբ, ազգային ոճի և ժամանակակից ճարտարապետական ձևերի հաջող զուգորդմամբ։

Երևանը աշխատավոր քաղաք է։ Նրա ինդուստրիալ դեմքը այժմ որոշում են մեքենաշինությունն ու քիմիան, գունավոր մետալուրգիան ու ռադիոէլեկտրոնիկան, հաշվողական մեքենաների արտադրությունն ու սարքաշինությունը։ Արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը ավելի քան 70 անգամ գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ Սա արտացոլում է հանրապետության մայրաքաղաքի ոչ միայն աճած արտադրական հնարավորությունները, այլև նրա գիտական բարձր պոտենցիալը։ Մեր երկրում և արտասահմանում լավ հայտնի են Հայաստանի գիտնականների հետազոտություններն ու հայտնագործությունները տարրական մասնիկների ֆիզիկայի, օպտիկայի, մեխանիկայի, սեյսմագիտության բնագավառում։ Համաշխարհային հռչակ են ստացել աստղաֆիզիկոսների աշխատանքները։

Անկարելի է գերագնահատել Երևանի դերը որպես հայ ժողովրդի հոգևոր մայրաքաղաքի, ժողովուրդ, որը բազմահարուստ մշակութային ավանդույթներ ունի։ Դրանք գուրգուրանքով պահպանվել ու բազմապատկվել են Սովետական Հայաստանի մտավորականության, նրա գրականության ու արվեստի գործիչների կողմից, որոնք իրենց տաղանդը ի սպաս են դրել ժողովրդին, կյանքի սոցիալիստական նորացմանը, իրենց ստեղծագործություններով հարստացրել են սովետական ու համաշխարհային մշակույթը։

Մի խոսքով, դուք ունեք ուրախանալու շատ պատճառներ և հպարտանալու շատ բան։

Սրա հետ մեկտեղ դարավոր իմաստությունը ասում է. ուրախանալով այսօրվա համար, մտածիր նաև վաղվա մասին։ Աշխատիր, ինչպես մենք ենք ասում, ի նկատի ունենալով հեռանկարը։ Միայն այդ ժամանակ հաջողությունները կլինեն իսկապես կայուն։

Կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց ջանքերը կենտրոնացվում են այն բանի վրա, որ անպայման կատարենք ընթացիկ տարվա և ամբողջ հնգամյակի պլանային առաջադրանքները, արժանավայել դիմավորենք կուսակցության XXVII համագումարը։

Ուրախալի է, որ երկրի էկոնոմիկայի առաջընթացի մեջ ծանրակշիռ ավանդ են ներդնում ձեր քաղաքի աշխատավորները։ 1984 թվականի արդյունքների համաձայն Երևանը տասներորդ անգամ անընդմեջ արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

Գործերը վատ չեն նաև այս տարի։ Հատկապես կուզենայի նշել ձեռնարկությունների աշխատանքն արդյունաբերական արտադրանքի նորացման ուղղությամբ։ Շատ բան է արվում մի այնպիսի կարևոր սոցիալական պրոբլեմի



լուծման համար, ինչպիսին է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ Ներկայումս մեկ ռուբլի աշխատավարձի դիմաց բնակչության համար թողարկվում է ավելի քան երկու ռուբլու արտադրանք։ Սա բարձր ցուցանիշ է։

Երևանի տնտեսական ու մշակութային ինտենսիվ զարգացումը հանրապետական և քաղաքային կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական և գաղափարադաստիարակչական հետևողական աշխատանքի արդյունքն է։ Դա նաև հազար-հազարավոր երևանցիների պրոֆեսիոնալ վարպետության, բարձր գիտակցականության, իրենց գործի նկատմամբ պատասխանատու վերաբերմունքի պերճախոս վկայությունն է։

Իրենց օրինակով մյուսներին ոգեշնչողների և իրենց ետևից տանողների թվում են ակադեմիկոս, սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս Վիկտոր Համազասպի Համբարձումյանը, ապարատավար, սոցիալիստական աշխատանքի հերոս, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ Սուրեն Մարտիրոսի Պետրոսյանը, բանվորուհի, կուսակցության քաղկոմի անդամ Եկատերինա Իվանովնա Գլազովան, կթվորուհի, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ Աղնիվ Մկրտչի Սահակյանը, էլեկտրամոնտյոր, կուսակցության քաղկոմի անդամ Ֆլորա Ակրամովնա Յակուբովան, ուսուցչուհի, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Կիմա Հրաչյայի Մարտիրոսյանը, ՍՍՀՄ ժողովրդական արտիստուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Գոհար Միքայելի Գասպարյանը, բժիշկ, հանրապետության Գերագույն սովետի դեպուտատ, պրոֆեսոր Կիմ Հայկի Շուքուրյանը և շատ ուրիշներ։

Փառք ու պատիվ բանվորներին ու մասնագետներին, գիտության ու մշակույթի գործիչներին, ժողովրդական կրթության, առողջապահության, սպասարկման ոլորտի աշխատողներին, բոլորին, ովքեր բազմապատկում են մեր հայրենիքի նյութական ու հոգևոր հարստությունները։

Այսօր նշելով հաջողությունները, մենք չպետք է մոռանանք, որ կյանքը պահանջում է զգալիորեն արագացնել երկրի սոցիալ-տնտեսական զարգացումը, հասնել աշխատանքի արտադրողականության բարձրագույն համաշխարհային մակարդակին։ Չէ՞ որ հենց սա է այն հիմքը, որը հնարավորություն կընձեռի ապահովելու սովետական մարդկանց բարեկեցության անշեղ աճ, ամրապնդելու երկրի տնտեսական ու պաշտպանական հզորությունը։

Այժմ գլխավոր հարցն այն է, թե ինչպես և ինչի հաշվին կարելի է արագացնել տնտեսական աճի տեմպերը։ Այս հարցին կուսակցությունը սպառիչ պատասխան է տվել։ Ամբողջ աշխատանքի կենտրոնում պետք է դնել էկոնոմիկայի ինտենսիվացումը և գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, սոցիալիստական տնտեսավարման ձևերի ու մեթոդների համապատասխանեցումը ժամանակակից պայմաններին ու պահանջմունքներին, կարգապահության վճռական ամրապնդումը, ղեկավարման ոճի կատարելագործումը։ Հենց այս մասին գործարար և անկեղծ խոսակցություն տեղի ունեցավ Լենինգրադի մարզային կուսակցական կազմակերպության ակտիվի հետ Մ. Ս. Գորբաչովի հանդիպման ժամանակ, որը հասարակական լայն արձագանք առաջացրեց։

Այժմ ամենաանհետաձգելի գործը ժողովրդական տնտեսության մեջ ձմռանը և գարնան սկզբին թույլ տրված թերակատարումների հաղթահարումն է ամենակարճ ժամկետներում։ Միայն եռանդագին, ներդաշնակ, ուժերի լիակատար լարումով կատարվող աշխատանքը կարող է հաջողության հանգեցնել։

Դրա համար հարկավոր է անխախտ դարձնել պլանային կարգապահությունը։ Եվ ամենից առաջ վճռական հակահարված է պահանջում պլանի նվազեցման ուղղությամբ, այսպես կոչված, շտկելու, իսկ ավելի պարզ ասած՝ պլանային ցուցանիշները դզմզելու, փաստական արդյունքներին հարմարեցնելու որոշ տեղերում արմատացած պրակտիկան։ Ամենևին գաղտնիք չէ նաև մի այնպիսի «եղանակ», ինչպիսին է ընթացիկ տարեկան պլանների նվազեցումը հնգամյակի առաջադրանքների համեմատությամբ, դանդաղ տեմպերի պլանավորումը տարվա առաջին ամիսների համար և շտկման նույն կարգի այլ «տարատեսակները»։ Նման պրակտիկան անտարբեր է դարձնում կադրերին, հակասում է համապետական շահերին։ Կուսակցության Կենտրոնական կոմի-

տեն հաստատակամորեն մտադիր է վերջ տալ դրան։ Մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ղեկավարների համար պետք է միանգամայն պարզ լինի. ոչ ոքի այլևս զիջում չի արվելու։ Աշխատավորական բոլոր կոլեկտիվների համար պատվի արժանանալու, արդարացի պարգևի արժանանալու ուղին միայն ու միայն մեկն է՝ արտադրական բոլոր ռեզերվների օգտագործում, բարեխիղճ, ձեռներեց աշխատանք, յուրաքանչյուր աշխատողի, աշխատավորական կոլեկտիվի շահերը համաժողովրդական շահերի հետ լավագույն ձևով զուգորդելու եղանակների մշտական որոնման կարողություն և ցանկություն։ Հենց այդ դիրքերից պետք է կատարել 1986 թվականի և տասներկուերորդ հնգամյակի պլանների մշակումը ձեռնարկություններում ու միավորումներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում։

Առաջիկա հնգամյակը պետք է առաջավոր տեխնոլոգիայի հնգամյակ դառնա բառիս բուն իմաստով։ Առանց այդ բնագավառում հեղափոխիչ ճեղքում կատարելու, առանց բոլոր ճյուղերում ամենաառաջավոր մեթոդների և աշխատանքի եղանակների եռանդագին ու մասսայական ներդրման անկարելի է ժողովրդական տնտեսությունը հաստատուն կերպով դնել ինտենսիվացման ռելսերի վրա։ Խոսքն այստեղ ո՛չ միայն կարևորագույն տնտեսական, այլև քաղաքական խնդրի մասին է։ Հսկայական չափով այդ խնդրի լուծումից է կախված սոցիալիզմի ու կապիտալիզմի պատմական մրցության ընթացքը։ Դուք ձեր տրամադրության տակ գիտատեխնիկական պատկառելի բազա և որակյալ կադրեր ունեք տեխնիկայի ու տեխնոլոգիայի վերջին նվաճումների հիման վրա ձեռնարկությունների վերազինումն արագացնելու համար։ Եվ պետք է գործին այնպես ձեռնամուխ լինել, որ կարճ ժամկետներում այստեղ արմատական տեղաշարժեր ձեռք բերվեն։

Արտադրության արդյունավետության աճը անխզելիորեն կապված է արտադրանքի որակի բարելավման հետ։ Հանրապետությունում այդ հարցերով զբաղվում են, և ես կասեի՝ բավականաչափ լրջորեն։ Փաստորեն բոլոր արդյունաբերական ձեռնարկություններն ու միավորումները, շինարարական տրեստները, կենցաղային սպասարկման կոմբինատները արմատավորել են արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգեր։ Պետական որականիշով ապրանքների թողարկումը հնգամյակի սկզբից աճել է ավելի քան երկու անգամ։ Հայաստանի սահմաններից դուրս բարի համբավ ունեն նաև «Մասիս» արտադրական միավորման կոշկեղենը, այլ ձեռնարկությունների տեքստիլեղենը, ուրիշ ապրանքներ։

Սակայն, ընկերնե՛ր, ամենևին էլ ոչ բոլոր ձեռնարկությունները կարող են պարծենալ իրենց արտադրանքով։ Երբեմն դանդաղ է նորացվում և բարելավվում արտադրանքի տեսականին, թուլացել է տեխնիկական ռեժիմների, ստանդարտների պահանջների կատարման վերահսկողությունը։ Անհրաժեշտ է ամենուրեք հասնել այն բանին, որ յուրաքանչյուր աշխատավոր մշտապես անձնական պատասխանատվություն զգա իր ձեռքով պատրաստածի բարձր որակի համար։ Չէ՞ որ իսկական վարպետը զմայլվում է իր աշխատանքով, ձգտում գործն այնպես անել, որ աչք շոյի, լավ ծառայի մարդկանց։ Որակ և դարձյալ որակ. Կենտկոմի ապրիլյան պլենումի այս լոզունգով պետք է այսօր առաջնորդվի յուրաքանչյուր մինիստրություն և գերատեսչություն, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ։

Այժմ՝ գյուղատնտեսության գործերի մասին։ Երևում է, որ հանրապետությունում ձգտում են իրոք տիրոջ պես օգտագործել հողը, քարերից ազատված յուրաքանչյուր հողակտորը, լայնորեն զարգացվում է մելիորացումը։ Հողագործները և անասնապահները ակտիվորեն են աշխատում պարենային ծրագրի իրականացման համար։ Չնայած տարերային աղետներից առաջացած զգալի վնասին, հնգամյակի անցած տարիներին դաշտերի ու ֆերմաների մթերատվության աճը կազմել է 12 տոկոս— պլանային առաջադրանքներից գրեթե 4 տոկոսով ավելի։

Արդյոք կարելի՞ է աշխատել ավելի լավ։ Կարծում եմ՝ այո։ Եվ ռեզերվները, համաձայնեցե՛ք, բավարար են։ Վերցնենք թեկուզ մի այնպիսի պրոբլեմ, ինչպիսին է գյուղատնտեսության մեջ ամբողջ արտադրվածի պահպա-



նումը։ Խաղողի, պտղի, բանջարեղենի կորուստները դրանց բերքահավաքի, փոխադրման, պահպանության ժամանակ առայժմ շատ են։ Ազդում են որոշ աշխատողների անբարեխղճությունը, անպատասխանատվությունը, բայց հատկապես արտադրական ենթակառուցվածքի զարգացման թերագնահատումը։

Պետք է ասեմ, ընկերնե՛ր, այս պրոբլեմը միայն ձերը չէ։ Երկար տարիներ ամբողջ երկրի մասշտաբով բավարար միջոցներ չեն հատկացվել պահեստարաններ, վերամշակող կարողություններ կառուցելու, ճանապարհների ցանցը և արդյունաբերական տրանսպորտը զարգացնելու համար։ Ավելին, դրա հաշվին ջանացել են «տնտեսել» միջոցներ, դրանք օգտագործելով հիմնական արտադրության զարգացման համար։ Այս անհեռատես մոտեցումը այսօր վերածվում է զգալի վնասի։

Նման վիճակի հետ հաշտվել մենք այլևս չենք կարող։ Դուք գիտեք, որ Կենտկոմի քաղբյուրոն որոշում է ընդունել ագրոարդյունաբերական համալիրի վերամշակող ճյուղերի նյութատեխնիկական բազայի զարգացման մասին։ Բայց դուք ևս պետք է այս նպատակով եռանդագին օգտագործեք ձեր հանրապետությունում առկա բոլոր հնարավորությունները։

Ընկերնե՛ր, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման բարձրագույն իմաստը կուսակցությունը տեսնում է ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման մեջ, սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը բարելավելու մեջ։ Դրա համոզիչ վկայությունն է բուռն կերպով աճող ձեր մայրաքաղաքը։ Այստեղ, օրինակ, բնակարանային շինարարության մասշտաբներն այնպիսին են, որ միայն անցած չորս տարում, ըստ էության, հառնել է նախապատերազմյան Երևանին գերազանցող մի քաղաք։

Սոցիալական պրոբլեմների առավել արագ և որակյալ լուծման նոր հնարավորություններ է բացում «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և սովետական կառավարության վերջերս ընդունած որոշումը։ Պետությունը այդ նպատակներին հատկացնում է գրեթե 30 տոկոսով ավելի շատ միջոցներ, քան ընթացիկ հնգամյակում։ Կգործարկվեն տասնյակ դպրոցներ ու մանկապարտեզներ, կստեղծվեն նոր հիվանդանոցներ ու պոլիկլինիկաներ, մշակույթի ու կենցաղի օբյեկտներ։ Նախատեսվում է ապահովել քաղաքը հուսալի ջրամատակարարումով, ջեռուցումով, գազով։ Հետագա զարգացում կստանա տրանսպորտը, այդ թվում՝ մետրոն։ Եվ խնդիրն այն է, որ հոգատարությամբ, ինչպես ասում են, խելամիտ տնօրինեն խոշոր կապիտալ ներդրումները։

Եվս մի պրոբլեմի մասին, որը կենսականորեն կարևոր նշանակություն ունի։ Լավ է, որ դուք եռանդով ձեռնամուխ եք եղել Հայաստանի մարգարտի, իսկ ես կասեի՝ համաժողովրդական մի այնպիսի մարգարտի պահպանությունը, ինչպիսին է Սևանա լիճը։ Այդ աշխատանքի փորձը սովորեցնում է, որ շրջակա միջավայրի պահպանությունը պահանջում է հեռատեսություն, ժամանակին ձեռնարկվող և կոմպլեքսային գործողություններ, գալիք սերունդների հանդեպ պատասխանատվության բարձր զգացում։ Միայն սոցիալիստական կարգերն են հնարավորություն տալիս լիովին կենսագործելու այդպիսի մոտեցումը, պահպանելու և ազնվացնելու մարդու ապրած բնական միջավայրը։ Այդ գործին հատկացվող ծախսերը քիչ չեն, իսկ արդյունքներին հարկ է լինում սպասել երկար տարիներ։ Ուստի և շատ կարևոր է, որ հանրապետությունում ավելի հաստատակամորեն ձեռնամուխ լինեն ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործմանը։

Ինչպես տեսնում եք, դեռ շատ անելիքներ կան նաև ամենատարբեր ուղղություններում, որպեսզի ավելի լրիվ բավարարվեն մարդկանց պահանջմունքները, բարելավվեն նրանց աշխատանքի պայմաններն ու կենսապայմանները։ Դրա գիտակցումը պետք է համակի կուսակցական, սովետական, տնտեսական կադրերի ողջ գործունեությունը։

Ընկերնե՛ր, սովետական պետության ամբողջ պատմությունն ըստ էության մի ձոն է ժողովուրդների մեծ բարեկամությանը, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության կենարար մեծ ուժի վառ ցուցադրումը։ Մեր երկ-

րում իրականացել է մարդկության առաջավոր մտածողների բազմադարյան երազանքը. այնտեղ բնակվող բոլոր ժողովուրդները դարձել են եղբայր ժողովուրդներ: Ստեղծված է մի հասարակություն, որտեղ ապահովվում է համապետական շահերի և հանրապետություններից յուրաքանչյուրի շահերի խորք ներդաշնակ զուգորդումը, բոլոր ազգերի ու ազգությունների ծաղկումը: Ձեր հանրապետությունում ևս որպես մի համերաշխ ընտանիք են ապրում հայերն ու ռուսները, ադրբեջանցիներն ու քրդերը, մեր բազմազգ երկրի մյուս ժողովուրդների ներկայացուցիչները:

Մեր երկրի յուրաքանչյուր ազգի ու ազգություն համակողմանի դինամիկ առաջադիմությունը օրինաչափորեն ուղեկցվում է նրանց ազգային ինքնագիտակցության վերելքով: Սակայն «ազգայինը» չի դառնում «ազգայնական», ազգային հպարտությունը չի վերածվում ազգային սնապարծության: Իսկ չէ՞ որ հենց դրա վրա կուղենային իրենց հաշիվները կառուցել մեր թշնամիները: Սովետական ժողովուրդների համախմբվածությունը խարխլելու նրանց փորձերին մենք միշտ էլ վճռական հակահարված ենք տվել և կտանք:

Այստեղ առավել կարևոր խնդիրներից մեկն այն է, որ սովետական մարդկանց մեջ բարձր հպարտության զգացում ձևավորենք իրենց սոցիալիստական հայրենիքի համար, նրանց կարողություն ներարկենք սկզբունքային, դասակարգային դիրքերից մոտենալու ինչպես ընթացիկ իրադարձությունների, այնպես էլ պատմական անցյալի գնահատմանը, ինտերնացիոնալիստորեն դաստիարակելու աշխատավորներին, հատկապես՝ երիտասարդներին: Չնսեմացնելով գաղափարադաստիարակչական միջոցների նշանակությունը այդ աշխատանքում, կցանկանայի շեշտել, որ ինտերնացիոնալիզմը պետք է հաստատվի նաև բազմազան պրակտիկ գործերով:

Մյուս հանրապետությունների համար նախատեսված կոոպերատիվ մատակարարումներ, մասնագետների և ուսանողների միջհանրապետական փոխանակում, ռուսաց լեզվի՝ ազգամիջյան հաղորդակցման լեզվի իմացություն՝ այս հարցերին պետք է մշտական ուշադրություն նվիրեն կուսակցական կոմիտեները, հասարակական կազմակերպությունները: Վերցրեք, օրինակ, միութենական հանրապետությունների աշխատավորների մասնակցությունը Սիբիրի ու Հեռավոր Արևելքի հարստությունների արդյունաբերական յուրացմանը և արտադրողական ուժերի զարգացմանը: Կան դրա բազմաթիվ լավ օրինակներ: Հարկավոր է ավելի լայնորեն օգտագործել համապատասխան հնարավորությունները: Դա հարկավոր է երկրին, հետևաբար նաև՝ յուրաքանչյուր հանրապետության:

Կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունն արժանանում է մեր բազմազգ պետության բոլոր աշխատավորների ջերմ պաշտպանությանը: Մենք աչքի լույսի պես կպահպանենք ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ բարեկամությունը:

Հայաստանի աշխատավորների մարտական ավանգարդը հանրապետական կուսակցական կազմակերպությունն է: Նա փառավոր ավանդույթներ ունի, բարձր հեղինակություն է վայելում մասսաների շրջանում: Ներկայումս իր շարքերում ավելի քան 180 հազար կոմունիստ ունեցող Հայաստանի կոմունիստական կուսակցությունը հանդես է գալիս որպես հանրապետությունում բազմակողմանի ստեղծարար ողջ գործունեության ակտիվ կազմակերպիչ:

Այսօր ձեր կուսակցական կազմակերպության վրա պատասխանատվություն է դրված այն բանի համար, որ Հայաստանի կոնկրետ պայմաններում հաջողությամբ կենսագործվեն ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի որոշումները, որ հանրապետության զարգացումն այսուհետ ևս վստահորեն շարունակվի վերընթաց գծով, որ կյանքը ավելի լավանա ու գեղեցկանա, իսկ ամբողջ հասարակական մթնոլորտը նպաստի մարդկանց նախաձեռնության բարձրացմանը, նրանց ընդունակությունների և տաղանդի բացահայտմանը:

— Երբ մարդ մտածում է այն ամենի մասին, ինչ մենք պետք է լուծենք,— Լենինգրադում ունեցած իր ելույթում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— թե՛ էկոնոմիկայի ոլորտում, թե՛ մեր հասարակության կյանքի սոցիա-



լական ոլորտներում, ապա, իհարկե, ամենից առաջ ծառանում են կուսակցական աշխատանքի, կուսակցական գործունեության, կուսակցական ղեկավարման արդյունավետության հարցերը. մեր հասարակության զարգացման այս՝ շրջադարձային փուլում նոր խնդիրների լուծումն ստանձնելու կուսակցության ընդունակության հարցը, մեր կադրերին, ողջ ժողովրդին ոտքի հանելու նրա կարողության հարցը, այդ քաղաքական ու սոցիալ-տնտեսական խոշոր խնդրին մեր սոցիալիստական դեմոկրատիայի ողջ համակարգը ի սպաս դնելու կարողության հարցը:

Այդ նպատակին է ուղղված ՍՄԿԿ-ի ողջ գործունեությունը, նա այդ դիրքերից է ծավալում նաև իր XXVII համագումարի նախապատրաստությունը: Հասարակաքաղաքական կարևոր իրադարձություն կլինի հաշվետու-ընտրական կամպանիան: Այդ կամպանիայի ընթացքում պետք է համակողմանիորեն քննարկել և գնահատել կուսակցական որոշումների ու դիրեկտիվների կատարումը բոլոր տեղամասերում, պատկերավոր ասած՝ լուսարձակի ճառագայթով լուսավորել գործերի վիճակը կուսակցական ամբողջ շենքի հիմքից մինչև գմբեթասայրը: Եվ այդպիսի ճառագայթի դերը կոչված են խաղալու բոլշևիկյան քննադատությունն ու ինքնաքննադատությունը՝ դժվարությունների և հակասությունների լուծման փորձված մեթոդը: Չգունազարդել իրադրությունը, չվախենալ դիպչելու որևէ մեկի ինքնասիրությանը, այլ ձգտել բացահայտելու ռեզերվները, ակտիվ վիճակի մեջ դնելու հասարակական բոլոր ուժերը, մարտ տալու զանազան բացասական դրսևորումներին— ահա թե ինչով պետք է առաջնորդվել հաշվետու-ընտրական ժողովներն ու կոնֆերանսները նախապատրաստելիս և անցկացնելիս:

ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում նշեց, որ «ոչ մի կուսակցական կազմակերպություն, ոչ մի աշխատող չեն կարող վերահսկողությունից դուրս մնալ»: Կյանքն է ապացուցել, որ հենց վերահսկողության բացակայությունն է այլասերում մարդկանց, վնասում ընդհանուր գործին: Ուստի Կենտրոնական կոմիտեն կարևոր նշանակություն է տալիս այն բանին, որ սխալներն ու վրիպումները, ում էլ դրանք վերաբերեն, չսքողվեն, այլ բացահայտ քննադատության ենթարկվեն ինչպես վերևից, այնպես էլ, հատկապես, ներքևից:

Բոլոր գործերում այսօր հարկավոր կտրուկ տեղաշարժը ապահովելու համար անհրաժեշտ է վարել հաստատուն ու սկզբունքային կադրային քաղաքականություն: Ցանկացած տեղամասում նախ և առաջ պետք է լինեն լավ աշխատողներ և կարգին մարդիկ՝ ընդունակ կուսակցության խնդիրները և պահանջներն ընկալելու որպես իրենց սեփականը: Մենք ի վիճակի ենք գտնելու և առաջ քաշելու այդպիսի մարդկանց:

Խոսքը չի վերաբերում կադրերի մասսայական փոխման ինչ-որ կոչի: Կուսակցությունն իր առջև նպատակ է դնում հաշվետվությունների և ընտրությունների պրոցեսում մեթոդաբար, աչքաթող չանելով ոչ մի օղակ, ստուգել կուսակցական կադրերին, որոշել նրանց գործուն ռեզերվը, միաժամանակ նաև քննարկել կադրերի վիճակը մնացած բոլոր տեղամասերում՝ տնտեսական ու սովետական մարմիններում, հասարակական կազմակերպություններում: Առանց այնպիսի կադրերի, որոնք վճռականորեն տրամադրված են իրականացնելու կուսակցության կանխանշած բարդ ու նորարարական խնդիրները, խորապես գիտակցում են կտրուկ շրջադարձերի անհրաժեշտությունը, մենք չենք կարող ապահովել կյանքի կողմից թելադրվող առաջընթացի տեմպերը:

Աշխատավորների հետ կուսակցության կապերի ամրապնդման, սովետական դեմոկրատիայի զարգացման հուսալի միջոցը, եղած թերությունների հայտնաբերման և վերացման կարևոր գործոնը եղել և մնում է գաղափարախոսական, քաղդաստիարակչական գործունեությունը: Արդի պայմաններում այդ գործունեության խնդիրները համակողմանի և խորապես վերլուծվեցին Կենտկոմի 1983 թվականի հունիսյան և 1985 թվականի ապրիլյան պլենումներում, բազմիցս քննարկվել են Կենտրոնական կոմիտեում: Անցած տարվա հոկտեմբերին լսվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հաշվետվությունը հանրապետական կուսկազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենու-

մի որոշումների կատարման ընթացքի մասին։

Այսօր մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ այդ հաշվետվության առթիվ ընդունված ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ակտիվորեն կատարում են հանրապետության, այդ թվում՝ Երևանի կուսակցական կոմիտեները և սկզբնական կուսկազմակերպությունները։ Դրական փոփոխություններն առկա են։ Բայց և բացթողումներն էլ դեռևս քիչ չեն։ Պետք է այս մասին ուղղակի ասենք, որովհետև մեզ անհանգստացնում է նվաճումների երբեմն սրբդող չափազանցումը և առկա թերությունների նկատմամբ ոչ քննադատական մոտեցումը, երբեմն ի հայտ եկող ինքնահանգստացումն ու անտարբերությունը։ Եկեք, ինչպես որ հատուկ է կոմունիստներին, ավելի մեծ ուշադրություն նվիրենք չլուծված պրոբլեմներին, եղած հնարավորությունների ու ռեզերվների օգտագործմանը։ Իսկ դրանք ձեզ մոտ քիչ չեն։ Արդյունաբերական ձեռնարկություններից մեկ երրորդը չի կատարում պայմանագրային պարտավորությունները։ Աշխատանքի արտադրողականության հաշվին արտադրության ծավալի աճը Երևանում կազմում է ընդամենը 56 տոկոս։ Աշխատավարձը աշխատանքի արտադրողականությունից արագ է աճում։ Եվ դա փաստ է։

Գաղափարախոսական աշխատանքը պետք է ավելի սերտորեն զուգորդվի կազմակերպական-քաղաքական միջոցառումների ողջ համակարգի, կադրային քաղաքականության, տնտեսական շինարարության հետ։ Դրանով իսկ կիրականացվի ապրիլյան պլենումի այն դրույթը, որ գաղափարախոսական աշխատանքում պետք է լինեն ավելի քիչ խոսքեր և ավելի շատ գործեր։

Կուսակցական-քաղաքական, գաղափարախոսական աշխատանքում գլխավորը մարդն է, նրա տրամադրություններն ու հոգսերը, աշխատանքի, կենցաղի ու հանգստի պայմանները։

Ուստի հարկավոր է ավելի մեծ հաստատակամությամբ հասարակության կյանքից արմատախիլ անել այն ամենը, ինչը բացասաբար է անդրադառնում մարդկանց մտատրամադրվածության վրա։ Եվ ամենից առաջ հետևողական, անզիջում պայքար մղել կաշառակերության, սոցիալիստական սեփականության հափշտակումների, պորտաբուծության, պրոտեկցիոնիզմի, կարճ ասած՝ այն ամենի դեմ, ինչը հակասում է մեր սոցիալիստական ապրելակերպի աշխատանքային բնույթին, սոցիալական արդարության սկզբունքին։

Մեր առաջընթացի արագացման անհրաժեշտ պայմանը գիտակցական կարգապահության, սոցիալիստական կարգուկանոնի և բարձր կազմակերպվածության հաստատումն է հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Դրա լավ օրինակները քիչ չեն նաև Հայաստանում։ Միայն անցյալ տարի աշխատաժամանակի կորուստների և աշխատուժի հոսունության կրճատման շնորհիվ լրացուցիչ թողարկվեց գրեթե 7 միլիոն ռուբլու արտադրանք։

Դրա հետ մեկտեղ կարգապահությունը լայն առումով ամրապնդելու համար դեռևս ամեն ինչ չէ, որ արվում է։ Տեղ-տեղ իրենց զգալ են տալիս կամպանիականության, լիբերալիզմի դրսևորումները։ Ըստ երևույթին, որոշ մարդիկ ապրում են հին պատկերացումներով. իբր՝ կխոսեն, կաղմկեն ու վերջ։ Ինչ մեղքներս թաքցնենք՝ այդպես պատահել է։ Բայց այլևս այդպես չի լինի։ Ինչպես նշվեց ապրիլյան պլենումում, կուսակցությունը բոլոր ջանքերը կգործադրի, որպեսզի երկրի յուրաքանչյուր տեղամասում կարգուկանոն ամրապնդվի։ Եվ կարևոր է, որ յուրաքանչյուր կոլեկտիվում գիտակցեն, որ անհրաժեշտ է անձամբ ավելի եռանդագին գործի կպչել, չսպասել, ինչպես դեռ հաճախ է լինում, թե ամեն ինչ պետք է «վերևից» գա։ Աշխատավորական կոլեկտիվները իրավունքներ շատ ունեն, հիմա պետք է գործել, գործել ամեն օր, ամեն ժամ, աշխատել, ինչպես ասում են, թևքերը քշտած։ Միայն այդ դեպքում կուսակցության քաղաքականությունն իրոք կապահովվի։

Այժմ, ընկերնե՛ր, մենք պայքար ենք ծավալել այնպիսի վտանգավոր ու բավականին արմատացած սոցիալական չարիքի դեմ, ինչպիսին են հարբեցողությունն ու ալկոհոլիզմը։ Այդ պայքարը դրվել է համապետական, համակուսակցական, համաժողովրդական խնդրի մակարդակի վրա։ Ընդ որում խոսքն ամենևին էլ այն մասին չէ, որ մարդկանց մի մասին կուլտուրական խմել սովորեցվի։ Ո՛չ, խոսքը շատ ավելի բարդ խնդրի մասին է՝ մարդկանց



սովորեցնել առհասարակ սպիրտային խմիչք չգործածել։ Դժվարին աշխատանք է սպասվում, բայց կուսակցությունը չի նահանջի, մինչև որ չլուծի այս խնդիրը։

Հասկանում եմ, որ որոշակի յուրօրինակություն կա ձեր հանրապետությունում այս հարցի դրվածքի մեջ։ Ինչ արած, ուրեմն պետք է ավելի շատ շեշտը դնել սննդարար հյութերի ու ոչ ոգելից ըմպելիքների արտադրության վրա, մարդկանց ավելի շատ մատակարարել սեղանի խաղող, արևավառ Հայաստանի հողի մյուս բարիքները։ Ժամանակներն ուրիշ են, պահանջները՝ նոր։

Շատ բարդ գործեր, մեծածավալ աշխատանքներ են սպասում մեզ։ ՍՄԿԿ Կենտկոմը վստահ է, որ համապետական կուսակցական կազմակերպությունը, ինչպես այդ եղել է միշտ, կկարողանա պատվով ապահովել հասարակական հարաբերությունների կատարելագործման պայքարին նպատակամղված կուսակցության կուրսի կենսագործումը, բոլոր աշխատավորներին ոտքի կհանի աշխատանքային նոր մեծագործությունների։

Ընկերնե՛ր, կոմունիստական շինարարության հետ առնչվող ամբողջ աշխատանքը մենք ներկայումս ստիպված ենք կատարել միջազգային անհանգիստ, տագնապալի մթնոլորտում։

Ճիշտ է, տիեզերական և միջուկային սպառազինությունների ողջ կոմպլեքսի վերաբերյալ նոր բանակցությունների շուրջը սովետա-ամերիկյան հայտնի պայմանավորվածության ձեռքբերումից և այդ բանակցություններն սկսվելուց հետո, այն բանից հետո, երբ Սովետական Միությունն առաջ քաշեց մի շարք նոր խաղաղասիրական նախաձեռնություններ, միջազգային հարաբերությունների բարելավման հույսերի որոշակի ալիք առաջացավ։

Բայց պետք է որոշակիորեն ասել. Միացյալ Նահանգները ջանք չխնայեցին հույսի այդ ալիքը մարելու համար։ ԱՄՆ-ը չհետևեց Սովետական Միության օրինակին, որը միակողմանիորեն դադարեցրել է միջին հեռահարության հրթիռների տեղաբաշխումը և այլ պատասխան միջոցառումների իրականացումը Եվրոպայում։ Վաշինգտոնը նախընտրում է քաղաքական եռանդը ծախսել այն բանի վրա, որ ՆԱՏՕ-ի գծով իր պարտնյորներին և Ճապոնիային ընդգրկի, այսպես կոչված, «ստրատեգիական պաշտպանական նախաձեռնության» իրականացման գործում, որն ունակ է խարխլելու իրադրությունը և բացելու փականները բոլոր ուղղություններով սպառազինությունների մրցավազքի նոր ցատկի համար։

Սովետական Միությունը, Վարշավայի պայմանագրի մյուս մասնակիցները, իհարկե, թույլ չեն տա խախտել ռազմաստրատեգիական մոտավոր հավասարակշռությունը։ Այստեղ, ինչպես և մյուս բոլոր հարցերում, մեզ մոտ առկա է լիակատար փոխըմբռնում մեր բարեկամների հետ։ Համագործակցությունը խորացնելու մեր ընդհանուր շահագրգռությունը տարածվում է քաղաքականության, էկոնոմիկայի, գաղափարախոսության և, անպայման, այնպիսի ոլորտի վրա, ինչպիսին է պաշտպանությունը։ Սոցիալիստական ժողովուրդների խաղաղ աշխատանքը հուսալիորեն պաշտպանվել է և կպաշտպանվի։

Միջազգային վստահությունը ոչ թե ամրապնդվում, այլ խարխլվում է, երբ Միացյալ Նահանգները փաստորեն չհայտարարված պատերազմ են կազմակերպում Աֆղանստանի ու Նիկարագուայի դեմ, Պրետորիայի ռասիստական վարչակարգին հրահրում են թշնամական քայլեր ձեռնարկելու հարևան աֆրիկյան պետությունների դեմ, իսկ Մերձավոր Արևելքում նպաստում են արաբական երկրների դեմ Իսրայելի ագրեսիվ քաղաքականությանը։

Սովետական Միության համար, որը հավատարիմ է յուրաքանչյուր ժողովրդի անկախ զարգացման իրավունքը հարգելու սկզբունքին, նման քաղաքականությունն անընդունելի է։

Մեր համակրանքն ու պաշտպանությունը եղել են, կան և կլինեն ազատության և սոցիալական առաջադիմության գործի կողմը։ Սովետական Միությունը ուրիշների կրակի վրա ձեռք չի տաքացնում։ Մենք հանդես ենք գալիս հօգուտ այն բանի, որ կրակները մարվեն, որ քաղաքական միջոցներ օգտագործվեն կոնֆլիկտային իրավիճակների կարգավորման համար։

Ավելի կարգավորված և պարզապես ավելի խելամիտ հարաբերություն-

ների առաջընթացի հնարավորություն կա ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև։ Բայց դրա համար առնվազն պահանջվում է խստորեն պահպանել կողմերի հավասարության ու միատեսակ անվտանգության սկզբունքը, քայլ առ քայլ ոչ թե բարձրացնել, այլ իջեցնել ռազմական դիմակայության մակարդակը։

Մեր երկիրը գործում է, ելնելով այն համոզմունքից, որ սոցիալական տարբեր սիստեմների պատկանող երկրների հարաբերությունները պետք է խստորեն հիմնվեն խաղաղ գոյակցության նորմերի վրա։ Կարելի է գոհունակությամբ նշել, որ Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների հետ կոնտակտների հաստատման գործում շահագրգռություն է ցուցաբերվում արևմտաեվրոպական մի շարք պետությունների կողմից։ Հօգուտ միջազգային անվտանգության ու համագործակցության կատարվող իրական գործողությունների ու նախաձեռնությունները, որ երկրից էլ դրանք բխեն, Սովետական Միությունում կգտնեն թե՛ ըմբռնում, թե՛ պաշտպանություն։

Սովետական Միությունը խաղաղության ու խաղաղ համագործակցության օգտին իր ընտրությունը արել է վաղուց, հիմնովին և հաստատուն։ Այդ ընտրությունը հեղինակավոր կերպով հավաստվեց ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան և ապրիլյան պլենումներում, վերջերս նշված հուղիչ ու անմոռաց տոնի՝ մեծ հաղթանակի 40-ամյակի ժամանակ։ Եվ 1945 թվականի հաղթական մայիսից ի վեր համաշխարհային պատերազմից զերծ անցած չորս տասնամյակները բոլոր խոսքերից առավել պերճախոս են ապացուցում՝ խաղաղությունը կարելի է պահպանել, եթե վճռական հակահարված տրվի իմպերիալիստական թելադրանքի ու բռնության քաղաքականությանը, եթե մշտապես ամրապնդվի սոցիալիստական ընկերակցության երկրների պաշտպանական ու տնտեսական հզորությունը։

Մեր կուսակցությունը հենց այսպես է գործում։ Ամրապնդելով սոցիալիզմի երկրների փոխգործողությունը, զարգացող պետությունների հետ բարեկամական հարաբերությունները, ձգտելով բոլոր խաղաղասեր դեմոկրատական ուժերի համախմբմանը, լիարյուն ու արդյունավետ երկխոսություն ծավալելով սոցիալական տարբեր սիստեմների պատկանող երկրների միջև, Սովետական Միությունը ջանքեր չի խնայում իր արտաքին քաղաքականության այդ բնագավառներում և անհրաժեշտ ամեն ինչ անում է, որպեսզի մոլորակի վրա խաղաղություն տիրի։

Թանկագին ընկերնե՛ր, թույլ տվեք վստահություն հայտնել, որ Երևանի և ամբողջ հանրապետության աշխատավորները իրենց բոլոր ուժերը, կարողություններն ու եռանդը ի սպաս կդնեն սովետների երկրի հզորության հետագա մեծացմանը։

Ուզում եմ մի անգամ ևս, թանկագին ընկերնե՛ր, ձեզ, բոլոր երևանցիներին, հանրապետության բոլոր աշխատավորներին ամբողջ սրտով շնորհավորել ուրախալի իրադարձության առթիվ։ Մաղթում եմ ձեզ հաջողություններ, երջանկություն, բարեկեցություն, նոր մեծագործություններ հանուն մեր մեծ հայրենիքի բարգավաճման։

Փա՜ռք շքանշանակիր Երևանին։

Փա՜ռք Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների անխախտ Միությանը։

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ՃԱՌԸ

Թանկագին ընկերնե՛ր, բարեկամնե՛ր։

Մեծարգո Եգոր Կուզմի՛չ։

Երևանը ականատես և բերկրալի շատ իրադարձություններ է տեսել։ Բայց հանրապետության մայրաքաղաքին հայրենիքի բարձրագույն պարգևի հանձնման այս օրը առանձնահատուկ է։ Եվ այն ընդմիշտ կմնա մեր հինավուրց և հավերժ երիտասարդ քաղաքի աշխատավորների, նրա բոլոր բնակիչների հիշողության մեջ։

Ընդունելով Լենինի շքանշանը, այն մարդու անունը կրող շքանշանը, որի անմահ անվան ու գործի հետ են կապված հայ ժողովրդի վերածնունդը, նրա բոլոր նվաճումները, մենք հարազատ կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին ժողովրդի սրտաբուխ շնորհակալությունն ենք հայտնում այն բարձր գնահատականի համար, որով նշվել են Երևանի ծառայությունները հեղափոխական շարժման մեջ, Հայաստանում սովետական իշխանության հաստատման ու ամրապնդման գործում, նրա մեծ ավանդը Հայրենական մեծ պատերազմում ֆաշիստական զավթիչների դեմ նվաճված հաղթանակում, քաղաքի աշխատավորների ձեռք բերած հաջողությունները տնտեսական ու մշակութային շինարարության ասպարեզում։

Երևանցիները, Սովետական Հայաստանի աշխատավորները, ամբողջ ժողովուրդը հարազատ կոմունիստական կուսակցության շուրջն է՛լ ավելի համախմբված, ի պատասխան բարձր պարգևի, առավել ակտիվորեն ու անձնվիրաբար կաշխատեն հանուն կուսակցության հոյակապ կանխանշումների կենսագործման, հանուն կոմունիզմի իդեալների հաղթանակի։

Բոլորիս վրա խոր տպավորություն գործեց կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար, մեր բոլորիս կողմից հարգված ընկեր Ե. Կ. Լիգաչովի ելույթը, որի մեջ դրվատանքի շատ խոսքեր ասվեցին մեր ժողովրդի, կուսակցական կազմակերպության, Սովետական Հայաստանի և նրա մայրաքաղաքի հասցեին, առաջադրվեցին կոնկրետ խնդիրներ, ինչպես նաև արվեցին քննադատական դիտողություններ, հայտնվեցին ցանկություններ, տրվեցին մեր կենսագործունեության տարբեր կողմերին վերաբերող խորհուրդներ ու հանձնարարականներ։

Մենք Ձեզանից, թանկագին Եգոր Կուզմի՛չ, խորապես շնորհակալ ենք Երևանին հայրենիքի բարձր պարգևը հանձնելու համար, ասված ջերմ խոսքերի և քաղաքի, հանրապետության կոմունիստների, աշխատավորների անձնվեր աշխատանքը բարձր գնահատելու համար։ Կարող եք վստահ լինել, որ Ձեր հանձնարարականներն ու դիտողությունները հաշվի կառնվեն կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների պրակտիկ գործունեության մեջ, կիրականացվեն մեր գործերում։

Ընկերնե՛ր։

Լենինի շքանշանը, որը շողշողաց Երևանի դրոշին, նրա աշխատավորների բոլոր սերունդների պարգևն է հեղափոխական, մարտական, ստեղծարար սխրանքի ու աշխատանքի համար։

Մեծ է Երևանի տարեգրությունը։ Բայց Հայաստանի ճակատագրի մեջ Երևանի դերը երբեք այնքան վիթխարի չի եղել, ինչպես սովետական դարաշրջանում։ Հենց իր սոցիալիստական կենսագրության ժամանակաշրջանում

նա աննախադեպ զարգացում ապրեց, դարձավ մեր ժողովրդի տնտեսական ու հոգևոր կյանքի խոշորագույն կենտրոնը, նրա փառքն ու պարծանքը:

Երևանը հեղափոխական ու ինտերնացիոնալ փառապանծ ավանդույթների քաղաք է: Այստեղ ավելի քան մեկուկես հարյուրամյակ առաջ, Ռուսաստանի և Հայաստանի զավակների թափած արյամբ հավերժ զոդվեց հայ-ռուսական եղբայրության անխախտ դաշինքը: Երևանում են որպես երդում հնչել Խաչատուր Աբովյանի ոգեշունչ խոսքերը՝ «Օրհնվի էն սհաթը, որ ռուսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ... Ռուսի անունը մեզ համար պետք է լինի սուրբ, ինչպես և նրա արյունը, որով մենք ազատվել ենք ընդմիշտ»:

Այստեղ դեռևս մեր դարասկզբին ծնվեց մասսաների հեղափոխական շարժումը, որը գլխավորեց ՌՍԴԲԿ Երևանի կոմիտեն՝ հիմնված 80 տարի առաջ բոցաշունչ հեղափոխական, հավատարիմ լենինյան Ստեփան Շահումյանի կողմից:

Մարտիկ-քաղաք, աշխատավոր-քաղաք Երևանը փայլուն կերպով է կատարել իր պատմական առաքելությունը: Նրա աշխատավորներն ընթացել են հայրենի երկրամասում սովետական իշխանության հաստատման պայքարի ավանգարդում, արիաբար կռվել մեծ Հայրենականի ռազմաճակատներում, աշխատանքային անձնվիրության և խիզախության օրինակ են տվել նոր կյանքի կառուցման բոլոր փուլերում, իրենց ողջ եռանդը, բանականությունը, տաղանդը նվիրաբերել են սոցիալիստական հասարակության կառուցմանը, լենինյան պատգամների իրականացմանը:

Այդ նրանք, ոգեշունչ էնտուզիաստներն ու արարողներն էին, որ լենինյան կուսակցության ղեկավարությամբ կիսատնայնագործական արհեստանոցների Երևանը դարձրին հզոր ինդուստրիայի քաղաք, այդ նրանք՝ հետամնացության խորխորատից ելածներն էին, որ նախկինում ոչ մի բարձրագույն դպրոց ու գիտական հիմնարկ չունեցող Երևանը դարձրին մեծ գիտության քաղաք: Այդ նրանք էին, որ մշակույթի նվաճումներից ժողովրդական զանգվածների օտարման խավարն ընդմիշտ ցրելով, վառեցին հոգևոր կյանքի բուռն ծաղկման կրակը: Այդ նրանց ձեռքերի ու համառության շնորհիվ էր, որ փոշուց շնչահեղձ, կավաշեն գավառական քաղաքը դարձավ երկրի ամենագեղեցիկ և խոշոր քաղաքներից մեկը:

Երևանի այսպիսի հիրավի լեգենդար վերափոխումը, տնտեսական ու մշակութային առաջադիմության բոլոր ուղղություններում նրա ակնառու նվաճումները հնարավոր եղան մեր ժողովրդի բարօրության նկատմամբ կոմունիստական կուսակցության մշտական հայրական հոգատարության, նրա լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ, սովետական ժողովուրդների և ամենից առաջ մեր դարավոր բարեկամի ու եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնության շնորհիվ:

Երևանցիները, ինչպես հանրապետության բոլոր աշխատավորները, ջերմագին սիրո ու խորին հարգանքի զգացում են տածում ռուս ժողովրդի, բոլոր սովետական ժողովուրդների նկատմամբ: Կատարելով իրենց հայրենասիրական պարտքը՝ նրանք անձնվեր աշխատանքով արժանավայել ավանդ են ներդնում նյութական ու հոգևոր բարիքների բազմապատկման, մեր մեծ հայրենիքի հզորության ամրապնդման գործում:

Այսօր Երևանում է կենտրոնացած մեր ստեղծարար և ինտելեկտուալ պոտենցիալի հիմնական մասը: Քաղաքի ձեռնարկությունները տալիս են հանրապետության ամբողջ արդյունաբերական արտադրանքի գրեթե կեսը, նրանց արտադրանքը արտահանվում է աշխարհի տասնյակ երկրներ:

Գիտական խոշոր հիմնարկների, ինստիտուտների, թատրոնների, համերգասրահների, թանգարանների քաղաք Երևանը վճռական դեր է խաղացել և այժմ էլ խաղում է հանրապետության հոգևոր կյանքի ծաղկման գործում: Այստեղ է ողջ ուժով հնչել մեր վերածնված ժողովրդի ստեղծարար հանճարի ձայնը, այստեղ են ծնվել նրա գիտական մտքի գագաթնային բազում նվաճումները, նրա հոգու թևավոր ու զրնգուն երգը:

Երևանը կառուցվում է, մշտապես բարեփոխվում, բարելավվում է նրա



ճարտարապետական տեսքը, հետևողականորեն լուծվում են նրա սոցիալական զարգացման հարցերը:

Երևանը, իհարկե, նախ և առաջ երևանցին է՝ քաղաքի հարստությունների և աշխատանքային փառքի կերտողը: Աճել, առաջադիմել է նոր Երևանը, աճել են նաև իրենք՝ քաղաքն ստեղծողները, նրա բանվոր դասակարգը, մտավորականությունը, աճել և ամրապնդվել են սոցիալիզմի համար, կուսակցության մեծ պլանների իրականացման համար մղվող պայքարում: Այդ պատմական պայքարում, ողջ կացութաձևի հեղափոխական նորացման պրոցեսում մշակվել է երևանցու նոր, սովետական բնավորությունը, որի կարևորագույն տարբերիչ հատկանիշներն են՝ նվիրվածությունը մեր հասարակության վեհ իդեալներին, հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, աշխատասիրությունը, հարազատ քաղաքի, հանրապետության, մեր մեծ երկրի հանդեպ քաղաքացիական պարտքի զգացումը:

Այս հիանալի հատկանիշներն իրենց վառ դրսևորումն են գտնում, նյութականանում Երևանի աշխատավորների նորանոր գործերի ու նվաճումների մեջ, նրանք ահա տասը տարի անընդմեջ հաղթող են ճանաչվում համամիութենական սոցիալիստական մրցությունում, նվաճում ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը:

Տնտեսական ու մշակութային շինարարության ասպարեզում ձեռք բերված տպավորիչ հաջողությունները նաև մայրաքաղաքի կուսակցական կազմակերպության, կուսակցության քաղկոմի, շրջանային կոմիտեների, ժողովրդական դեպուտատների սովետների, սկզբնական կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական նպատակասլաց մեծ աշխատանքի արդյունքն են. Նրանք աշխատավորների ջանքերը և ստեղծագործական եռանդը հմտորեն նպատակամղում են իրականացնելու քաղաքի էկոնոմիկայի և մշակույթի անշեղ վերելքի պատասխանատու և բազմազան խնդիրները:

Թույլ տվեք, թանկագին ընկերնե՛ր, Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների խորհրդի անունից ձեզ և ի դեմս ձեր՝ բոլոր երևանցիներին, հանրապետության բոլոր աշխատավորներին ջերմորեն և սրտանց շնորհավորել հայրենիքի բարձր պարգևի առթիվ և մաղթել երջանկություն, քաջառողջություն, նոր մեծ հաջողություններ կոմունիստական շինարարության գործում:

Ընկերնե՛ր: Այնպիսի նշանակալից իրադարձություններ, ինչպիսին այսօրվա հանդիսությունն է, մեզ՝ կոմունիստներիս, սովետական մարդկանց համար միայն ուրախ տոն չեն: Դրանք միշտ էլ նաև անցած ուղու արդյունքների, արվածի ամփոփումն են, նաև ուժերի ստուգատես, ապագային ուղղված հայացք:

Իսկ որպեսզի համարձակ նայենք ապագային, վստահորեն քայլենք դեպի վաղվա օրը, նախ և առաջ հարկավոր է վերացնել այն ամենը, ինչը խանգարում է առաջընթացին: Իսկ մեզանում, ընկերներ, առայժմ քիչ չեն թերություններն ու չլուծված պրոբլեմները, որոնց վրա իր ելույթում մեր ուշադրությունը հրավիրեց ընկեր Ե. Կ. Լիգաչովը:

Ինչպես Երևանում, այնպես էլ հանրապետությունում դեռևս կան ետ մնացող ձեռնարկություններ, կազմակերպություններ, տնտեսություններ, որոնք չեն կատարում պլանային առաջադրանքները, իրենց պայմանագրային պարտավորությունները, թողարկում են ոչ բարձրորակ արտադրանք: Առանձին ճյուղերում դանդաղ է ընթանում գիտատեխնիկական առաջադիմությունը: Ամենուրեք չէ, որ արդյունավետորեն են օգտագործվում առկա արտադրական հնարավորությունները, աշխատանքային, ֆինանսական, նյութական ու վառելիքաէներգետիկ ռեսուրսները: Լիովին չեն իրացվում կապիտալ ներդրումները, բոլոր շինությունները չէ, որ կառուցվում են որակով, ճարտարապետորեն արտահայտիչ: Չլուծված պրոբլեմներ կան քաղաքային տնտեսության մեջ, բացթողումներ՝ բնակչության բժշկական, կենցաղային, առևտրի սպասարկ-

ման ասպարեզում։ Մեր կյանքից դեռևս լիովին արմատախիլ չեն արված սոցիալիստական համակեցության նորմերի խախտումների փաստերը, ամեն կարգի բացասական երևույթները։

Այդ թերությունները հետևանք են թե՛ այն բանի, որ մեզանում երբեմն ժամանակին հաշվի չեն առնվում արտադրության օբյեկտիվ պայմանների մեջ կատարված փոփոխությունները, ժամանակին չեն լուծվում հասունացած հարցերը, դանդաղ են կատարելագործվում տնտեսական մեխանիզմը, աշխատանքի ոճն ու մեթոդները, թե՛ այն բանի, որ ամենուրեք չէ, որ հետևողականորեն ամրապնդվում են կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահությունը, կազմակերպվածությունն ու կարգուկանոնը և թե այն բանի, որ դեռևս ամենուրեք չեն հասել գաղափարադաստիարակչական աշխատանքի արմատական բարելավման, դրա արդյունավետության բարձրացման։

Մենք պետք է քննադատաբար գնահատենք ինչպես ամբողջությամբ վերցված ժողովրդական տնտեսության մեջ, այնպես էլ յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, յուրաքանչյուր սոցիալական բջիջում տիրող վիճակը, սկզբունքային գնահատական տանք թերություններին ու վրիպումներին, վճռականորեն վերացնենք դրանք, մոբիլիզացնենք բոլոր ուժերն ու հնարավորությունները, որպեսզի լիովին կատարենք ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, բարձր ցուցանիշներով ավարտենք ընթացիկ հնգամյակը, կայուն հիմք ստեղծենք եկող՝ 12-րդ հնգամյակի հաջող մեկնարկի համար, սոցիալ-տնտեսական առաջընթացի էական արագացման՝ կուսակցության առաջադրած մեծ ու պատասխանատու խնդիրների կենսագործման համար։

Դրան են նպատակամղում ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի մարտյան ու ապրիլյան պլենումների՝ համաժողովրդական ջերմ հավանության արժանացած որոշումները, որոնք նշել են մեր հասարակության որակապես նոր վիճակի հասնելու համար կուսակցության ու ժողովրդի գործունեության գլխավոր ուղղությունները։

«Աճի տեմպերի արագացման, ընդ որում էական արագացման խնդիրը միանգամայն իրագործելի է,— ապրիլյան պլենումում շեշտեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— եթե մեր ամբողջ աշխատանքի կենտրոնում դրվեն էկոնոմիկայի ինտենսիվացումը և գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, վերակառուցվեն կառավարումն ու պլանավորումը, կառուցվածքային ու ինվեստիցիոն քաղաքականությունը, ամենուրեք բարձրացվեն կազմակերպվածությունն ու կարգապահությունը, արմատապես բարելավվի գործունեության ոճը»։

Հիշյալ խնդիրների իրականացմանը պետք է նպատակամղվի հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեությունը։ Եվ այստեղ, ինչպես միշտ, մենք ակտիվ, նախաձեռնողական աշխատանք ենք ակնկալում Երևանի կուսակցական կազմակերպությունից։

Յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվ պետք է հաստատակամ ու նպատակասլաց աշխատի, կերտի, եռանդուն կերպով գործի, պայքարի հանուն նորի, առաջավորի, հանուն կուսակցության կանխանշածի իրականացման, ձգտի առկա հնարավորությունների և ձեռք բերվող արդյունքների համարժեքության, արտադրության և աշխատանքի արդյունավետության զգալի բարձրացման։

Պետք է առավելագույն չափով օգտագործել արտադրական պոտենցիալը, արագ տեմպերով կատարել հիմնական ֆոնդերի նորացումը, արտադրության տեխնիկական վերազինումը, բարձրացնել նրա կազմակերպման և կուլտուրայի մակարդակը։ Քաղաքում կուտակված գիտատեխնիկական հզոր պոտենցիալը անհրաժեշտ է նպատակամղել հասնելու արտադրության մեջ իրոք հեղափոխական տեղաշարժերի, համարձակորեն անցնել սկզբունքորեն նոր տեխնոլոգիական համակարգերի, վերջին սերունդների տեխնիկայի, որն ապահովում է ամենաբարձր արտադրողականություն։

Ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում մեզ անհրաժեշտ է վճռականորեն բարձրացնել աշխատանքային ու պլանային կարգապահությունը,



բոլոր մակարդակի կադրերի պատասխանատվությունը, գործն այնպես կազմակերպել, որ մեզ մոտ չլինի ետ մնացող, պայմանագրային պարտավորությունները չկատարող ձեռնարկություն, որպեսզի բոլոր օբյեկտները կառուցվեն ժամանակին և բարձրորակ, որ ամենուրեք՝ յուրաքանչյուր արտադրամասում ու տեղամասում, յուրաքանչյուր աշխատատեղում գործնական պայքար մղվի վերջնական բարձր արդյունքների հասնելու, նյութական ու հումքային ռեսուրսները տնտեսելու, միայն բարձր որակի և հուսալիության արտադրանք թողարկելու համար։

Չպետք է մոռանալ, որ մեզ մոտ թողարկվող արտադրանքը մեր յուրօրինակ այցետոմսն է։ Ուստի հարկավոր է այնպես աշխատել, որ Երևանում պատրաստված ամեն ինչի մասին արտահայտվեն բարի խոսքով։

Երևանցիները միշտ պետք է հիշեն, որ մայրաքաղաքի արդյունաբերությունը Հայաստանի ինդուստրիայի դրոշակակիրն է և պարտավոր է ամեն ինչով լինել օրինակելի, առաջավոր, իրոք արդիական։

Աշխատանքի բարձր արտադրողականության և որակի մենք կկարողանանք հասնել, եթե ակտիվացնենք մարդկային գործոնը, հետևողականորեն ձգտենք մեր բոլոր աշխատողների որակավորման բարձրացման, եթե հասնենք այն բանին, որ նրանցից յուրաքանչյուրը ունենա բարձր պրոֆեսիոնալիզմ, լինի խորագիտակ, իր տեղում աշխատի բարեխղճորեն, ուժերի լիակատար նվիրումով, որ նրանցից յուրաքանչյուրը քննադատաբար գնահատի իր գործունեության արդյունքները, համակված լինի արվածի, ձեռք բերվածի համար առողջ անբավարարվածության զգացումով։

Մեր կադրերը պետք է միշտ հաշվի առնեն ժամանակի գործոնը, տեմպի գործոնը աշխատանքում։ Ժամանակին ներդնել գիտատեխնիկական նվաճումները, ժամանակին իրացնել գտնված լավագույն լուծումը, չսպասել, այլ ակտիվորեն հասնել դրական վերափոխումների, մշտապես նպատակամղված լինել նախատեսվածը կոնկրետ և սահմանված ժամկետներում կատարելու։ Ահա թե ինչը պետք է բնորոշ լինի նրանց աշխատանքում։

Մենք, ընկերներ, պարտավոր ենք արտադրական առաջադրանքների կատարման հետ միասին նույն հետևողականությամբ լուծել սոցիալական զարգացման խնդիրները, բարելավել մեր մարդկանց կյանքի, աշխատանքի ու հանգստի պայմանները։

Այս առումով բացառիկ մեծ է «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի ընդունած որոշման նշանակությունը, որը մեր ժողովրդի բարօրության, Սովետական Հայաստանի, նրա մայրաքաղաքի բարգավաճման նկատմամբ լենինյան կուսակցության մշտական հոգատարության ևս մի վառ դրսևորումն է։

Առանց չափազանցության կարելի է ասել, որ Երևանի առջև երբեք չեն բացվել զարգացման այնպիսի լայն հեռանկարներ, ինչպես հիմա։ Որոշումը քաղաքի տնտեսական ու սոցիալ-կուլտուրական համակողմանի առաջընթացի մի ծավալուն ծրագիր է բառիս լիակատար իմաստով։ Այն հնարավորություն կտա լուծելու քաղաքի սոցիալական ինֆրակառուցվածքի բարելավման հարցերի մի ամբողջ կոմպլեքս, սոցիալ-կենցաղային, տրանսպորտային, էկոլոգիական, աշխատավորների կուլտուրական հանգստի կազմակերպման և առողջության ամրապնդման կենսական պրոբլեմները, ավելի բարձր մակարդակի հասցնել ամբողջ քաղաքային տնտեսությունը, բնակչության բնակարանային-կոմունալ սպասարկումը։

Երևանցիների հայրենասիրական պարտքն է ոգեշունչ աշխատանքով, նոր մեծագործություններով պատասխանել կուսակցության հայրական հոգատարությանը, ամբողջովին կատարել այն ամենը, ինչ նախատեսված է որոշմամբ։ Ահա թե որտեղ պետք է ամբողջ ուժով դրսևորվի ջերմագին սերը Երևանի նկատմամբ, ահա այն գործը, որի իրականացման համար ինչպես երբեք հարկավոր են իրենց քաղաքը սիրող բնակիչների հոգատար ձեռքերը և բոցավառ սրտերը։

Քաղաքի հոյակերտությունն ու գեղեցկությունը ո՛չ միայն նրա ճարտարապետական անկրկնելիության մեջ են, այլև՝ բարոյաքաղաքական առողջ իրադրության, աշխատավորական կոլեկտիվների գործարար, ստեղծագործ մթնոլորտի, կենցաղային բարձր կուլտուրայի, մարդկային բարի փոխհարաբերությունների ջերմության, հիանալի ավանդույթների։ Եվ մենք պետք է անհաշտ լինենք այն ամենի նկատմամբ, ինչը աղարտում է մեր հարազատ Երևանի հոգևոր, բարոյական ու գեղագիտական նկարագիրը, խորթ գծեր մտցնում նրա կոլորիտի մեջ, խախտում մեր սոցիալիստական ապրելակերպի ներդաշնակությունը և գեղեցկությունը։

Հետևողականորեն կենսագործելով «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, կատարելագործելով գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքը, այն շաղկապելով ժողովրդատնտեսական հանգուցային խնդիրների լուծման հետ, մենք պետք է հասնենք աշխատավորների կոմունիստական գաղափարայնության, նրանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության հետագա բարձրացման, նրանց հոգևոր կյանքի հարստացման։

Ընկերնե՛ր։

Այսօրվա տոնը մեր սրտերը կրկին ու կրկին համակում է անսահման երախտագիտության ու սիրո զգացումով դեպի լենինյան մեծ կուսակցությունը, որ մեր ժողովրդին բերեց սովետական միասնական ընտանիքում ապրելու և կոմունիստական պայծառ ապագայի համար պայքարելու երջանկությունը։

Երևանցիները, հանրապետության բոլոր աշխատավորները անվերապահորեն պաշտպանում և միահամուռ հավանություն են տալիս կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականությանը, որը նպատակաուղղված է բոլոր եղբայրական սովետական հանրապետությունների հետագա բազմակողմանի ծաղկմանը, մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության համակողմանի ամրապնդմանը, աշխարհի կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության պահպանմանը։

Մենք վստահ ենք, որ նրանք, ոգեշնչված հայրենիքի բարձր պարգևով, է՛լ ավելի համառորեն, ավելի մեծ եռանդով կպայքարեն կոմունիստական արարման ճանապարհին նոր, բարձր բնագծերի հասնելու համար, ըստ արժանվույն կդիմավորեն հարազատ կուսակցության XXVII համագումարը։

Փա՜ռք Սովետական Հայաստանի շքանշանակիր մայրաքաղաքին, նրա աշխատավոր մարդկանց, հանրապետության բոլոր աշխատավորներին՝ նոր կյանք կերտողներին, սովետների մեծ երկրի հայրենասերներին։

Փա՜ռք լենինյան կուսակցությանը, որը մեր սովետական ժողովրդին փորձված կուրսով առաջնորդում է դեպի կոմունիստական պայծառ գալիք։

# ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ, ՆՈՐ ԲՆԱԳԾԵՐ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԸՆԹԱՑԻԿ ՏԱՐՎԱ ԱՊՐԻԼԻՆ կայացած պլենումը քննարկեց կուսակցության հերթական XXVII համագումարի հրավիրման և նրա նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող խնդիրների մասին հարցը։ Պլենումը որոշեց ՍՄԿԿ հերթական XXVII համագումարը հրավիրել 1986 թվականի փետրվարի 25-ին։

ՍՄԿԿ առաջիկա XXVII համագումարը, հիրավի, էտապային ուղենիշ կդառնա երկրի զարգացման ճանապարհին։ Կուսակցության համաժողովի նշանակությունը որոշվում է քննարկման դրվող հարցերի առաջնագույն կարևորությամբ, ընթացիկ ժամանակաշրջանի բնույթով, հասարակության առջև ծառացած խնդիրների նորությամբ ու մասշտաբայնությամբ։

Պլենումում ընկեր Մ. Ս. Գորբաչովի ներկայացրած զեկուցման մեջ համակողմանիորեն ցույց տրվեցին մեր երկրի հաջողությունները, բացահայտվեցին թերություններն ու վրիպումները, սահմանվեցին դրանց հաղթահարման ուղիներն ու միջոցները, առաջադրվեցին այսօրվա և հեռանկարի խնդիրները։

Ինչպես նշեց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում, հանրապետության աշխատավորները, բոլոր սովետական մարդիկ, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս ապրիլյան պլենումի արդյունքներին, լի են վճռականությամբ՝ ակտիվորեն կենսագործելու նրա որոշումները, արժանավայել դիմավորելու ՍՄԿԿ XXVII համագումարը։ Պլենումը որոշեց Հայաստանի կոմունիստական կուսակցության հերթական XXVIII համագումարը հրավիրել 1986 թվականի հունվարի 23-ին։

Այժմ անհրաժեշտ է համակողմանիորեն վերլուծել և իրատեսորեն գնահատել կուսակցության XXVI համագումարից հետո կատարվածի արդյունքները, սահմանել հետագա զարգացման հեռանկարները, ներքին ու արտաքին քաղաքականության խնդիրները։ Առաջիկայում կուսակցության մեջ ու երկրում լայնորեն կքննարկվեն ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը, տասներկուերորդ հնգամյակի և մինչև ընթացիկ հազարամյակի վերջն ընկած ժամանակաշրջանի զարգացման հիմնական ուղղությունները։

Հիրավի, որքան դժվարին ու մեծ, որքան պատասխանատու են պատմական նպատակները, այնքան ավելի կարևոր է մասսաների ակտիվ մասնակցությունը առաջադրված խնդիրների իրականացման գործում։ Մեր մեծ հայրենիքը զգալի հաջողությունների է հասել հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ Հենվելով նոր կարգերի առավելությունների վրա՝ նա պատմական կարճ ժամանակամիջոցում նվաճեց տնտեսական ու սոցիալական առաջընթացի գագաթները։ Այժմ Սովետական Միությունն ունի հզոր, բազմակողմանիորեն զարգացած էկոնոմիկա, բանվորների, մասնագետների, գիտնականների որակյալ կադրեր։ Արտադրության, գիտության և տեխնիկայի զարգացման շատ ուղղություններում մեր երկիրը հաստատուն կերպով առաջատար դիրքեր է գրավում աշխարհում։

Նկատենք նաև, որ խոր փոփոխություններ են կատարվել սոցիալական կյանքում։ Պատմության մեջ առաջին անգամ աշխատավոր մարդը դարձավ երկրի տերը, իր ճակատագրի ապավենը։ Սոցիալական անանց արժեքներ են սոցիալիստական ապրելակերպին բնորոշ հատկանիշները։ Դրանք են աշխատանքի երաշխավորված իրավունքը և արժանի վարձատրությունը, մարդու նկատմամբ հասարակության հոգատարությունը նրա ծննդից մինչև խոր ծերություն, հոգևոր մշակույթի լայն մատչելիությունը, հարգանքը անձի արժա-

ների ու կազմակերպությունների ղեկավարները հետևողական պայքար պետք է ծավալեն աշխատաժամանակի ամեն կարգի կորուստների դեմ, լավագույնս կազմակերպեն, ակտիվորեն ատեստավորեն և ռացիոնալացնեն աշխատատեղերը։

Կարևոր է ավելի խելամտորեն օգտագործել հանրապետության ակադեմիական, բուհական, ճյուղային գիտական պոտենցիալը, զարգացնել արտադրության հետ դրանց կապի արդյունավետ ձևերը։ Հարկավոր է հասնել այն բանին, որ «հետազոտություն-նախագծում և տեխնոլոգիայի մշակում-արտադրություն» ցիկլի բոլոր մասնակիցներն ակտիվորեն աշխատեն այդ ուղղությամբ։ Այս բնագավառում հավասարապես պետք է պատասխանատու լինեն գիտության և արտադրության աշխատողները։ Ժամանակն է ուժեղացնել գիտական հետազոտությունների կոորդինացումը, արագացնել դրանց ներդրումը, արտադրության հետ գիտության կապի նոր, առաջավոր ձևերի արմատավորումը։ Նորագույն մեքենաների ու մեխանիզմների կիրառումը պահանջում է ինտելեկտուալ պոտենցիալի մեծացում, որն ընդգրկում է մասնագետ կադրերի բոլոր կատեգորիաները։ Այս առնչությամբ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը խնդիր դրեց բարձրացնել ինժեներային աշխատանքի վարկը, կոնստրուկտորների, տեխնոլոգների, ինչպես նաև վարպետների դերն ու հեղինակությունը, նրանց աշխատանքի նյութական ու բարոյական խթանների ուժեղացումը։

Գիտատեխնիկական առաջընթացը պահանջում է կենտրոնացնել ուշադրությունը բանվոր դասակարգի ու գյուղացիության կուլտուր-տեխնիկական մակարդակի, հասարակության գլխավոր արտադրողական ուժերի նախապատրաստման ու կատարելագործման արմատական բարելավման նկատմամբ։ Ժամանակակից արտադրությունը կողմնորոշում է նախաձեռնողաբար մտածող, բարձր կազմակերպված, կարգապահ, կրթված, սկզբունքորեն նոր տեխնոլոգիական կուլտուրային տիրապետող բանվորը։ Նա պետք է թե՛ մասնագիտորեն, թե՛ հոգեբանորեն պատրաստված լինի արագ նորացվող նյութատեխնիկական միջոցների օգտագործման համար։ Արդեն այժմ հաճախ այնպես է պատահում, որ նորագույն ավտոմատ գծերը, ռոբոտները, ծրագրավորված կառավարվող հաստոցներն անարդյունավետ են օգտագործվում բանվորների ու ինժեներատեխնիկական կադրերի անբավարար որակավորման պատճառով։ Իսկ չէ որ ժողովրդական տնտեսության մեջ մուտք գործող նորագույն տեխնիկայի հոսքը արագորեն աճելու է։

Կյանքի այդ պահանջը առաջադրում է կադրերի ուսուցման համակարգը՝ սկսած դպրոցից ու պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններից մինչև բուհերը, լրջորեն վերակառուցելու խնդիրը։ Չնայած ձեռնարկված են որոշ քայլեր, հարկ է դրանց հաղորդել մասշտաբային բնույթ։

Երկրում մեկ սկսվել է հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի իրականացումը, որը սոցիալական խոշորագույն ծրագիր է աճող սերնդի կրթության, դաստիարակության և պրոֆեսիոնալ պատրաստության բնագավառում։ Այդ ընթացքում լրիվ չափով պիտի հաշվի առնվեն գիտատեխնիկական առաջադիմության պահանջները, մասնավորապես երիտասարդության կոմպյուտերային գրագիտության ապահովումը։ Հասունացել է նաև միջնակարգ և մասնագիտական կրթության համակարգի խոր փոփոխությունների անհրաժեշտությունը։ Հատկապես կարևոր է էականորեն բարձրացնել տեխնիկական մասնագետների պատրաստման որակը։ Կուսակցությունը միջոցներ է ձեռնարկում ուժեղացնելու նրանց ստեղծագործական հասույթը։

Անհետաձգելի խնդիր է ժողովրդական տնտեսության մեջ աշխատող կադրերի վերապատրաստման ու որակի բարձրացման համակարգի կատարելագործումը։

Կուսակցության Կենտկոմի պլենումում իրավացիորեն նշվեց, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացումն անբաժանելի է արտադրանքի որակի վճռական բարելավումից։ Հանրապետության արդյունաբերությունն այժմ թողարկում է պետական որականիշով 767 արտադրատեսակ։ Արտա-



դրանքի ընդհանուր ծավալի մեջ դրանց տեսակարար կշիռը անցյալ տարի կազմեց 20,4 տոկոս։ Սակայն հանրապետության ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում ընթացիկ հնգամյակի տարիներին պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը կրճատվել է։ Միայն 1984 թվականին այդ որականիշից զրկվեց 54 արտադրատեսակ։ Սա իրոք արտառոց փաստ է։ Փաստ է նաև, որ հանրապետության որոշ ձեռնարկություններ ընդհանրապես չեն թողարկում որակի բարձրագույն կատեգորիայի արտադրանք։ Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում, դրանցից են «Հայվերելակմեքենա» արտադրական միավորումը, Երևանի ժամացույցի, Էջմիածնի պլաստմասսաների, Հրազդանի ցեմենտի, Երևանի ավտոբեռնիչների գործարանները, Լենինականի փայտամշակման կոմբինատը, արդյունաբերական և գյուղական շինարարության մինիստրությունների երկաթբետոնե կոնստրուկցիաների գործարանները և այլն։

Էկոնոմիկայի ինտենսիվացումն ու արդյունավետության բարձրացումը անհնար են առանց կառավարման հին մեթոդների հաղթահարման, առանց տնտեսական մեխանիզմի, աշխատանքի ոճի ու եղանակների մշտական կատարելագործման։ Ժամանակը հրամայաբար պահանջում է կառավարման առաջադիմական մեթոդների ներդրում, ձեռնարկությունների ինքնուրույնության հետագա ընդլայնում, աշխատավորական կոլեկտիվների տնտեսական խթանման բարելավում, ընդհուպ մինչև աշխատատեղ հասցվող-արմատավորվող այնպիսի տնտհաշվարկային հարաբերությունների հաստատում, որոնք արտադրության բոլոր օղակներին կողմնորոշեն դեպի առաջավոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի օգտագործում, աշխատանքի առավել բարձր արտադրողականության ձեռքբերում և լավորակ արտադրանքի թողարկում։

Խնդիրը նրանումն է, որ կուսակցական կազմակերպությունները, բոլոր տնտեսական օղակները անդուլ ուշադրություն նվիրեն աշխատանքի կազմակերպման առաջադիմական ձևերի և մեթոդների լայն ներդրման, աշխատանքի բրիգադային եղանակի տնտեսական ու դաստիարակչական պոտենցիալի ակտիվ օգտագործման հարցերին։

Երկրում անցկացվող խոշորամասշտաբ տնտեսափորձը նպատակամղված է տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը։ Հանրապետության տարածքում գտնվող քիմիական մեքենաշինության, հաստոցաշինական արդյունաբերության, սարքաշինության, գյուղատնտեսական մեքենաշինության մինիստրությունների ձեռնարկությունների ու միավորումների, ինչպես և ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրության այս տարի տնտեսավարման նոր պայմանների անցած ձեռնարկությունների ղեկավարները պետք է մանրազնին վերլուծեն այդ աշխատանքի ընթացքն անցած ժամանակաշրջանում և գործուն միջոցներ ձեռնարկեն տնտեսափորձով առաջադրված խնդիրների անվերապահ կատարման համար։

Կուսակցության Կենտկոմի ապրիլյան պլենումը առանձնահատուկ շեշտեց պարենային ծրագրի իրականացման աշխատանքներն ուժեղացնելու անհրաժեշտությունը։ Այս առնչությամբ հանրապետությունում վերջին տարիներին զգալի գործ է արվել գյուղատնտեսության, ագրոարդյունաբերական ողջ համալիրի նյութատեխնիկական բազայի ամրապնդման, տնտեսավարման և կառավարման մեթոդների կատարելագործման, արտադրության ինտենսիվացման, հողերի մելիորացման, գյուղի սոցիալական զարգացման ուղղությամբ՝ առանձնապես լեռնային ու նախալեռնային շրջաններում, անցկացվել են սոցիալ-տնտեսական այլ կարևորագույն միջոցառումներ։ Այս ամենը իրոք հնարավորություն է տվել բարելավելու սննդամթերքների մատակարարումը բնակչությանը։ Այդուհանդերձ, ագրոարդյունաբերական համալիրի ճյուղերի զարգացման գործում կատարված դրական տեղաշարժերը ինքնահանգստացման հիմք չեն տալիս։ Հնգամյակը ավարտին է մոտենում, իսկ մի շարք շրջաններում չի հաջողվել հասնել մսի, կաթի, ձվի, բանջարեղենի, պտուղների և երկրագործական ու անասնապահական այլ մթերքների արտադրության և մթերումների պլանավորված ծավալներին։ Անասնապահության վիճակի վա-

տացումը որոշ տեղերում բացատրվում է ֆերմաներում պատշաճ կարգուկանոնի, կազմակերպվածության բացակայությամբ, արտադրական, աշխատանքային և տեխնոլոգիական ցածր կարգապահությամբ: Անընդունելի է և այն իրողությունը, երբ գյուղատնտեսական արտադրությունն առաջընթաց չի ապրում, նույնիսկ թույլ է տրվում նահանջ գրաված բնագծերից: Իսկ տնտեսական շատ ղեկավարներ, հասնելով դրական արդյունքների, բավարարվում են ձեռք բերածով և գործը ինքնահոսի են մատնում: ՀԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում նշվեց, որ չամրապնդելով ձեռք բերածը, մի շարք կոլտնտեսությունների, սովխոզների, այլ տնտեսությունների ղեկավարներ չմտածված ու անհիմն կերպով, ինքնագլուխ վերացնում են այս կամ այն արտադրությունը՝ առանց համապատասխան նորով փոխհատուցելու, որի հետևանքով թույլ է տրվում արտադրանքի կորուստ:

Գյուղի ագրոարդյունաբերական համալիրի աշխատավորների համար ընթացիկ տարին անհաջող սկսվեց: Հիմա էլ եղանակը երես չի տալիս: Այդուհանդերձ, հարկավոր է ապահովել գյուղատնտեսական արտադրանքի համախառն արտադրության պլանների, մթերքների վաճառքի առաջադրանքների և սոցպարտավորությունների կատարումն ու գերակատարումը:

Շինարարության ասպարեզում վերջին ժամանակներս դրական տեղաշարժեր են կատարվել, սակայն այդ ճյուղը շարունակում է աշխատել անհամաչափ, չի ապահովում պլանների կատարումը մի շարք գլխավոր ցուցանիշների գծով: Մեղանում անտնտեսվարության յուրօրինակ վկայություն են տասնյակ միլիոնավոր ռուբլիների արժողությամբ թերավարտ շատ օբյեկտներ: Անհրաժեշտ է սահմանված ժամկետներում ապահովել օբյեկտների գործարկումը:

Տրանսպորտի և կապի ձեռնարկությունների կոլեկտիվները հիմնականում կատարում են պլանային առաջադրանքները: Միևնույն ժամանակ բնավ էլ լրիվ չեն լուծված բոլոր պրոբլեմները: Ապրանքաշրջանառության պլանների կատարման առումով նեղ տեղ է դարձել առևտուրը: Պատճառը նրանումն է, որ առևտրի կազմակերպությունների ղեկավարները ժամանակին ինչպես հարկն է չգնահատեցին վճարունակ պահանջարկի կառուցվածքում կատարված փոփոխությունները՝ կապված բնակչության նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի հետագա աճի հետ՝ ըստ ապրանքների ծավալի և տեսականու պահանջարկի և առաջարկի միջև հաշվեկշռվածությունը ապահովելու գործում: Դանդաղ են կատարելագործվում առևտրի կազմակերպման ձևերն ու մեթոդները:

Կուսակցության առաջադրած խնդիրների լույսի ներքո լուրջ անելիքներ կան նաև բնակչության կենցաղսպասարկման ոլորտում: Սպասարկման մի շարք տեսակներ չեն համապատասխանում բնակչության աճած պահանջներին: Հավուր պատշաճի հաշվի չի առնվում պահանջարկի առկա կառուցվածքը: Սպասարկման որակն ու կուլտուրան բարելավման կարիք ունեն: Դանդաղել են գյուղական բնակչության կենցաղծառայության զարգացման տեմպերը: Հանրապետությունում քիչ բան չի արված բնակչության առողջապահության և սոցիալական ապահովության բարելավման ուղղությամբ: Սակայն բուժսպասարկման ներկայիս մակարդակը տակավին չի համապատասխանում արդի պահանջներին: Այդ բնագավառում հարկ է ստեղծել այնպիսի մթնոլորտ, որ իսպառ վերացվեն հիվանդների նկատմամբ անուշադիր վերաբերմունքի, բժշկական էթիկայի նորմերի խախտման դեպքերը: Աշխատավորների սոցիալական և կուլտուր-կենցաղային սպասարկման բնագավառում անհրաժեշտ է հաղթահարել տեղ գտած թերություններն ու վրիպումները, հաստատել պատշաճ կարգուկանոն: Ինչպես ասվեց ապրիլյան պլենումում, այն ամենում, ինչ վերաբերում է մարդուն, նրա աշխատանքին, նյութական բարեկեցությանն ու հանգստին, մենք պետք է անսահման ուշադիր լինենք: Դա մեզ համար քաղաքականության հիմնական հարցն է:

ՍՄԿԿ XXVII համագումարին կնախորդի հաշվետու-ընտրական կամպանիան, որը հասարակական-քաղաքական կարևոր իրադարձություն է կուսակցության կյանքում: Կուսակցական կազմակերպությունները պետք է հանգա-



մանորեն վերլուծեն գործերի վիճակը արտադրական ու հասարակական կյանքի բոլոր տեղամասերում, խորամուխ լինեն առաջիկայում լուծվող պրոբլեմների ու խնդիրների մեջ:

Հաշվետու-ընտրական ժողովներում և կոնֆերանսներում հարկ է գործարար մթնոլորտում քննարկել, թե ինչպես են կոմունիստները կատարել կուսակցության որոշումներն ու դիրեկտիվները, ինչ չափով են հայտնաբերվել արտադրության աճի, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման հնարավորություններն ու կոնկրետ ուղիները: Արվածի վերլուծությունը պետք է տոգորի առկա թերությունների և վրիպումների սկզբունքային քննադատության ոգով: Դրանցում տեղ չպիտի գտնեն գովաբանություններ ու հաճոյախոսություններ, ընդհանուր բառերի ետևում գործի էությունը թաքցնելու, թերությունների համար մեղքը օբյեկտիվ հանգամանքների կամ գերատեսչական թերացումների վրա բարդելու փորձեր: Հասնել այն բանին, որ ամենուրեք հաշվետվություններն ու ընտրություններն անցնեն կուսակցության կանոնադրության և ղեկավար մարմինների ընտրությունների մասին ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգին լիովին համապատասխան:

Ապրիլյան պլենումում իրավացիորեն նշվեց, որ հաշվետու ժողովները: կոնֆերանսները և համագումարները հնարավորություն են ընձեռում բազմակողմանիորեն գնահատելու ընտրովի կուսակցական մարմինների գործունեությունը, մանրամասնորեն խորամուխ լինելու նրանց աշխատանքի բովանդակության ու մեթոդների մեջ: Ընդ որում շեշտը պետք է դրվի այն բանի վերլուծության վրա, թե նրանք ինչպես են լուծում մարդկանց, արտադրական կոլեկտիվների կյանքի ու աշխատանքի, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հանգուցային հարցերը, թե ինչպես են կազմակերպչական աշխատանք տանում մասսաների շրջանում: Պահանջվում է հաստատակամորեն շարունակել ստորին կուսակցական կազմակերպություններին ամենօրյա և առարկայական օգնություն ցույց տալու, գործարարությունն ու օպերատիվությունը բարձրացնելու, թղթերի հոսքը կրճատելու, աշխատանքի գրասենյակային ոճը, բազմաթիվ նիստերի ու խորհրդակցությունների ձգտումը հաղթահարելու գիծը:

Կյանքն ինքն է օրակարգի հարց դարձնում մեզանից յուրաքանչյուրի աշխատանքը վճռականորեն բարելավելու, հասարակության զարգացման արդի փուլի պահանջներին այն համապատասխանեցնելու անհրաժեշտությունը: Հիրավի, այժմ արդեն բավարար չէ սոսկ ճշտակատարությունը, թեև երբեմն դա էլ է պակասում: Ակնհայտորեն մեծանում է այնպիսի գործնական հատկությունների նշանակությունը, ինչպիսիք են ձեռնհասությունը, նորի զգացումը, նախաձեռնությունը, պատասխանատվությունն իր վրա վերցնելու համարձակությունն ու պատրաստակամությունը, խնդիրն առաջադրելու և դրա լուծումը մինչև վերջ հասցնելու կարողությունը, տնտեսավարման քաղաքական իմաստը տեսադաշտից չկորցնելու ընդունակությունը:

Ընկեր Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում նշեց, որ ոչ մի կուսակցական կազմակերպություն, ոչ մի աշխատող չպետք է վերահսկողությունից դուրս մնա: Կյանքն է ապացուցել, որ հենց վերահսկողության բացակայությունն է այլասերում մարդկանց, վնասում ընդհանուր գործին: Ուստի անհրաժեշտ է, որ սխալներն ու վրիպումները, ում էլ դրանք վերաբերվեն, չքողվեն, այլ բացահայտ քննադատության ենթարկվեն ինչպես վերևից, այնպես էլ, հատկապես, ներքևից: Բոլոր գործերում այսօր կտրուկ տեղաշարժը ապահովելու համար անհրաժեշտ է վարել հետևողական ու սկզբունքային կադրային քաղաքականություն: Կուսակցական ժողովների և կոնֆերանսների աշխատանքում, անշուշտ, կարևոր տեղ կգրավեն կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերը: Սկզբունքորեն կարևոր է այսուհետ ևս կուսակցական ղեկավարման կայունությունն ապահովելու, փորձառու և երիտասարդ աշխատողների ճիշտ զուգակցման գիծ վարելը: Աշխատանքի կարևոր տեղամասերում անհրաժեշտ է ակտիվորեն առաջ քաշել կանանց, ավելի համարձակ, ավելի լավ օգտագործել երիտասարդ հեռանկարային աշխատողներին:

*Մեր հանրապետությունում տիրում է բարոյաքաղաքական առողջ, գործարար մթնոլորտ, որը նպաստում է կադրերի աճին և ընդունակությունների դրսևորմանը: Նրանց հանդեպ վստահությունը զուգակցվում է խստապահանջության, պահանջկոտության հետ: Իրողություն է, որ երբեմն այս երկմիասնական սկզբունքը խախտվում է: Կյանքը վկայում է, որ թերություններն ու սխալները, զանազան կարգի չարաշահումները տեղ են գտնում հենց կադրերի աշխատանքի նկատմամբ պատշաճ վերահսկողության բացակայության հետևանքով:*

*Աշխատավորների հետ կուսակցության կապերի ամրապնդումը, սովետական դեմոկրատիայի զարգացման հուսալի միջոցը, եղած թերությունների բացահայտման և վերացման կարևոր գործոնը եղել և մնում է գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական ակտիվ գործունեությունը: Արդի պայմաններում այդ բնագավառի խնդիրները համակողմանիորեն և խորապես վերլուծվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան և 1985 թվականի ապրիլյան պլենումներում, բազմիցս քննարկվել են Կենտրոնական կոմիտեում: Անցած տարվա հոկտեմբերին ՍՄԿԿ Կենտկոմը որոշում ընդունեց Հայաստանի հանրապետական կուսկազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին: Հետևողականորեն կենսագործելով այդ պատմական փաստաթղթի դրույթները, կատարելագործելով գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքը, այն շաղկապելով ժողովրդատնտեսական հանգուցային խնդիրների լուծման հետ՝ հանրապետության կուսկազմակերպությունները պետք է հասնեն աշխատավորների կոմունիստական գաղափարայնության, նրանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության հետագա բարձրացման, հոգևոր կյանքի հարստացման: Կուսակցությունը սկզբունքային, հետևողական պայքար է ծավալել այնպիսի վտանգավոր ու բավականին արմատացած սոցիալական չարիքի դեմ, ինչպիսին են հարբեցողությունն ու ալկոհոլիզմը: Այդ պայքարը դրվել է համապետական, համակուսակցական, համաժողովրդական խնդրի մակարդակի վրա: Ինչպես ասաց ընկեր Ե. Կ. Լիգաչովը Երևանում,— խոսքն ամենևին էլ այն մասին չէ, որ մարդկանց մի մասին կուլտուրական խմել սովորեցվի: Ո՛չ, խոսքը շատ ավելի բարդ խնդրի մասին է՝ մարդկանց սովորեցնել առհասարակ սպիրտային խմիչք չօգտագործել: Դժվարին աշխատանք է սպասվում, բայց կուսակցությունը ետ չի կանգնի, մինչև որ չլուծի այս խնդիրը: Միևնույն ժամանակ նա նշեց. «Հասկանում եմ, որ որոշակի յուրօրինակություն կա ձեր հանրապետությունում այս հարցի դրվածքի մեջ: Ինչ արած, ուրեմն պետք է ավելի շատ շեշտը դնել սննդարար հյութերի և ոչ ոգելից ըմպելիքների արտադրության վրա, մարդկանց ավելի շատ մատակարարել սեղանի խաղող, արևավառ Հայաստանի հողի մյուս բարիքները: Ժամանակներն ուրիշ են, պահանջները՝ նոր»:*

*Համընտրական կամպանիայի կարևոր խնդիրն է սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և մեր քաղաքական սիստեմի մյուս օղակների, սովետական դեմոկրատիայի զարգացման ամբողջ աշխատանքի կուսակցական ղեկավարման հետագա ուժեղացումը:*

*Հարկ է միշտ հիշել լենինյան այն դրույթը, որ սոցիալիստական դեմոկրատիան չի կարելի վերացականորեն հասկանալ: Այն եղել ու մնում է էկոնոմիկայի զարգացման, մարդու ակտիվության աճի, մասսաների կոմունիստական դաստիարակության գործիք: Հենց այս ձևով է աշխատում կուսակցությունը՝ խորացնելով սովետական կարգերի դեմոկրատիզմը:*

*ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարների նախապատրաստությունը, աշխատավորների կողմից կուսակցական փաստաթղթերի նախագծերի առաջիկա քննարկումը, անտարակույս, կխթանեն սովետական մարդկանց, հանրապետության աշխատավորների ակտիվությունը: Կուսակցական կոմիտեները պետք է ապահովեն իրենց գործունեության հրապարակայնությունը, հոգան այն մասին, թե ինչպիսի ուշադրություն է նվիրվում հասարակական կարծիքին, քաղաքացիների քննադատական դիտողություններին, դիմումներին ու*



*նամակներին: Կուսակցությունը դա համարում է հարազատ պետության գործերով սովետական մարդկանց շահագրգռության վառ դրսևորում:*

*Հանրապետության աշխատավորները, երևանցիները շնորհակալության և երախտագիտության խոր զգացումով ընդունեցին «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը: Դա մեր ժողովրդի բարօրության, Սովետական Հայաստանի, նրա մայրաքաղաքի բարգավաճման նկատմամբ լենինյան կուսակցության մշտական հոգատարության ևս մի վառ դրսևորումն է:*

*Հանրապետության աշխատավորների, երևանցիների համար առանձնահատուկ օր էր հունիսի 1-ը: Այդ օրը հանդիսավոր պայմաններում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար ընկեր Ե. Կ. Լիգաչովը Երևանին հանձնեց Լենինի շքանշանը, որին հանրապետության մայրաքաղաքը արժանացել է հեղափոխական շարժման մեջ ունեցած ծառայությունների, Հայաստանում սովետական իշխանության հաստատման ու ամրապնդման գործում խաղացած դերի, Հայրենական մեծ պատերազմում ֆաշիստական զավթիչների դեմ նվաճված հաղթանակում նրա մեծ ավանդի, տնտեսական ու մշակութային շինարարության ասպարեզում քաղաքի աշխատավորների ձեռք բերած հաջողությունների համար:*

*Իր բովանդակալից ճառում ընկեր Ե. Կ. Լիգաչովը դրվատանքի շատ խոսքեր ասաց մեր ժողովրդի, կուսակցական կազմակերպության, Սովետական Հայաստանի և նրա մայրաքաղաքի հասցեին, առաջադրվեցին կոնկրետ խնդիրներ, ինչպես նաև արվեցին քննադատական դիտողություններ, հայտնվեցին ցանկություններ, տրվեցին մեր կենսագործունեության տարբեր կողմերին վերաբերող խորհուրդներ ու հանձնարարականներ:*

*Իր ելույթում ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Երևանցիները, Սովետական Հայաստանի աշխատավորները, ամբողջ ժողովուրդը, հարազատ կոմունիստական կուսակցության շուրջն է՛լ ավելի համախմբված, ի պատասխան բարձր պարգևի, առավել ակտիվորեն ու անձնվիրաբար կաշխատեն հանուն կուսակցության հոյակապ կանխագծումների կենսագործման, հանուն կոմունիզմի իդեալների հաղթանակի»:*

*Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները, ոգեշնչված Հայրենիքի բարձր պարգևով, է՛լ ավելի համառորեն, ավելի մեծ եռանդով կպայքարեն կոմունիստական արարման ճանապարհին նոր, բարձր բնագծերի հասնելու համար, ըստ արժանվույն կդիմավորեն Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXVII համագումարը:*

# ՍՄԿԿ ՂԵԿԱՎԱՐ ԴԵՐԻ ԱՃԸ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

**Հ. ՄԱԿԻՆՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու, դոցենտ

*ՍՄԿԿ-ն ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ղեկավար և ուղղություն տվող ուժն է: Դա օրենսդրորեն վավերացված է ՍՍՀՄ սահմանադրության 6-րդ հոդվածում, ուր նշված է. «Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը, նրա քաղաքական սիստեմի, պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է: ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին»:*

*Կուսակցության ղեկավար դերի աճը որպես հասուն սոցիալիստական հասարակության օրինաչափություն, հանդես է գալիս նաև ազգերի ու ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում: Ազգային հարաբերությունների ղեկավարումը կուսակցությունը դիտում է որպես սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման բաղկացուցիչ մասը: Կոմունիստական շինարարության հիմնական խնդիրների լուծումը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը և վերափոխումը կոմունիստականի, նոր մարդու դաստիարակումը, անխզելիորեն կապված են ազգերի և ազգությունների հետագա ծաղկման ու մերձեցման հետ:*

*Ազգային հարցի լուծման և ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում կոմունիստական կուսակցության գործունեության համար բնորոշ է կոնկրետ պատմական մոտեցումը: Սոցիալիզմի կառուցման տարբեր փուլերում կուսակցությունն առաջնահերթ է համարել ազգային հարաբերությունների զարգացման այս կամ այն խնդիրը: Սովետական իշխանության առաջին տարիներին կոմունիստական կուսակցությունն իր տնտեսական ու սոցիալական քաղաքականությունը վարել է այնպես, որ Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերը հնարավորին չափ արագ բարձրացվեին կենտրոնի զարգացման մակարդակին: Այդ կուրսի իրականացումը հնարավոր էր միայն այն դեպքում, եթե երկրի առավել զարգացած շրջաններր համակողմանիորեն օգնեին անցյալում ճնշված ազգերին ու ազգություններին: Ազգային ծայրամասերի հետամնացության վերացման գործում մեծ դեր խաղացին երկրի բոլոր ազգերի սերտ համագործակցությունը և, ամենից առաջ, ռուս ժողովրդի անշահախնդիր օգնությունը:*

*Կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականությունը գիտականորեն հիմնավորված սիստեմ է, որը սոցիալիստական շինարարության պրոցեսում կենսագործվում է՝ հաշվի առնելով ազգերի ու ազգությունների, ողջ սովետական ժողովրդի շահերը:*



*Բազմազգ սոցիալիստական պետության վաթսունութ տարվա վիթխարի փորձը հիմնովին ապացուցում է, որ ազգային հարցի լուծումը, ժողովուրդների ազգային շահերի ու զգացմունքների նկատմամբ մեծագույն ուշադրությունը, բուրժուական նացիոնալիզմի, շովինիզմի և ազգային նիհիլիզմի բոլոր դրսևորումների դեմ անհաշտ պայքարը, ՍՍՀՄ ժողովուրդների միասնության անընդհատ ամրապնդումը, աշխատավորներին ինտերնացիոնալիզմի ու հայրենասիրության ոգով դաստիարակումը, ազգային հարաբերությունների բոլոր բնագավառներում ծագած պրոբլեմների լուծումը կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի պերճախոս վկայությունն են: Այդուհանդերձ անցյալից մեզ ժառանգություն մնացած ազգային հարցի լուծումը բնավ էլ չի նշանակում, թե այդ հարցն ընդհանրապես հանված է օրակարգից:*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան և 1984 թվականի ապրիլյան պլենումներն արձանագրեցին, որ լավ կշռադատված, գիտականորեն հիմնավորված ազգային քաղաքականությունը զարգացած սոցիալիզմի կատարելագործման կուսակցության գործունեության անբաժանելի մասն է: Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի մարտյան և ապրիլյան պլենումները սովետական մարդկանց աշխատանքային և սոցիալական ակտիվության բարձրացումը, կարգապահության ամրապնդումը, հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի դաստիարակումը համարեցին գաղափարախոսական գործունեության կարևոր խնդիրները:*

*Օրեցօր աճում և ամրապնդվում է ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունն ու եղբայրությունը՝ երկրի հզորության գլխավոր աղբյուրներից մեկը: Կուսակցությունը նոր պայմաններին համապատասխան ստեղծագործաբար զարգացնելով ազգերի ու ազգային հարաբերությունների մասին մարքս-լենինյան ուսմունքը, ընդհանրացնում է սովետական պետության ազգային քաղաքականության կենսագործման վիթխարի փորձը:*

*Հասուն սոցիալիզմի պայմաններում կոմունիստական կուսակցության ղեկավար դերի աճը պայմանավորված է հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ազգերի ու ազգությունների զարգացման պահանջմունքներով: Տնտեսական կյանքի բնագավառում կուսակցությունը շարունակում է վարել սովետական հանրապետությունների տնտեսության համակողմանի զարգացման քաղաքականություն: Դա նշանակում է, որ միասնական պետության շրջանակներում ավելի ու ավելի է մեծացվում յուրաքանչյուր հանրապետության նյութական ու հոգևոր պոտենցիալը և դրա հետ մեկտեղ այն առավելագույն կերպով օգտագործվում է ամբողջ երկրի ներդաշնակ զարգացման համար:*

*Արդ ակներև են հասարակության սոցիալական միատարրության ուժեղացումը, սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության, գաղափարաքաղաքական միասնության ամրապնդումը, ՍՍՀՄ-ի ըստ ամենայնի ուժեղացումը, երկրի ժողովուրդների ազգային պետականության բոլոր ձևերի զարգացումը և կատարելագործումը:*

*Հոգևոր մշակույթի բնագավառում կուսակցությունն ապահովում է ժողովուրդների ազգային կյանքի զարգացումը, նրանց կուլտուրաների բազմակողմանի ծաղկումը և մերձեցումը, ազգային լեզուների ազատ զարգացումը, ինչպես նաև ազգամիջյան հաղորդակցման կարևորագույն միջոցի՝ ռուսաց լեզվի խոր ուսուցումը: Աշխատավորներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու վեհ զգացումով դաստիարակելը ՍՄԿԿ-ն համարում է իր սրբազան պարտքը: Կուսակցությունն անհաշտ պայքար է մղում ազգային սահմանափակության, բացառիկության, անցյալի իդեալականացման, ժողովուրդների պատմության մեջ սոցիալական հակասությունների սքողման միտումների այն սովորույթների և բարքերի դեմ, որոնք խանգարում են կոմունիստական շինարարությանը: Կուսակցության առաջնահերթ խնդիրներից է մյուս սոցիալիստական երկրների ու ժողովուրդների հետ սովետական ժողովրդի առավել սերտ համախմբումն ու բարեկամության ամրապնդումը, նրանց քաղաքական,*

տնտեսական, գաղափարական ու կուլտուրական կապերի բազմակողմանի ընդլայնումը:

Ինչպես նշված է ՌՍԴԲԿ երկրորդ համագումարի 80-ամյակի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, ՍՄԿԿ-ն «Ուժուռն տարում հեղափոխական մարքսիստների ոչ մեծ կազմակերպությունից վերածվել է հզոր ու համախմբված կուսակցության, որն իր շարքերում այժմ ունի ավելի քան 18 միլիոն կոմունիստներ: Զարգացած սոցիալիզմի պայմաններում, դառնալով ամբողջ ժողովրդի կուսակցությունը, ՍՄԿԿ-ն չի կորցնում դասակարգային բնույթը և իր էությամբ մնում է բանվոր դասակարգի կուսակցություն: Սովետական հասարակության կյանքում կոմունիստական կուսակցության դերն անշեղորեն աճում է»:

Առաջին բազմազգ սոցիալիստական պետությունը ազգային հարաբերությունների բնագավառում շատ պրոբլեմներ է լուծել: Ժողովուրդների հարաբերությունների գիտական ղեկավարման ասպարեզում կուտակվել է հարուստ փորձ: Սակայն կոմունիստական շինարարության պրոցեսում ազգերի ու ազգությունների տնտեսական ու մշակութային վերելքը, սոցիալ-քաղաքական ու դասակարգային հարաբերություններում կատարված քանակական ու որակական փոփոխությունները պահանջում են ազգային հարաբերությունների գիտական կառավարման շարունակ կատարելագործում:

Կոմունիստական կուսակցությունը, ելնելով սոցիալիստական շինարարության օրինաչափություններից, բոլոր ազգերի ու ազգությունների զարգացման լայն հնարավորություններ ստեղծեց: Սոցիալիստական շինարարության պրոցեսում բոլոր միութենական հանրապետություններն էլ ձեռք բերեցին տնտեսական ու կուլտուրական զարգացման բարձր մակարդակ: Այդ են վկայում վիճակագրական նյութերը: Արդյունաբերական արտադրանքի ծավալի աճի տեմպերը, 1922 թվականի համեմատությամբ, 1982 թվականին ՍՍՀՄ-ում ավելացել են 537 անգամ, ՌՍՖՍՀ-ում՝ 500, Ուկրաինական ՍՍՀ-ում՝ 286, Բելոռուսական ՍՍՀ-ում՝ 730, Ուզբեկական ՍՍՀ-ում՝ 432, Ղազախական ՍՍՀ-ում՝ 938, Վրացական ՍՍՀ-ում՝ 305, Ադրբեջանական ՍՍՀ-ում՝ 145, Լիտվական ՍՍՀ-ում՝ 63, Մոլդավական ՍՍՀ-ում՝ 969, Լատվիական ՍՍՀ-ում՝ 47, Կիրգիզական ՍՍՀ-ում՝ 712, Տաջիկական ՍՍՀ-ում՝ 898, Հայկական ՍՍՀ-ում՝ 1.048, Թուրքմենական ՍՍՀ-ում՝ 209, Էստոնական ՍՍՀ-ում՝ 51 անգամ:

Երկրի տնտեսական պլանները մշակելիս, համապետական շահերը գլխավորը համարելով հանդերձ, կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունն ամենայն ուշադրությամբ հաշվի են առել յուրաքանչյուր ազգի ու ազգության շահերը, յուրաքանչյուր հանրապետության, մարզի, շրջանի տնտեսության զարգացման հնարավորություններն ու հեռանկարները: Կուսակցությունը ելնում է նրանից, որ յուրաքանչյուր ազգային հանրապետության բարգավաճումը պայմանավորված է համապետական նշանակություն ունեցող խնդիրների հաջող իրականացումով, սովետական պետության հզորության անշեղ աճով: Որքան հզոր լինի միութենական պետությունը, այնքան արագ կզարգանան ազգերն ու ազգությունները, միաժամանակ յուրաքանչյուր հանրապետության հաջողություններն ամրապնդում է բազմազգ պետության հզորությունը:

Ազգային հարաբերությունների զարգացման հաջողությունները բխում են ՍՄԿԿ քաղաքականության գիտական հիմնավորվածությունից: Զարգացման ներկա փուլում ազգային հարաբերությունների էությունը բնորոշելիս, կուսակցությունն անհրաժեշտ է համարում մի շարք օբյեկտիվ գործոնների հաշվառումը: Դրանք են. միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի զարգացումը, հասարակության սոցիալական միատարրության ուժեղացումը և նրա քաղաքական ու հոգևոր միասնության ամրապնդումը, ազգային հարաբերությունների զարգացման վրա գիտատեխնիկական հեղափոխության ազդեցության ուժեղացումը, բանվոր դասակարգի առաջատար դերի անընդհատ աճը, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ամրապնդումը, սոցիալիստական ընկերակցության երկրների ինտերնացիոնալ ընդհանրության մեծացումը: Այս



ամենը, անշուշտ, կապված է հասուն սոցիալիզմի հասարակական կյանքի բոլոր բնագավառների ինտերնացիոնալացման պրոցեսների ուժեղացման հետ:

Հիրավի, որքան ինտենսիվորեն ընթանա յուրաքանչյուր սովետական հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացումը, այնքան ավելի կարագանա մեր ամբողջ կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսը: Ինտերնացիոնալացման ոլորտի ընդլայնումը պայմանավորված է զարգացած սոցիալիզմի բնույթով, սոցիալիստական հասարակարգի տնտեսական և հոգևոր բնագավառներում այդ օբյեկտիվ պրոցեսների խորացմամբ:

Ազգային հարաբերությունների գիտական ղեկավարման պրոցեսում ՍՄԿԿ-ն հաշվի է առնում այն հանգամանքը, որ ներկայումս սոցիալիստական ինտերնացիոնալացումը ինտենսիվորեն զարգանում է ամենից առաջ ազգերի ու ազգությունների կյանքի նյութական բնագավառում: Նա խորացնում է աշխատանքի հասարակական բաժանումը, ապահովում միութենական հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակների հավասարեցումը, նպաստում նրանց նյութատեխնիկական միջոցների, բնական ու աշխատանքային ռեսուրսների, գիտության ու տեխնիկայի նվաճումների միավորմանը:

Գիտատեխնիկական հեղափոխությունն ավելի բազմապիսի է դարձնում տարբեր ազգությունների մարդկանց միջև հաղորդակցման ձևերը, ժողովուրդների միջև նյութական ու հոգևոր արժեքների փոխանակումը: Դրա շնորհիվ մշտապես ամրապնդվում է սովետական հասարակության սոցիալական և ինտերնացիոնալ միասնությունը:

Արդի պայմաններում կուսակցությունը կարևոր խնդիր է համարում բազմազգ սովետական հասարակության բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցումը, խթանում բանվոր դասակարգի գաղափարական հասունության, սոցիալական ակտիվության բարձրացումը: 1985 թվականի մարտյան պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Կուսակցությունը հենց այն ուժն է, որն ի վիճակի է հաշվի առնել երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների շահերը, նրանց ի մի համախմբել, ժողովրդի եռանդը մոբիլիզացնել կոմունիստական արարման ընդհանուր գործի համար»:

Կուսակցության լենինյան ազգային քաղաքականության կենսագործումը օրգանապես կապված է բազմազգ սովետական հանրապետությունների կոլտնտեսային գյուղացիության սոցիալական կերպարի, նրա կուլտուրայի, կյանքում կատարվող խոր փոփոխությունների հետ: Պարենային պրոբլեմի լուծումը, գյուղատնտեսական արտադրության, հողագործության և անասնապահության կուլտուրայի համակողմանի վերելքը տնտեսական ու քաղաքական կարևորագույն խնդիրներ են:

Ընդհանրացնելով վերջին տասնամյակներում սովետական հասարակության բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի մերձեցման ասպարեզում ձեռք բերված հաջողությունները և արժեքավորելով այդ փորձը, կուսակցության XXVI համագումարը հանգեց այն եզրակացության, որ «...հասարակության անդասակարգ կառուցվածքի կազմավորումը գլխավորապես և հիմնականում տեղի կունենա հասուն սոցիալիզմի պատմական շրջանակներում» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 86): Գիտական այս կարևոր կանխատեսումն անմիջականորեն առնչված է ազգային հարաբերությունների զարգացման օրինաչափությունների հետ:

Հայտնի է, որ ազգերի մերձեցումը չի հանգեցնում ազգային պրոցեսների թուլացմանը: Կուսակցությունը ազգային հարաբերությունների կառավարման պրոցեսում խստիվ կերպով հետևում է, որպեսզի ազգերի մերձեցման օբյեկտիվ պրոցեսը արհեստականորեն չարագացվի: Միաժամանակ անթույլատրելի է ազգերի մերձեցման պրոցեսը կասեցնելը: Հարկ է նկատել, որ ազգերի ծաղկման և մերձեցման միտումների հարաբերակցության մեջ առաջատար դերը պատկանում է մերձեցմանը: Այս միտումը բխում է ժողովուրդների տնտեսական, քաղաքական ու հոգևոր կյանքի շարունակ խորացող ինտեր-

նացիոնալացումից: Սոցիալիզմն ապահովում է ազգերի զարգացման այնպիսի բովանդակություն, որը նույնպես տանում է դեպի ազգերի մերձեցում: Սոցիալիզմի պայմաններում ազգային և ինտերնացիոնալ պրոցեսները տարբերվում են դրսևորման ձևով, սակայն իրենց հիմքով սոցիալիստական են:

Սոցիալիստական ազգերի ու ազգությունների ծաղկման և մերձեցման շնորհիվ տեղի է ունենում նրանց ինտերնացիոնալիստական ընդհանուր գծերի ձևավորումը: Տարբեր ազգությունների պատկանող սովետական մարդկանց մեջ ձևավորվել են հոգևոր կերպարի ընդհանուր հատկանիշներ, որոնք հասարակական նոր տիպի հարաբերությունների ծնունդ են և մարմնավորում են ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների լավագույն ավանդույթները:

Բազմազգ պետության պայմաններում սոցիալիստական հասարակական հարաբերությունների բոլոր կողմերի, այդ թվում և ազգային հարաբերությունների, զարգացումը ծնում է մարդկանց պատմական նոր հանրություն: Մեր երկրում այդպիսի հանրություն է սովետական ժողովուրդը: Կոմունիստական կուսակցությունը իրավացիորեն սովետական ժողովրդի՝ որպես պատմական հանրության, առաջացումը գնահատում է որպես սովետական հասարակության կյանքում կատարված բոլոր վերափոխումների հանրագումար, որպես զարգացած սոցիալիզմի հիմնական ցուցանիշներից մեկը:

Վ. Ի. Լենինը կանխատեսում էր մարդկանց պատմական հանրությունների առաջացումը սոցիալիզմի ժամանակ: Նա գրել է, որ սոցիալիզմը «ստեղծում է մարդկային համակեցության նոր, բարձրագույն ձևեր, երբ ամեն մի ազգության աշխատավոր մասսաների օրինական պահանջմունքներն ու առաջադիմական ձգտումներն առաջին անգամ կբավարարվեն ինտերնացիոնալ միասնության մեջ, այժմյան ազգային միջնորմները ոչնչացնելու պայմանով» (ԵԼԺ, հ. 26, էջ 44—45):

ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը ազգային հարաբերությունների գիտական ղեկավարման պրոցեսում հաշվի են առնում կուսկազմակերպությունների բազմազգության անընդհատ աճը: ՍՄԿԿ-ի շարքերում ներկայումս կան 130 ազգությունների ներկայացուցիչներ: Զարգացած սոցիալիզմի պայմաններում անընդհատ ուժեղանում է հանրապետությունների կուսկազմակերպությունների բազմազգությունը: Այսպես, Ռուսաստանյան Ֆեդերացիայի և Ուկրաինայի կուսակցական կազմակերպություններն իրենց շարքերում ընդգրկում են հարյուր ազգությունների կոմունիստներ, Ղազախստանինը՝ 94, Վրաստանինը՝ 90, Ուզբեկստանինը՝ 84, Բելոռուսիայինը՝ 82, Կիրգիզիայինը՝ 73, Ադրբեջանինը՝ ավելի քան 70, Թուրքմենիայինը՝ 68, Էստոնիայինը՝ 66, Մոլդավիայինը՝ 63, Լիտվայինը՝ 59, Հայաստանինը՝ ավելի քան 40: Բազմազգ են նաև ինքնավար հանրապետությունների կուսկազմակերպությունները:

Կուսակցությունն իր շարքերի կազմով, կառուցվածքի ու գործունեության սկզբունքներով, ծրագրով ու քաղաքականությամբ պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության և եղբայրության գաղափարների կենդանի մարմնավորումն է: Կուսակցության կազմի և ներքին կյանքի, նրա գործունեության ինտերնացիոնալ բնույթը հնարավորություն է ընձեռում իրականացնելու ազգերի և ազգային հարաբերությունների զարգացման իսկական գիտական ղեկավարումը:

Ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում անընդհատ մեծանում են այնպիսի խնդիրների հետագա զարգացման անհրաժեշտությունը, ինչպիսին են. ինտերնացիոնալ և ազգային գործոնների ներդաշնակ զուգակցման անհրաժեշտությունը, ժողովուրդների եղբայրության և բարեկամության տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր հիմքերի ամրապնդումը, բազմազգ պետության և յուրաքանչյուր հանրապետության նյութական ու հոգևոր պոտենցիալի ուժեղացումը, աշխատավորներին ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակության ձևերի ու մեթոդների կատարելագործումը:

Մեր երկրի յուրաքանչյուր ազգի ու ազգության համակողմանի դինամիկ առաջադիմությունը օրինաչափորեն ուղեկցվում է նրանց ազգային ինքնա-



գիտակցության վերելքով: Սակայն «ազգայինը» չի դառնում «ազգայնական», ազգային հպարտությունը չի վերածվում ազգային սնապարծության:

Երևան քաղաքին Լենինի շքանշանի հանձնմանը նվիրված հանդիսավոր նիստում ընկեր Ե. Կ. Լիգաչովը նշեց. «Մեր երկրում իրականացել է մարդկության առաջավոր մտածողների բազմադարյան երազանքը. այնտեղ բնակվող բոլոր ժողովուրդները դարձել են եղբայր ժողովուրդներ: Ստեղծված է մի հասարակություն, որտեղ ապահովվում է համապետական շահերի և հանրապետությունների յուրաքանչյուրի շահերի իրոք ներդաշնակ զուգակցումը, բոլոր ազգերի ու ազգությունների ծաղկումը»:

Կոմունիստական կուսակցությունը հաշվի է առնում նաև, որ զարգացման արդի փուլում ազգային հարաբերություններում ուշագրավ երևույթ է դարձել բնակչության ուժեղացող միգրացիան, որը կապված է հանրապետությունների հասարակական արտադրության վերելքի, տնտեսական ու գիտատեխնիկական պոտենցիալի աճի, ընդհանուր միութենական նշանակություն ունեցող խոշոր շինարարական աշխատանքների իրականացման հետ: Միգրացիան նպաստում է կյանքի բոլոր կողմերի ինտերնացիոնալացմանը, մեծացնում է հանրապետությունների բնակչության բազմազգությունը: Ելնելով այդ իրողությունից՝ ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց կուսակցական ու պետական մարմիններում ապահովել բոլոր ազգերի ու ազգությունների պատշաճ ներկայացուցչությունը, խստիվ հաշվի առնելով կադրերի գործնական ու գաղափարաբարոյական հատկությունները: Կուսակցությունը սթափ հետևում է, որ ազգային հարաբերությունների ոլորտում ծագած նոր պրոցեսներն ու պրոբլեմները արտացոլում գտնեն կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական մարմինների գործունեության մեջ:

Ազգային հարաբերությունների հետագա զարգացման համար անհրաժեշտ է հետևողական պայքար մղել առանձին մարդկանց շրջանում ազգայնական տրամադրությունները բորբոքելու, ազգային քաղաքականության լենինյան սկզբունքներից ամեն տեսակի շեղումների դեմ:

Կուսակցությունը ազգային հարաբերությունների բնագավառում հաջողությունների է հասնում, քանի որ հենվում է ազգային հարցի մարքս-լենինյան տեսության խոր գիտականության վրա, հասարակության զարգացման օրենքների և օրինաչափությունների իմացության վրա:

Մեր հզոր Միության մեջ բոլոր միութենական հանրապետությունները բազմազգ են: Շարունակ աճում է կուսակցական կազմակերպությունների դերը ազգային հարաբերությունների զարգացման և կատարելագործման գործում: Հայաստանի կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է. «Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսկազմակերպությունները պետք է աշխատավորների մեջ հետևողականորեն ձևավորեն մարքս-լենինյան աշխարհայացք, դասակարգային մոտեցում հասարակական երևույթների նկատմամբ, քաղաքական բարձր զգոնություն, նրանց դաստիարակեն սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական անխախտ բարեկամության ոգով: Ղեկավար կադրերին ընտրելիս և տեղաբաշխելիս ավելի լրիվ հաշվի առնել բնակչության ազգային կազմը»:

Այս ամենը վկայում է, որ բազմազգ միասնական պետության մեջ ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում կոմունիստական կուսակցության դերի աճը օբյեկտիվ անհրաժեշտություն է և բխում է զարգացած սոցիալիզմի էությունից, նրա զարգացման օրինաչափություններից: Ազգային հարաբերությունների կուսակցական ղեկավարումը բխում է կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրներից:

# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ ԵՎ ԻՆԺԵՆԵՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

Հր. ԱԶԱՐՅԱՆ

*ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ որակական տեղաշարժերը, էկոնոմիկան ինտենսիվ աճի ռելսերի վրա փոխադրելը և արտադրության արդյունավետության համակողմանի բարձրացումը ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում համարվեցին արդի փուլում մեր երկրի էկոնոմիկայի զարգացման հիմնական ուղղությունները։*

*Հայրենական մեծ պատերազմի վետերանների հետ ՍՄԿԿ Կենտկոմում ունեցած հանդիպման ժամանակ ընկեր Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ սովետական սոցիալիստական հասարակությունը գտնվում է կյանքի բոլոր բնագավառներում որակական տեղաշարժերի շեմին։ Նոր հնգամյակում լայն մասշտաբներով կիրականացվեն արդյունաբերության տեխնիկական բազայի նորացում, ամենաառաջավոր տեխնոլոգիաների յուրացում, նոր, արդյունավետ տնտեսական մեխանիզմի փորձարկում և ներդրում։*

*Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը փոխշաղկապված միջոցառումների բարդ կոմպլեքս է, որտեղ իր առանձնահատուկ տեղն ունի կազմակերպական-տնտեսական մեխանիզմի կատարելագործումը։ Իսկ այդ խնդրի հաջող լուծումը պահանջում է իր մեջ ներառնել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերը, կառավարման բոլոր օղակները։*

*Հայտնի է, որ արդյունաբերական ձեռնարկությունը բաղկացած է բազմաթիվ, բայց միմյանց հետ սերտորեն շաղկապված արտադրական, տնտեսական և տեխնիկական օղակներից։ Ընդ որում դրանցից յուրաքանչյուրը սոցիալ-տնտեսական մի օղակ է, որն անընդհատ բարդանում է, զարգանում, հագեցվում նոր տեխնիկայով ու նորագույն տեխնոլոգիայով, փոփոխվում են առանձին օղակների միջև արտադրատնտեսական փոխհարաբերությունները։*

*Այդ ամենը պահանջում են կատարելագործել ձեռնարկության տնտեսական մեխանիզմն ընդհանրապես և դրա կառավարման բարելավումն ինժեներական աշխատանքների ավտոմատացման պայմաններում՝ մասնավորապես։*

*Կազմակերպական-տնտեսական մեխանիզմի կառավարումը հասարակության զարգացման տվյալ պայմաններում տնտեսական օրենքների ու օրինաչափությունների գործողությունն է, որը դրսևորվում է նաև ինժեներական աշխատանքների ավտոմատացման համակարգի առանձին տարրերի տնտեսական հարաբերությունների կոնկրետ ձևերով։*

*Տնտեսական մեխանիզմի կառավարման ասպարեզում ձեռնարկության ինժեներատեխնիկական աշխատանքի կատարելագործումը տեխնիկական առաջընթացի կարևոր բաղկացուցիչներից է։ Այդ պրոցեսը ենթադրում է նախ և առաջ ինժեներական աշխատանքների ավտոմատացում, որի պայմաններում առավել հստակորեն է դրսևորվում յուրաքանչյուր մասնագետի աշխատանքային ներդրումը, այսինքն՝ աշխատանքի քանակը և որակը։ Այս գործում կարևորվում են ինժեներատեխնիկական աշխատանքների յուրահատկությունը, արտադրական ծառայությունների կառուցվածքը, դրանց տարբեր օղակներում տնտհաշվարկի տարրերի ներդրումը, տեխնիկական միջոցների ռացիոնալ օգտագործումը, արտադրության կազմակերպական-տեխնիկական և նյութական նախապատրաստության աստիճանը, ինժեներական աշխատանքի բաժանման և կոոպերացման ձևը, արտադրանքի նոր նմուշների մշակման, արտադրության համար տնտեսական խրախուսման մեխանիզմի կատարելագործումն ու նյութական շահագրգռությունը։*



*Վերոհիշյալ գործոններն ունեն որոշակի կապեր և համապատասխանաբար երևան են գալիս ինժեներական աշխատանքների ավտոմատացման պայմաններում։ Դրանք առավել արդյունավետ կերպով են արտահայտվում այն դեպքում, երբ ճիշտ են զուգորդվում ամբողջ ժողովրդական տնտեսության, ձեռնարկությունների և առանձին աշխատողների նյութական ու տնտեսական շահերը։*

*Սակայն ինժեներական աշխատանքների ավտոմատացումը պայմանավորվում է տեխնիկական-կազմակերպական մի շարք խնդիրների լուծմամբ։ Դա նախ և առաջ վերաբերում է նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման ծախսերի հետ կապված հարցերին, որոնց լուծումը լրջորեն անդրադառնում է տեխնիկական առաջընթացի տեմպերի վրա։ Այսպես, օրինակ, մի կողմից իջնում է նոր տեխնիկայի գինը, որը, ինչ խոսք, որոշակիորեն նվազեցնում է ձեռնարկության շահույթի գումարը։ Միաժամանակ ժամանակավոր բարձր գների սահմանումը ձեռնարկությանը տալիս է մեծ եկամուտներ, որի հաշվին հատուցվում են նոր տեխնիկայի ստեղծման ու իրացման ծախսերը։ Հետագա շահագործման ընթացքում առաջանում են լրացուցիչ ծախսեր, որոնք թուլացնում են նոր տեխնիկայի ստեղծման և այն արտադրության մեջ ներդնելու տնտհաշվարկային շահագրգռվածությունը։*

*Նոր տեխնիկայի համար նախատեսված խրախուսման միջոցների օգտագործման նշված պրոբլեմների լուծմամբ կուժեղանա այդ ֆոնդերի ներգործունությունը ոչ միայն ավտոմատացման նախագծման, փաստաթղթերի նախագծակոնստրուկտորական փորձարկումների ու ճշտումների, այլ նաև արտադրանքի իրացման ամբողջ ժամանակաընթացքում՝ ապահովելով նոր տեխնիկայի նախապատրաստման ծախսերի և այն իրացնելու հետևանքով ձեռնարկության կրած վնասների փոխհատուցումը։ Այստեղից էլ՝ նոր տեխնիկայի համար նախատեսված ծախսերի մեջ նախագծողների և ներդնողների համար սահմանված հավելավճարի չափի մեծացման անհրաժեշտությունը։*

*Այժմ վերանայվում է արտադրության գիտատեխնիկական նախապատրաստման ընդհանուր աշխատանքների շրջանակներում գիտահետազոտական աշխատանքների (ԳՀԱ) և փորձնական կոնստրուկտորական աշխատանքների (ՓԿԱ) կազմակերպման, պլանավորման և ֆինանսավորման սիստեմը, որը պետք է հիմնվի անընդհատության սկզբունքի վրա՝ հետազոտական փուլից մինչև արտադրության մեջ մշակումների ներդրումը։ Այդպիսի վերակառուցումը դրականորեն կներգործի արտադրության գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա։*

*Սակայն գիտահետազոտական և փորձնակոնստրուկտորական աշխատանքների անընդհատությունը ինժեներական աշխատանքների ավտոմատացման պայմաններում կարող է ապահովվել ճյուղային կառուցվածքում գիտության ու տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդերի միջոցով, որի աղբյուրը արտադրական ճյուղերի կամ ձեռնարկությունների պլանային օգուտների նորմատիվային մասհանումներն են։*

*Կարևոր նշանակություն ունի ինժեներական աշխատանքի ավտոմատացման նորմատիվների հիմնավորումը, մինչդեռ ինժեներատեխնիկական աշխատանքի քանակի և որակի չափման ու գնահատման հարցերն առայժմ լիովին լուծված չեն։ Այս խնդիրն ամբողջ սրությամբ առաջադրվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում։ Ընկեր Մ. Ս. Գորբաչովը ուղղակիորեն նշեց, «որ չի կարելի նորմալ համարել ինժեների աշխատանքի վարկի իջեցումը։ Այստեղ ամեն ինչ չէ, որ կարգին է, և մենք պետք է բարձրացնենք վարպետների, ինժեներների, կոնստրուկտորների, տեխնոլոգների դերն ու հեղինակու-*



4. «Լենինյան ուղիով», № 7

թյունը, մեծացնենք նրանց աշխատանքի նյութական ու բարոյական խթանները»։

Հայտնի է, որ որակավորված աշխատանքը ստեղծում է համեմատաբար բարձր արժեք։ Այստեղից հետևում է, որ որակավորման մակարդակը կարելի է որոշել կատարվող աշխատանքի բարդության աստիճանով։ Իրոք, որքան բարդ է աշխատանքը, այնքան բանվորի որակավորումը բարձր է, այնքան նրան բարձր որակավորման կարգ է տրվում։ Սակայն ինժեների աշխատանքը հնարավոր չէ չափել նրա ստեղծած արդյունքների բարդության հիման վրա։ Նրա աշխատանքն արտահայտվում է տվյալ կոլեկտիվի՝ բրիգադի, տեղամասի, հերթափոխի, արտադրամասի, գործարանի աշխատանքների ընդհանուր արդյունքում։

Ինժեներատեխնիկական աշխատողների որակավորման և նրանց աշխատանքի որակի աստիճանի սահմանման, այդ ոլորտի աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման պահանջները թելադրում են որակավորման հատուկ կարգի մշակման անհրաժեշտություն։ Այդպիսի կարգի ստեղծումը հնարավորություն կտա որոշելու ինժեներատեխնիկական աշխատողների որակավորման նկատմամբ օբյեկտիվ պահանջները և նպատակահարմար բաշխելու պարտականությունները նրանց միջև։ Այսպիսով կչեշտվի ինժեներական աշխատանքի կախվածությունը աշխատանքի որակից ու մասնագետների որակավորման մակարդակից։

Նման մոտեցման դեպքում ինժեներական աշխատանքների ավտոմատացումը պետք է չերտավորված լինի՝ հաշվի առնելով հատկապես նախագծվող օբյեկտի կարևորությունը և նրա ժողովրդատնտեսական արդյունավետությունը։ Այս կարգի ներդրման համար, անշուշտ, կպահանջվի նոր տեխնիկայի յուրացման ծախսերի զգալի մասը, սակայն այն կբարձրացնի տեխնիկական ծառայությունների շահագրգռվածությունը նախագծային-կոնստրուկտորական փաստաթղթերի որակի բարելավման հարցում։ Դրա շնորհիվ կկատարելագործվի ձեռնարկությունների, ինժեներատեխնիկական աշխատողների հավելավճարի սիստեմը, նկատի ունենալով դրա հաշվարկումը ոչ թե ըստ ձեռնարկության աշխատանքի ընդհանուր արդյունքի, այլ ավտոմատացված համակարգի պայմաններում ինժեներատեխնիկական աշխատողների գործունեության կոնկրետ ցուցանիշների։

Ինժեներական աշխատանքների ավտոմատացումը առաջին պլան է մղում նյութական շահագրգռվածության դերի բարձրացման խնդիրը, որի լուծումը հնարավորություն կստեղծի վերացնելու գիտատեխնիկական առաջընթացի ներդրման գործում առաջացող մի շարք հակասություններ։ Հետազոտությունները ցույց են տալիս, որ ձեռնարկությունների տեխնիկական ծառայություններում գործող տնտհաշվարկը լիովին չի արտացոլում ինժեներական աշխատանքների ավտոմատացման պայմաններում առաջացող տնտեսական մեխանիզմի յուրահատուկ առանձնահատկությունները։ Այսպես, նոր տեխնիկայի համար սահմանված խրախուսման ձևերը հնարավոր չէ լիովին օգտագործել նախագծման և ներդրման բոլոր փուլերում։

Հիշատակված խրախուսման սիստեմը լրիվ հաշվի չի առնում հեռանկարային արդյունավետությունը, որը ձեռք է բերվում ինժեներական աշխատանքների ավտոմատացման ներդրման հաշվին։ Այսպիսով, ինժեներական աշխատանքների ավտոմատացումն առաջադրում է տեխնիկական ծառայությունների տնտհաշվարկի ու նյութական խրախուսման ցուցանիշների մշակման ու ներդրման անհրաժեշտությունը։

Տնտհաշվարկի ցուցանիշների այդպիսի սիստեմը պետք է առաջին հերթին բխի ձեռնարկությունների խնդիրներից և ծառայի այդ խնդիրների իրականացմանը։ Ինժեներական աշխատանքների ավտոմատացման ոլորտում կարևոր նշանակություն ունի արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված բարդ համակարգը, որը բաղկացած է առանձին ենթահամակարգերից։

Արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված համակարգի տնտեսական և կազմակերպական կարևոր հարցերից է մեթոդաբանական սկզբունքների ընտրությունը՝ ելնելով այդ համակարգի ներդրման նպատակահարմարությունից։

Արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված համակարգի տնտեսական արդյունավետությունը որոշվում է յուրաքանչյուր ենթահամակարգի ներդրման ժամանակ ստացվող արդյունքների գումարով, որն ընդգրկում է դրանց և՛ ուղղակի, և՛ անուղղակի ներգործությունն ինչպես արտադրող, այնպես էլ սպառող ձեռնարկությունների ամբողջական արդյունքի վրա՝ հաշվի առնելով լրացուցիչ կապիտալ ներդրումները։

Այստեղ կարևոր պայման են կապիտալ ներդրումների տարաժամկետ ծախսերի չափի և տնտեսական արդյունավետության նորմատիվների սահմանումը։ Արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված համակարգի կիրառմամբ տնտեսական արդյունավետությունը ևս տրոհվում է ընդհանուր (բացարձակ) և համեմատական արդյունավետության։ Արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված համակարգի ընդհանուր տնտեսական արդյունավետությունը լրացուցիչ կապիտալ ներդրումներից ստացված տնտեսական արդյունքների գումարն է։ Այդպիսի ցուցանիշներից կարելի է օգտվել արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված համակարգի մշակման ու ներդրման հետ կապված կապիտալ ներդրումները կիրառելիս։

Ինժեներական աշխատանքի տնտեսական արդյունավետության գնահատման առկա մեթոդների ընտրության հարցում կան տարակարծություններ։ Դրանք դրսևորվում են, ամենից առաջ, ինժեներական աշխատանքի արդյունավետության չափանիշի բացարձակ և համեմատական հաշվարկման, կապիտալ ներդրումների և այդ ներդրումներից ստացված արդյունքների գնահատման, դրանց ժամանակի գործոնների հաշվառման հարցերում։

Տ. Ս. Խաչատուրովը դեռևս իր Կապիտալ ներդրումների տնտեսական արդյունավետությունը (Մոսկվա, «Էկոնոմիկա», 1964 թ.) մենագրության մեջ հիմնավորել է տնտեսական արդյունավետության բացարձակ (ընդհանուր) և համեմատական արդյունավետության հասկացությունները։ Կապիտալ ներդրումների, այդ թվում և ինժեներական աշխատանքի ավտոմատացման նպատակով, բացարձակ արդյունավետության ցուցանիշը որոշվում է որպես ազգային եկամտի աճի և արտադրական ֆոնդերի մեջ ներդրված յուրաքանչյուր ռուբլու հարաբերություն։ Բացարձակ արդյունավետությունը բնորոշում է առանձին վերցրած կապիտալ ներդրումների և նոր տեխնիկայի փոխհատուցման ընդհանուր մեծությունը։ Ուստի, որքան մեծ է կապիտալ ներդրումների մեկ ռուբլու դիմաց ազգային եկամտի աճը, այնքան բարձր է հասարակական արտադրության արդյունավետությունը։

Տնտեսավարման տեսական ու գործնական հարցերի լուծման մեջ մեծ նշանակություն ունի տնտեսական արդյունավետության համեմատական ցուցանիշը։ Այդ ցուցանիշը նախագծման աշխատանքներում հատկապես կարևորություն է ձեռք բերում մի շարք տեխնիկական տարբերակներից առավել արդյունավետը ընտրելու հարցում։

Ինժեներական աշխատանքում նոր տեխնիկայի և տեխնոլոգիական պրոցեսների ներդրման տարբերակներից առանձնացվում և ներդրման համար ընտրվում է ամենաբարձր արդյունավետության պայմաններն ապահովող տարբերակը։ Այս մեթոդի գիտական ձևակերպումը տվել են պրոֆեսորներ Ա. Պ. Վլադիսկին և Ա. Պ. Բելոուսովը՝ Մեքենաշինության մեջ տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման և մեքենայացման սկզբունքները աշխատությունում (Մոսկվա, «Բարձրագույն դպրոց», 1965 թ.)։ Առավել լավագույն տարբերակի համար պահանջվում են նվազագույն հաշվարկային ծախսեր կամ ժամանակի հաշվարկումով ծախսերի արագ փոխհատուցում, որը ապացուցվում է մեքենաշինության մեջ տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման օրինակով (պրոֆ. Վասդ Լ. Ա.)։

Ավտոմատացված համակարգի տնտեսական արդյունավետությունը ենթադրում է կատարվող ծախսերի առավելագույն կրճատում։ Եթե համակարգը կամ ենթահամակարգը ներդրվում է առանց լրացուցիչ կապիտալ ներդրում-

ների, այդ դեպքում արդյունքի հասկացությունը համընկնում է տնտեսական արդյունավետության հետ։

Ինժեներական աշխատանքի ավտոմատացման տնտեսական արդյունավետության առանձնահատկությունները դրսևորվում են ինչպես նոր տեխնիկայի ու կապիտալ ներդրումների, այնպես էլ բուն ինժեներական աշխատանքի ավտոմատացման պրոբլեմների լուծման բնագավառներում։

Պրակտիկան ցույց է տալիս, որ ինժեներական աշխատանքի ավտոմատացման արդյունքով ստացված տնտեսումը բուն ինժեներական գործունեության ոլորտում աննշան է։ Հաշվի առնելով ժամանակի գործոնը՝ հիմնական տնտեսումը ստացվում է արտադրության մեջ և արտադրանքի շահագործման ոլորտում։

Արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված համակարգի մշակման ու ներդրման հաջողությունն ընդգրկում է ինժեներական աշխատանքները, հիմնական արտադրությունը և ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտները՝ առանձին-առանձին։ Այդպիսի հաջորդական սխեմով կարելի է որոշել ողջ արտադրության մեջ ինժեներական աշխատանքի արդյունավետության ապահովման աղբյուրները։

Սակայն շատ դեպքերում ինժեներական աշխատանքում, նոր տեխնիկայի մշակման ու ներդրման տնտեսական արդյունավետության որոշման ժամանակ հաշվի չեն առնվում ժամանակի գործոնը և կապիտալ ծախսերի տվյալ պահին կատարվող փոփոխության ու ստացված արդյունքի փոխադարձ կապը։ Հայտնի է, որ այդ պարամետրերի բնույթի փոփոխությունը կարող է լինել անընդհատ և ընդհատվող՝ ինչպես կապիտալ ծախսերի, այնպես էլ տնտեսական աղբյուրների բաղկացուցիչների բնագավառում։ Այստեղից հետևում է, որ վերոհիշյալ պարամետրերի վերլուծությունը պետք է հաշվի առնել համեմատական տնտեսական արդյունավետության հաշվարկների ժամանակ։

Համեմատական տնտեսական արդյունավետությունը հաշվարկելիս էական նշանակություն ունի ժամանակի գործոնը՝ կապված օբյեկտի նախագծման տարաժամանակ ծախսերի, սարքավորումների ձեռք բերման և մյուս միջոցառումների հետ։

Ինժեներական աշխատանքի ավտոմատացման համար կարևոր նշանակություն ունեն էլեկտրոնային հաշվիչ մեքենաների (ԷՀՄ) արդյունավետ օգտագործումը և աշխատանքի ծանրաբեռնման աստիճանը, որը հաշվի առնի կատարվող աշխատանքի տեսակը և որակը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ԷՀՄ-երը շատ ձեռնարկություններում ծանրաբեռնված չեն օգտագործվում։ Դրա պատճառն այն է, որ ԷՀՄ-ի ձեռքբերման և ներդրման ժամանակ հաշվի չեն առնվում ձեռնարկության հնարավորությունները դրանք լրիվին ծանրաբեռնելու համար։ Հետևանքը լինում է այն, որ թանկարժեք տեխնիկան մի շարք ձեռնարկություններում կամ պարապուրդ է տալիս, կամ էլ օգտագործվում է տարբեր գիտահետազոտական փորձերի (ալգորիթմների, աշխատանքային ծրագրերի մշակումների, դրանց կարգավորման) համար, այսինքն, ըստ էության այն վերածվում է որակյալ գիտահետազոտական աշխատանքների կատարման միջոցի։ Գործնականում ԷՀՄ-երը, անգամ ամենամեծ ծանրաբեռնվածության դեպքում, աշխատում են իրենց հնարավորություններից ցածր։ Նոր տեխնիկայի և տեխնոլոգիական պրոցեսների մշակման ու ներդրման աշխատանքների արդյունավետությունը պետք է հաշվարկել՝ ելակետ ունենալով նախագծման-կոնստրուկտորական աշխատանքների ավտոմատացման հնարավորությունները։

ԷՀՄ-ի կիրառման համար կարևոր մեթոդական ելակետ է նաև նրա մշակման ու ներդրման ժամանակ կատարվող ընթացիկ ծախսերի մասը։ Ներկայումս չկան որոշակի հանձնարարականներ ինժեներատեխնիկական աշխատողներին վերաբերող նյութական ծախսերի հաշվարկման համար։ Տնտեսական արդյունավետության հաշվարկումներում անտեսվում են ինժեներատեխնիկական աշխատողների ստեղծագործական գործունեության հաշվին ստացված տնտեսումները։ Մեր կարծիքով, տեխնոլոգների և կոնստրուկտորների գործունեության մեջ ստեղծագործական աշխատանքի չափի մեծացումը կարող է



կարևոր դեր խաղալ ինժեներական աշխատանքի արդյունավետության բարձրացման գործում։

Արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված համակարգի ներդրումից ստացված տնտեսումը կարող է դառնալ արտադրության տեխնիկական նախապատրաստման արագացման աղբյուր։ Այս հանգամանքը ևս հաշվի չի առնվում տնտեսական արդյունավետության հաշվարկման մեջ։

Ինչպես արտադրության ավտոմատացված ամբողջ համակարգը, այնպես էլ ենթահամակարգերը ինժեներական աշխատանքների ավտոմատացման տնտեսական մեխանիզմի մեթոդոլոգիայի մշակման հիմքն են։ Նույնը վերաբերում է նաև մշակումների ընդհանրականության, նրանց որակի հաշվին ստացված տնտեսումների մեխանիզմի մեթոդոլոգիային։ Մշակումների ընդհանրականության և որակի ապահովման շնորհիվ հնարավորություն է ստեղծվում դրանց ներդրման ծախսերի մեջ տնտեսել նյութական ու աշխատանքային կզալի ռեսուրսներ։

Որոշակի արդյունք է ստացվում նաև բարոյական մաշվածության համար ծախսերի կրճատման, պատենտավորման ու լիցենզավորման շնորհիվ ստացված օգուտներից։ Այսպես, օրինակ, Կիրովականի «Ավտոմատիկա» գիտաարտադրական միավորումում (ԳԱՄ) տասնմեկերորդ հնգամյակի ընթացքում ինժեներների անարտադրողական աշխատանքի վերացման, կոնստրուկտորական փաստաթղթերի ձևակերպման ծախսերի կրճատման, պլանավորված կազմակերպչական աշխատանքների մշակման ու ներդրման շնորհիվ ինժեներական աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 21,8 տոկոսով։ Միավորումում գիտահետազոտական և կոնստրուկտորական մշակումներում լայնորեն կիրառվում է ԷՀՄ-ը։ Տեխնոլոգիական և կոնստրուկտորական աշխատանքներում, որպես առաջավոր ուղղություն, կիրառվում են նախագծման ավտոմատացված համակարգերը, որոնք միավորում են ինժեներական ավտոմատացված աշխատատեղերը։ Միավորումում մշակված և ներդրված են տիպային աշխատատեղեր, որոնցից օգտվում է տեխնոլոգների արդեն կեսը։

Ինժեներական աշխատանքի ավտոմատացման տնտեսական արդյունավետության շրջանակներում բավարար չափով չեն ուսումնասիրված համապատասխան ճշտված նորմատիվային տվյալները։ Դա պայմանավորված է նաև արտադրության տեխնիկական նախապատրաստման ավտոմատացված համակարգի ոչ բավարար ներդրմամբ։ Տնտեսական արդյունավետության հաշվարկների կիրառման ժամանակ ճշտված նորմատիվային տվյալների առկայությունը էապես կբարձրացնի համեմատական տնտեսական արդյունավետության հաշվարկների որակը։ Համեմատության բազա ընդունվում է ինժեների ձեռքի աշխատանքը։ Ինժեների աշխատանքում հաշվողական տեխնիկայի և կազմակերպական տեխնիկական միջոցների կիրառումն արդեն զգալիորեն կրճատում է ինժեներատեխնիկական աշխատանքների, հատկապես՝ հաշվարկային գործունեության աշխատատարությունը։

Սակայն ինժեներական աշխատանքի ավտոմատացման արդյունավետության որոշումը չի նշանակում միայն ինժեներների մտավոր աշխատանքի կատարման հին տարբերակի համեմատություն աշխատանքի կատարման նոր տարբերակների հետ։

Եթե համեմատման բազան ընդունենք ոչ թե ինժեների աշխատանքի մեքենայացված մակարդակը, այլ նրա ձեռքի աշխատանքը, արհեստականորեն կբարձրանա սպասելիք տնտեսական արդյունավետությունը։ Հետևաբար, համեմատական տնտեսական արդյունավետության բազան պետք է ընդունել ինժեների աշխատանքի առկա մեքենայացումը։ Այժմ միշտ չէ, որ ինժեներատեխնիկական աշխատանքում հաշվի է առնվում մեքենայացման ձեռք բերված մակարդակը, որով մեծապես պայմանավորված է ինժեներատեխնիկական աշխատանքի արտադրողականության փաստացի աճը։

Հայտնի է, օրինակ, որ արտադրական ձեռնարկություններում արտադրանքի 25—30 տոկոսի ունիֆիկացման և ստանդարտացման դեպքում տեխնոլոգիա-

կան պրոցեսների նախագծման աշխատատարությունը կրճատվում է 5—10 տոկոսով։ Եթե համեմատական բազայի համար հաշվի չառնենք ինժեներական աշխատանքի կազմակերպման այս մակարդակի բարձրացման հնարավորությունը, ապա ԷՀՄ-ի կիրառման տնտեսական արդյունավետության չափը արհեստականորեն բարձր կստացվի։

Այսպիսով, համեմատական բազա պետք է ընդունել ինժեներական աշխատանքի կազմակերպման ու մեքենայացման ձեռք բերած մակարդակը։ Այդ մեթոդը ենթադրում է ոչ միայն մեքենայական հաշվարկի, այլ նաև դրա մշակման համար խնդիրների նախապատրաստման, ԷՀՄ տեղեկություններ ներածման և մյուս աշխատանքները։ Միայն այս աշխատանքի համար ծախսված ժամանակը համեմատելով բազային ժամանակի հետ՝ կարող ենք ստույգ որոշել աշխատանքի կատարման արագության աստիճանը։

Հայտնի է, որ տեխնոլոգիական պրոցեսների հաշվարկման համար ծախսված ժամանակն առաջանում է այդ աշխատանքների առանձին փուլերից. տվյալների հավաքման, մշակման և նախապատրաստման, պերֆորացիոն ժապավենին կամ քարտերին տեղեկությունների հանձնման, դրանց վերամշակման ու դուրսգրման փուլերից։

Մեծ կարևորություն ունի նաև ժամանակի ու նյութերի տնտեսումը մեքենայի ծրագրավորման ու ալգորիթմավորման համար։ Այդ նպատակով նախատեսվող ծախսերի դասակարգման բնագավառում կան տարբեր մոտեցումներ։ Մեր կարծիքով, այդ ծախսերը կարելի է մտցնել ձեռնարկության արտադրանքի ինքնարժեքի մեջ և համարել կապիտալ ներդրումների բաղկացուցիչ մաս։ Հաշվապահական բալանսում դրանք չպետք է դիտվեն որպես հիմնական ֆոնդի այն մասը, որի արժեքից հաշվարկվում են մասհանումներ։

Ինժեներական աշխատանքի ավտոմատացման տնտեսական արդյունավետության հաշվարկման մեթոդիկայում հաշվի չեն առնվում նաև այդ աշխատանքի տնտեսման մյուս առանձնահատկությունները։ Մասնավորապես կարևոր է այն փաստը, որ ինժեներական աշխատանքի ավտոմատացման ու մեքենայացման շնորհիվ հարաբերականորեն ազատվում են որոշակի քանակությամբ ինժեներներ, որը բնականաբար, հավասարազոր է նույն քանակի ինժեներների պատրաստմանը բուհում։ Ուստի միայն ինժեներական աշխատանքի աշխատավարձի ֆոնդերի հաշվին տնտեսական արդյունքի ստացումը լրիվ չի արտացոլում այդ աշխատանքի ավտոմատացումից ստացվող տնտեսական օգուտը։

Ինժեներների և մյուս մասնագետների աշխատանքի հատույցի մեծացման կարելի է հասնել ոչ թե տարանջատ կամ թերատ միջոցառումների իրականացմամբ, այլ արտադրության ինժեներական ապահովման կազմակերպման համակարգի միջոցով։ Կարևոր է տեխնիկական միտքն ու փորձը օգտագործել առավելագույն հատույցով, ինժեներներին չծանրաբեռնել այնպիսի պարտականություններով, որոնք չեն պահանջում բարձր որակավորում։ Նրանց ջանքերն ու գիտելիքները պետք է նպատակամղել այնպիսի խոշոր պրոբլեմների լուծմանը, ինչպիսին են պրոգրեսիվ տեխնոլոգիաների մշակումը, ձեռքի աշխատանքի մեքենայացումը, խնայողաբեր , նվազ նյութատար և էներգատար մեքենաների ու մեխանիզմների ստեղծումը։

---

# ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՍՈՑԻԱԼ-ՀՈԳԵԲԱՆԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

**Դ. ՈՍԿԱՆՅԱՆ**
Հոգեբանական գիտությունների թեկնածու, դոցենտ

Կուսակցության կանխանշած պատմական վերափոխումների իրականացման համար անհրաժեշտ է առավել մոբիլիզացնել մասսաների ստեղծագործական ուժերը, խթանել նրանց աշխատանքային և հասարակական ակտիվությունը։ Հանգամանորեն վերլուծելով այս պրոբլեմը՝ ընկեր Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմում հրավիրված համամիութենական գիտագործնական կոնֆերանսում նշեց այդ նպատակին հասնելու սոցիալական և գաղափարախոսական ուղիները։ «Դա ամենից առաջ մարդու նկատմամբ ուշադրության ուժեղացումն է։ Ուշադրություն ամեն ինչում՝ մեծում և փոքրում։ Խոսքը ոչ միայն սոցիալ-տնտեսական պլանների՝ դեպի մարդկանց կենսապայմանների բարելավումը ընդհանուր ուղղվածության մասին է, այլև մեր հասարակության բոլոր օղակների, նրա բոլոր կառուցվածքների աշխատանքների պրակտիկայի կատարելագործման մասին»։

Հասարակության այդպիսի կառուցվածքներից ամենակարևորը արտադրական կոլեկտիվներն են, սոցիալիստական հասարակության հիմնական բջիջները։ Դրանք աշխատանքի կազմակերպման որոշակի միավոր են և անձի դաստիարակության ու մարդկային փոխհարաբերությունների կազմակերպման միջոց։ Աշխատանքային կոլեկտիվի արտաքին, ձևական կառուցվածքը տվյալ կոլեկտիվի անդամների փոխհարաբերությունների այնպիսի օղակն է, որն ստեղծվում է դրսից և կառավարվում է պաշտոնական նորմերով ու կանոններով։ Կոլեկտիվի ներքին, ոչ ձևական կառուցվածքը որոշվում է միջանձնային փոխհարաբերությունների բնույթով, որը, բնականաբար, ավելի դինամիկ է, քան արտաքինը։ Սակայն այդ երկու կառուցվածքներն էլ սերտորեն կապված են և փոխադարձաբար լրացնում ու փոխազդում են միմյանց վրա։ Այստեղ կարևորը մարդկային փոխհարաբերությունների կառավարման միասնական չափանիշի առկայությունն է, որով հնարավոր է առաջնորդվել մարդկանց մտքերը և զգացմունքները գնահատելիս։ Մարքսիստական սոցիալական հոգեբանությունն այդ հարցում առաջնորդվում է Վ. Ի. Լենինի այն հայտնի դրույթով, որ այդ չափանիշը կարող է միայն մեկը լինել՝ անհատների հասարակական գործողությունները (ԵԼԺ, հ. 1, էջ 514)։ Մարքսիստական հոգեբանությունը ելնում է այն դրույթից, որ մարդու հոգեկանը ձևավորվում և դրսևորվում է նրա գործունեության մեջ, որը միջնորդավորվում է բազմաթիվ սոցիալական գործոններով։ Մարդկային գործունեության սոցիալական միջնորդավորվածությունն էլ հիմք է տվել Կ. Մարքսին պնդելու, որ մարդու անձի էությունը հասարակական հարաբերությունների ամբողջությունն է։ Այսպիսով, արտադրության կազմակերպման պրոցեսը պայմանավորված է արտաքին և ներքին որոշակի հարաբերությունների համակարգով, որն էլ կոլեկտիվի գործունեության արդյունավետության գլխավոր պայմանն է։

Կոլեկտիվի անդամների իրավաբանական, տնտեսական, բարոյական և այլ

հարաբերությունների կառավարման հարցը ժամանակակից հոգեբանության կարևոր պրոբլեմներից է։

Գիտատեխնիկական հեղափոխությունը, արտադրական ձեռնարկությունների կառավարման հարցերի առնչությամբ, հոգեբանությանն առաջադրում է մի շարք խնդիրներ, որոնց լուծումը կնպաստի կոլեկտիվի աշխատանքի արդյունավետության բարձրացմանը։

Արտադրական կոլեկտիվի գործունեության բոլոր հիմնական բնագավառներում հետզհետե մեծանում է սոցիալ-հոգեբանական գործոնների դերը։ Արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման պրոբլեմները ներառնում են մի շարք հոգեբանական հարցեր, որոնց բնույթը մեծ չափով պայմանավորված է տվյալ կոլեկտիվի առանձնահատկություններով։ Սակայն գոյություն ունեն պրոբլեմներ, որոնք հավասարապես կարևոր են յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվի համար։ Այդ բոլոր հիմնական ուղղություններով տարվող աշխատանքները կարող են հաջողությամբ իրականացվել միայն մասնագետ հոգեբանների և սոցիոլոգների մասնակցությամբ։

Այդ պատճառով էլ մեր հանրապետության մի շարք արտադրական կոլեկտիվներում ստեղծվում են մշտական գործող սոցիալ-հոգեբանական ծառայություններ։ Բազմազան պրոբլեմների առաջին խումբը, որի մշակմամբ զբաղվում են արտադրական ձեռնարկության սոցիալ-հոգեբանական ծառայությունները, վերաբերում է կառավարման պրոցեսի կատարելագործման հարցերին։ Դա նախ և առաջ հոգեբանների և սոցիոլոգների մասնակցություն է կոլեկտիվի սոցիալական անձնագրի, սոցիալ-տնտեսական զարգացման պլանների կազմմանը։ Այդ պլաններում կարևոր տեղ պետք է հատկացնել կոլեկտիվում ձեռնարկվող միջոցառումների հոգեբանական արդյունավետության ուսումնասիրության հարցերին, քանի որ երբեմն հասարակական կազմակերպությունների և ադմինիստրացիայի ձեռնարկած միջոցները, հատկապես, երբ դրանք դաստիարակչական բնույթ ունեն, կարող են ձևական ընթացք ստանալ և չծառայել իրենց նպատակին։ Հարցերի այդ խմբի մեջ են մտնում նաև կառավարման ապարատի աշխատանքի կատարելագործման հոգեբանական հարցերը, սոցիալիստական մրցության կազմակերպման, փոքր խմբերում փոխհարաբերությունների, ինչպես նաև ղեկավարների ու ենթակաների փոխհարաբերությունների և ղեկավարման ոճի ուսումնասիրության ու կատարելագործման հարցերը։

Երկրորդ խումբն ընդգրկում է կադրերի ընտրության, ուսուցման, դաստիարակության և տեղաբաշխման հարցերը։ Դրանց մեջ են մտնում պրոֆընտրությունը, կադրերի կայունացումը, նրանց պատրաստվածության և տեղաբաշխման փորձագիտական գնահատումը, ուսուցման ու որակավորման բարձրացման կազմակերպումը, աշխատակիցների հոգեբանական գիտելիքների հարստացման պրոբլեմները։

Երրորդ խումբը վերաբերում է աշխատանքի կազմակերպմանը և նրա արտադրողականության բարձրացմանը, ինչպես նաև հանգստի ռեժիմի կարգավորմանը։ Այդ խումբն ընդգրկում է արտադրական թերությունների հոգեբանական պատճառների բացահայտման և աշխատանքային գործունեության խթանման, արտադրական օպերացիաների կատարելագործման, արտադրական մարմնամարզության ու ֆունկցիոնալ երաժշտության կիրառման հարցերը, հանգստի կազմակերպումը, պայքարը աշխատանքի միապաղաղության ու հոգնածության դեմ և արտադրական օպերացիաների կատարելագործումը։

Հարցերի նշված խմբավորումները, անշուշտ, պայմանական են, քանի որ դրանցից յուրաքանչյուրը սերտորեն առնչվում է մյուս խմբերի հարցերի հետ։ Օրինակ, կառավարման ապարատի հստակ և օպերատիվ գործունեությունը նպաստում է կոնֆլիկտային իրադրությունների նվազեցմանը, որն էլ իր հերթին կասեցնում է կադրերի հոսունությունը և այլն։ Սոցիալ-հոգեբանական ծառայության կազմակերպման մյուս առանձնահատկությունն այն է, որ դրա համակարգում ձեռնարկված միջոցները հաճախ նպաստում են ոչ միայն այն հարցի լուծմանը, որի համար դրանք կատարվել են, այլ նաև առաջին հայացքից դրա հետ անմիջականորեն կապ չունեցող հարցերի լուծմանը։



Կարևոր են նաև հասարակական կազմակերպությունների աշխատանքներում տեղ գտած սոցիալ-հոգեբանական հարցերը։ Հոգեբանը և սոցիոլոգը, ծանոթանալով այդ կազմակերպությունների աշխատանքային պլաններին, ձեռնարկվող միջոցառումների հոգեբանական արդյունավետությունը բարձրացնելու առաջարկներ են անում, քանի որ բացառված չէ, որ միջոցառումները որոնցից նշենք մի քանիսը։ Նախ, որոշ կոլեկտիվների ղեկավարներ այն կարայն օրինաչափությունն անտեսելու հետևանքով։ Ուստի սոցիոլոգների և հոգեբանների մասնակցությունը հասարակական կազմակերպությունների աշխատանքին նպաստում է դրանց ձեռնարկած միջոցառումների արդյունավետության բարձրացմանը։

Ինչպես տեսնում ենք, ձեռնարկության սոցիալ-հոգեբանական ծառայությունը կարող է զգալի դեր խաղալ աշխատանքի կուլտուրայի և արդյունավետության բարձրացման գործում։ Սակայն նման ծառայության կազմակերպումը մեր հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում որոշակի օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի դժվարությունների հետ է կապված, որոնցից նշենք մի քանիսը։ Նախ՝ որոշ կոլեկտիվների ղեկավարներ այն կարծիքին են, որ նման պրոբլեմների լուծման համար անպայման անհրաժեշտ է դիմել հրավիրված մասնագետների օգնությանը, պայմանագրային ձևով թեմաներ պատվիրել և այլն։ Չժխտելով դրա օգտակարությունը, այնուամենայնիվ, անհրաժեշտ է ընդգծել, որ նրանք կարճ ժամանակում չեն կարող բազմակողմանիորեն ուսումնասիրել տվյալ կոլեկտիվի բոլոր առանձնահատկությունները՝ առավել ևս որոշակի նախնական նյութերի բացակայության պայմաններում։ Բացի այդ, գիտական հսկողությունից դուրս է մնում նաև մշակված հանձնարարականների ներդրման և կիրառման հարցը, քանի որ սովորաբար դրանք պատրաստվում են միայն հետազոտության վերջին փուլում, երբ պայմանագրի ժամկետն արդեն լրանում է։ Ըստ որում, հաճախ այդ հանձնարարականների կիրառումը նույնպես մասնագիտական լուրջ պատրաստվածություն է պահանջում։ Նման դժվարություններից խուսափելու համար նպատակահարմար է մեծ ձեռնարկություններում ունենալ մշտապես գործող ծառայություններ, իսկ պայմանագրային հետազոտությունները կատարել միայն առանձին գիտական նորույթների ներդրման, բարդ հարցերի լուծման համար։

Հաճախ է պատահում նաև, երբ առանձին հիմնարկություններում մշտական աշխատանքի են ընդունում կա՛մ միայն սոցիոլոգների և կամ էլ միայն հոգեբանների, առանց հաշվի առնելու, որ դրանք, չնայած որոշ պրոբլեմների ընդհանրությանը, միևնույն մասնագիտությունները չեն։ Այդ պատճառով էլ նպատակահարմար է ոչ թե զուգահեռ ծառայություններ ստեղծել և կամ բավարարվել միայն մեկով, այլ ունենալ միասնական սոցիալ-հոգեբանական ծառայություն։ Անհրաժեշտ է նաև նկատի ունենալ, որ արտադրական ձեռնարկություններում հոգեբանական պրոբլեմներն ավելի շատ են, քան սոցիոլոգիականը, ուստի այդ ծառայությունը ցանկալի է կոմպլեկտավորել որոշակի համամասնությամբ։ Փոքրաթիվ կոլեկտիվներում, որտեղ առանձին հաստիքով մասնագետ ունենալը նպատակահարմար չէ, կարելի է կոլեկտիվի համապատասխան անդամներից որևէ մեկի վրա դնել սոցիալ-հոգեբանական աշխատանքների անցկացման պարտականությունը։

Ցավոք, նույնը կարելի է ասել նաև մասնագիտական կրթություն ստացած շրջանավարտների մասին, քանի որ բուհերում դեռևս բավականաչափ ուշադրություն չի դարձվում կոնկրետ արտադրությունում աշխատելու համար ապագա սոցիոլոգների և հոգեբանների նախապատրաստման հարցերին։ Անկասկած, հասունացել է ժամանակը, որպեսզի հանրապետության կադրերի որակավորման բարձրացման և վերապատրաստման հարցերով զբաղվող կազմակերպություններից որևէ մեկում վերապատրաստման դասընթացներ կազմակերպվեն արտադրության մեջ աշխատող հոգեբանների և սոցիոլոգների համար, որտեղ նրանք այդ գիտությունների ձեռք բերած վերջին նվաճումների կիրառմանը և աշխատանքի նորագույն մեթոդների հետ ծանոթանալու հնարավորություն կստանան։

Հատուկ ուշադրության է արժանի նաև ձեռնարկությունների ղեկավար

աշխատողների, վարպետ-դաստիարակների, բրիգադավարների, արտադրամասերի և տեղամասերի պետերի հոգեբանական պատրաստվածության խնդիրը։

Լուրջ դժվարություններ է հարուցում այն հանգամանքը, որ երբեմն որոշ դեպքերում կամ չափազանցվում են հոգեբանության և սոցիոլոգիայի հնարավորությունները կոլեկտիվի առջև դրված խնդիրների լուծման մեջ և կամ էլ թերագնահատում են դրանք։ Անհրաժեշտ է հիշել, որ ձեռնարկությունների սոցիալ-հոգեբանական ծառայությունները արտադրության արդյունավետության բարձրացման գործին կարող են օգուտ տալ միայն ուսումնասիրվող հարցերի խոր հետազոտության և մշակված հանձնարարականների հետևողական կիրառման շնորհիվ։

Ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, հանրապետության բոլոր մեծ գործարանները, արտադրական միավորումները սոցիալ-հոգեբանական ծառայությունների կազմակերպման որոշակի աշխատանք են կատարում։ Սակայն սոցիալ-հոգեբանական ոչ բոլոր հարցերն են ընդգրկված այդ ծառայությունների աշխատանքային պլաններում։ Մեծ մասամբ դրանք բավարարվում են տարվա ընթացքում միայն մեկ կամ երկու պրոբլեմի մշակմամբ և տեսադաշտից դուրս են թողնում շատ ուրիշ կարևոր հարցեր։ Հետևանքը լինում է այն, որ մեկ հարցի ուսումնասիրությունը սպասվող արդյունքը չի տալիս։ Նման աշխատանքների արդյունավետության մասին ստեղծվում է թյուր կարծիք ինչպես բուն ուսումնասիրություն կատարողների, այնպես էլ կոլեկտիվի մյուս անդամների շրջանում։ Վերցնենք կադրերի հոսունության պրոբլեմը, որի ուսումնասիրությունը լայնորեն տարածված է մեր ձեռնարկություններում։ Կադրերի հոսունությունը բարձր է հատկապես նոր ընդունված աշխատողների շրջանում, որից էլ կարելի է եզրակացնել, որ նրանք դժվարությամբ են համակերպվում նոր կոլեկտիվին։ Դրանից հետո անհրաժեշտ է պարզել, թե որոնք են դրա հիմնական պատճառները՝ աշխատանքի կամ կենցաղի վատ պայմաննե՞րը, թե՞ կոլեկտիվում ստեղծված փոխհարաբերությունները։ Դրա համար անհրաժեշտ է ուսումնասիրել ինչպես աշխատանքի պրոցեսը (կատարվող օպերացիաների քանակը, բարդությունը և այլն), այնպես էլ կոլեկտիվի անդամների փոխհարաբերությունները՝ ձևական և իրական լիդերների, կոլեկտիվի մյուս անդամների գործունեության այն առանձնահատկությունները, որոնք հանգեցնում են կադրերի չհարմարվելուն և, վերջին հաշվով, նրանց հոսունությանը։ Կարևոր նշանակություն ունեն նաև կադրերի ուսուցման և տեղաբաշխման, նրանց մասնագիտական կողմնորոշման հարցերը։ Դրա համար անհրաժեշտ է այնպես կազմակերպել կադրերի ընտրությունը և տեղաբաշխումը, որպեսզի նրանցից յուրաքանչյուրն աշխատի այնպիսի տեղամասում և այնպիսի աշխատանք կատարի, որն առավելապես համապատասխանում է նրա մասնագիտական ու հոգեբանական տվյալներին։ Այսպիսով, կադրերի հոսունության պատճառների ուսումնասիրությունը հարուցում է նոր խնդիրներ. սոցիալ-հոգեբանական ծառայության անհրաժեշտություն, կադրերի ընտրություն, ուսուցում, տեղաբաշխում։

Միայն կոմպլեքսային հարցերի նկատմամբ համակողմանի մոտեցմամբ հնարավոր է սոցիալ-հոգեբանական ծառայության արդյունավետ գործունեությունը։ Այդ տեսակետից հատկապես հետաքրքրական է Հայկական ՍՍՀ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի գլխավոր արտադրական վարչության փորձը։ Սոցիալ-հոգեբանական ծառայության բոլոր հիմնական ուղղություններով կատարվող աշխատանքներն ընդգրկված են այդ կազմակերպության պլաններում։ Ընդ որում այդ հարցերով զբաղվելու պարտականությունը դրված է ԱԳԿ-ի աշխատակիցների վրա։ Ինչպես ցույց են տալիս հանրապետության էներգետիկական հիմնարկություններում կատարված ուսումնասիրությունները, երիտասարդ բանվորների՝ արտադրությանը հարմարվելու պրոցեսին մասնավորապես խանգարում են վարպետ-դաստիարակների գործունեության մեջ նկատվող թերությունները։ Հաճախ նրանք հստակորեն չէին պատկերացնում երիտասարդ բանվորի հետ տարվող աշխատանքի առանձնահատկությունները։ Այդ թերությունը վերացնելու համար մշակվեցին վարպետ-դաստիարակի գոր-



ծունեության հիմնական բնագավառներին վերաբերող մեթոդական հանձնարարականներ, որտեղ կարևոր տեղ են գրավում մանկավարժական-հոգեբանական բնույթի խորհուրդները, որոնք օգնում են վարպետ-դաստիարակին՝ երիտասարդ բանվորի հետ տարվող աշխատանքի ճիշտ կազմակերպման գործում։ Այժմ նույն բնույթի մեթոդական նյութեր են պատրաստվում նաև բրիգադավարների համար։

Հոգեբանության և սոցիոլոգիայի ձեռք բերած նվաճումները արտադրական կոլեկտիվների կառավարման պրոցեսում կիրառելու հարցը սերտորեն կապվում է կառավարման տարբեր օղակներում աշխատողների հոգեբանական պատրաստվածության հարցին։ Հայտնի է, որ յուրաքանչյուր մարդ ունի հոգեբանական գիտելիքների որոշակի պաշար, որը նա կիրառում է ուրիշների հետ տարբեր առիթներով հաղորդակցվելիս կենսական հարցերի լուծման ժամանակ։ Սակայն այդ գիտելիքները մեծ մասամբ կենցաղային բնույթ ունեն և հաճախ հակասում են այդ նույն հարցի մասին եղած գիտական պատկերացումներին։ Այդ պրոբլեմը հատկապես կարևոր է ղեկավարման օղակներում ընդգրկված մարդկանց համար, քանի որ նրանք չեն գտնվում անմիջական արտադրության պրոցեսում, այլ ղեկավարում են այնտեղ ընդգրկված մարդկանց գործունեությունը։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ կառավարման պրոցեսի արդյունավետությունը մեծանում է, եթե դրանով զբաղվող մարդիկ տիրապետում են հոգեբանության հիմնական դրույթներին և կարողանում են դրանք կիրառել իրենց գործունեության մեջ։ Ընդ որում նկատվում է հետևյալ օրինաչափությունը. որքան տվյալ անձը երկար ժամանակ է զբաղվում կառավարման հարցերով, այնքան ավելի հարուստ են նրա հոգեբանական գիտելիքները և, որ հատկապես կարևոր է, դրանք ավելի են մոտենում գիտական գիտելիքներին։ Իսկ այն անձինք, որոնք նման գիտելիքների բարձր մակարդակ չունեն, դժվարությամբ են կատարում իրենց պարտականությունները։ Դա հիմք է տալիս ենթադրելու, որ կառավարման պրոցեսի կազմակերպման գործում ղեկավարների հոգեբանական պատրաստվածության նշանակությունը հետզհետե մեծանում է։

Բնականաբար, ղեկավար կադրերի պատրաստման և վերապատրաստման հարցերով զբաղվող ուսումնական հաստատությունների պլաններում հոգեբանությունը և դրա տարբեր ճյուղերը աստիճանաբար ավելի մեծ տեղ են գրավում։ Այնուամենայնիվ, դասաժամերի ավելացումով հարցը չի լուծվում։ Խնդիրն ուսուցման արդյունավետության բարձրացումն է։ Անհրաժեշտ է ուսումնական պլաններում պատշաճ տեղ հատկացնել հոգեբանական իրավիճակների կոնկրետ վերլուծությանը, գործնական խաղերին, որոնք կնպաստեն ունկնդիրների գիտելիքների հարստացմանը։ Այս առումով ուշագրավ են Երևանի «Էլեկտրոն» արտադրամիավորման արտադրած՝ ուսուցման ավտոմատացված համակարգերը, որոնց օգնությամբ հնարավոր է միաժամանակ կազմակերպել 30 հոգու ուսուցումը։ Համակարգը կարող է նաև ուսումնասիրություն կատարել ու տվյալներ ստանալ սովորողների հոգեբանական առանձնահատկությունների մասին, քննել գիտելիքները, երկխոսության մեջ մտնել նրանց հետ և այլն։ Նման համակարգերի կիրառումը հնարավորություն է ընձեռում բարձրացնելու ղեկավարների և մյուս աշխատողների հոգեբանական պատրաստվածության մակարդակը, քանզի մատուցվող նյութը անմիջականորեն առնչվում է նրանց աշխատանքային գործունեության հոգեբանական կողմերին, նպաստում դրանց նկատմամբ գիտական մոտեցմանը։

Ժամանակակից արտադրությունը, նշում է ընկ. Մ. Ս. Գորբաչովը, կողմնորոշվում է դեպի նախաձեռնողաբար մտածող, բարձր կազմակերպված, կարգապահ, կրթված, սկզբունքայնորեն նոր տեխնոլոգիական կուլտուրային տիրապետող աշխատողը։ Նա պետք է թե՛ մասնագիտորեն, թե՛ հոգեբանորեն պատրաստված լինի արագացող գիտական ու տեխնիկական առաջընթացին։

# ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻՆ ՀԱՎԱՏԱՐԻՄ

**Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովի նախագահ

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1985 Թ. ԱՊՐԻԼՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ նոր և պատասխանատու պահանջներ ներկայացրեց նաև կուսակցական վերահսկողությանը։ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովն ասաց, որ ոչ մի կուսակցական կազմակերպություն, ոչ մի կոմունիստ չի կարող դուրս մնալ կուսակցական վերահսկողության ոլորտից։ Պլենումը գտավ, որ անհրաժեշտ է ուժեղացնել պահանջկոտությունը կոմունիստների նկատմամբ, որպեսզի նրանք օրինակելի լինեն իրենց հասարակական պարտքի, կուսակցության որոշումների կատարման, կուսակցականի ազնիվ և անբասիր կերպարի պահպանման, խոսքի ու գործի միասնության ապահովման գործում։

Կուսակցական և պետական վերահսկողության սկզբունքները մշակել է Վ. Ի. Լենինը դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին։ Նախընթաց տասնամյակներին հաստատվել են այդ կարևոր գործի լավ ավանդույթներ։ Եվ այսօր սոցիալիստական, այդ թվում նաև կուսակցական վերահսկողության արդյունավետությունը պայմանավորված է նրանով, թե որքանով է այն հավատարիմ վերահսկողության լենինյան սկզբունքներին ու ավանդույթներին, որքանով է այն հարազատ կուսակցության ժամանակակից պահանջներին ու առաջադրած խնդիրներին։

Ինչ խոսք, սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության ծավալներն ու մասշտաբները մեր ժամանակներում անհամեմատ մեծացել են, բարդացել են ղեկավարման ու կառավարման խնդիրները, ստեղծվել են կառավարման տեխնիկական նոր միջոցներ ու համակարգեր, սակայն այս պայմաններում էլ վերահսկողության և կատարման ստուգման լենինյան սկզբունքներն ու դրույթները ոչ միայն չեն կորցրել իրենց արդիականությունը, այլև ձեռք են բերել նոր հնչեղություն և հրատապություն։ Դեռևս 1918 թ. դեկտեմբերին Սովետական հիմնարկությունների կառավարման կանոնների ուրվագծում Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ սովետական հիմնարկություններում կառավարման բոլոր հարցերի կոլեգիալ քննարկումն ու վճռումը պետք է զուգակցվի... յուրաքանչյուրի ամենաճշգրիտ պատասխանատվության սահմանումով։ Բոլոր ղեկավար սովետական հիմնարկությունները պարտավոր են իրենց աշխատանքներն անհապաղ վերակառուցել այնպես, որպեսզի առաջին պլանում լինի կենտրոնական իշխանության և տեղական հիմնարկություն-



ների որոշումների իրական կատարման փաստական վերահսկողությունը (տե՛ս ՆԼԺ, հ. 37, էջ 453—555)։

Այն ժամանակ նորաստեղծ սովետական պետական ապարատի, այդ թվում նաև կենտրոնական մարմինների գործունեության մեջ տեղ գտած թերությունները հաղթահարելու համար Լենինը և կուսակցությունը վճռական ջանքեր գործադրեցին։ 1922 թ. փետրվարի 27-ին Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահի տեղակալին գրած նամակում նա նշում էր, որ Ժողկոմխորհի և կենտրոնական մյուս մարմինների գլխավոր թերությունն այն է, որ դրանք ծանրաբեռնված են մանրուքներով, խեղդվում են բյուրոկրատիզմի մեջ։ Նա գտնում էր, որ օրակարգի հարց է դարձել պայքարը թղթային ծովի, անվերջ վերակառուցումների դեմ։ Մոմենտի առաջնահերթ խնդիրը ոչ թե դեկրետներն են, ոչ թե վերակառուցումները, այլ մարդկանց ընտրությունը, անձնական պատասխանատվության հաստատումը, փաստացի աշխատանքի ստուգումը։ Այլապես մենք դուրս չենք գա մեզ խեղդող բյուրոկրատիզմից և քաշքշուկից (տե՛ս ՆԼԺ, հ. 44, էջ 437—438)։

Վ. Ի. Լենինը այս և մյուս նամակներում իր տեղակալներին խորհուրդ էր տալիս ծանրության կենտրոնը դեկրետներ ու հրամաններ գրելուց տեղափոխել դեպի կադրերի ընտրությունն ու կատարման ստուգումը, պահանջելով, որպեսզի այդ գործին հատկացվի նրանց աշխատաժամի գերակշռող մասը։ Նա հրամայաբար պահանջում էր տեղակալներից բեռնաթափվել մանրուքներից, չխառնվել այն գործերին, որոնց լուծումը մտնում է ժողկոմների իրավասության մեջ, ամեն կերպ ազատվել խառնաշփոթությունից, իրարանցումից, հանձնաժողովներից, շատախոսելուց, թղթեր գրելուց, կշռադատել աշխատանքը, կենտրոնանալ կատարման ստուգման վրա և անպայմանորեն հասնել կատարման ապահովմանը։

Խիստ ուշագրավ է Լենինի նամակը պետբանկի կառավարչին։ Այն գրված է 1922 թ. փետրվարին։ Նամակում ցավով նշվում է, որ կոմունիստները դարձել են բյուրոկրատներ, իսկ դա կործանարար է։ Գլխավոր խնդիրն այժմ, շեշտում է առաջնորդը, պրակտիկայի և պրակտիկների մեջ է։ Գտնել գործարար մարդկանց, իսկ դրանք կարող են լինել հարյուրից կամ հազարից մեկը, «մեր դեկրետները... կեղտոտ թղթից վերածել կենդանի պրակտիկայի— սա է էությունը» (ՆԼԺ, հ. 54, էջ 215)։

Լենինյան բնորոշմամբ, մեր վատթարագույն ներքին թշնամին բյուրոկրատն է, այն կոմունիստը, որն զբաղեցնում է պատասխանատու պոստ, սակայն չի կարողանում աշխատանքը հստակորեն կազմակերպել, չի կարողանում պայքարել բյուրոկրատիզմի դեմ և քողարկում է այն։ Այդ ամենի հաղթահարման հուսալի միջոցը վերահսկողությունն է։ «Ստուգել մարդկանց և ստուգել գործի փաստական կատարումը— ա՛յս է, դարձյալ ա՛յս է, միմիայն ա՛ս է այժմ ամբողջ աշխատանքի, ամբողջ քաղաքականության առանցքը» (ՆԼԺ, հ. 45, էջ 20)։

Խիստ ուշագրավ են Լենինի նկատառումները կուսակցական վերահսկողության կազմակերպման վերաբերյալ։ Նրա նախաձեռնությամբ կուսակցության համառուսաստանյան IX կոնֆերանսը որոշեց ստեղծել կենտրոնական վերստուգիչ հանձնաժողով, որի գլխավոր ֆունկցիան կուսակցական բարձրագույն վերահսկողության իրականացումն էր։ Տեղերում այդ ֆունկցիաների իրականացման համար ստեղծվեցին համապատասխան կուսակցական վերահսկողության հանձնաժողովներ։ Վ. Ի. Լենինի երաշխավորմամբ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի կազմում ընդգրկվեցին առավել պատրաստված, առավել փորձված, ծայրաստիճան օբյեկտիվ, խստագույն վերահսկողություն իրականացնելու ընդունակ կոմունիստներ, այդ թվում կուսակցության մեջ բացառիկ հեղինակությամբ օժտված Ֆ. Է. Ձերժինսկին։ Երաշխավորելով ՆՎՀ-ի կազմում կուսակցության լավագույն կադրերին՝ Լենինը խնդիր դրեց այդ հանձնաժողովը դարձնել կուսակցական ու պրոլետարական խղճի իսկական մարմին (տե՛ս ՆԼԺ, հ. 41, էջ 471)։

Առաջնորդը գտնում էր, որ Կենտրոնական վերահսկողության հանձնա-

ժողովի անդամները «պետք է կազմեն միաձուլված մի խումբ, որը, «անկախ անձնավորություններից», պետք է հետևի, որպեսզի ոչ մեկի հեղինակությունը՝ ո՛չ գլխավոր քարտուղարի, ո՛չ էլ Կենտկոմի մյուս անդամներից որևէ մեկի հեղինակությունը, չկարողանա խանգարել նրանց հարցապնդում անելու, ստուգելու փաստաթղթերը և առհասարակ հասնելու անպայման իրազեկության և գործերի խստագույն կանոնավորության» (ԵԼԺ, հ. 45, էջ 458)։

Այս հարցադրումը հասկանալու համար հարկ է նշել, որ ԿՎՀ-ի անդամներն իրենց իրավունքներով հավասարվում էին Կենտկոմի անդամներին, ընտրվում էին կուսակցության համագումարի կողմից և հաշվետու էին նրա առաջ։ Հանձնաժողովն իր աշխատանքներն իրականացնում էր կուսակցության Կենտկոմի հետ սերտորեն համագործակցած, սակայն անմիջականորեն չէր ենթարկվում նրան։ ՍՄԿԿ X համագումարը բանաձև ընդունեց կուսակցության միասնության վերաբերյալ և վերահսկողության հանձնաժողովների մասին։ Այդ հանձնաժողովների առջև խնդիր դրվեց պայքարել բյուրոկրատիզմի, կարիերիզմի, պաշտոնական դիրքի չարաշահումների, կեղծ լուրեր տարածողների, զրպարտիչների և մեր կուսակցության ու առանձին կոմունիստներին վարկաբեկող այլ երևույթների դեմ, որոնք խախտում են կուսակցության միասնությունն ու նրա հեղինակությունը։ Վերահսկողության հանձնաժողովների որոշումները պարտադիր էին բոլոր կոմունիստների և կուսակցական կազմակերպությունների համար։

Վ. Ի. Լենինը, խստագույն պահանջկոտության, երկաթե կարգապահության ջատագովը, միաժամանակ խորհուրդ էր տալիս կոմունիստների, կադրերի նկատմամբ դրսևորել զգայուն, ընկերական վերաբերմունք։ 1920 թ. հոկտեմբերի 26-ին նա գրում է վերահսկողության հանձնաժողով ստեղծելու մասին որոշման նախագիծ, որտեղ ընդգծում է. «Որպես վերահսկիչ հանձնաժողովի հատուկ առաջադրանք, հանձնարարել ուշադիր-անհատականացնող վերաբերմունք, հաճախ նույնիսկ ուղղակի յուրատեսակ բուժում՝ այսպես կոչված օպոզիցիայի այն ներկայացուցիչների նկատմամբ, որոնք հոգեբանական ճգնաժամ են ապրել իրենց սովետական կամ կուսակցական կարիերայի ընթացքում կրած անհաջողությունների կապակցությամբ։ Պետք է աշխատել հանգստացնել նրանց, ընկերաբար նրանց բացատրել գործը, նրանց համար գտնել (առանց հրամայելու եղանակի) իրենց հոգեբանական առանձնահատկություններին հարմար աշխատանք...» (ԵԼԺ, հ. 41, էջ 471)։ Այսօր էլ չափազանց ուսանելի է լենինյան պատվիրանը՝ ուշադիր վերաբերմունք, յուրատեսակ բուժում «հոգեբանական ճգնաժամ» ապրող կոմունիստների նկատմամբ։

Սոցիալիստական վերահսկողության մարմինները մեր երկրում ստեղծվեցին ու կատարելագործվեցին Լենինի անմիջական ղեկավարությամբ և նրա գործուն մասնակցությամբ։ Դեռևս 1917 թ. հոկտեմբերի վերջերին նրա առաջարկով բոլոր արտադրական և սպառման բնույթի ձեռնարկություններում կազմակերպվեց բանվորական վերահսկողություն։ Հեղափոխությունից հետո կազմավորվեց նաև պետական վերահսկողության ժողովրդական կոմիսարիատ։ Հետագայում, «վերևից» ու «ներքևից» իրականացվող վերահսկողությունը միավորելու նպատակով ստեղծվեց բանվորագյուղացիական տեսչության ժողովրդական կոմիսարիատը։ Բանգյուղտեսչության ստեղծմամբ հնարավոր եղավ աշխատավորական մասսաներին լայնորեն ներգրավել սոցիալիստական վերահսկողության իրականացման գործում։

Լենինը, սակայն, շատ ավելի մեծ նպատակներ էր հետապնդում։ Նա ցանկանում էր բանգյուղտեսչությունը դարձնել իսկապես օրինակելի, իսկապես սոցիալիստական վերահսկողություն իրականացնող մարմին և նրա գլխավոր խնդիրը համարում էր ողջ սովետական պետական ապարատի գործունեության արմատական բարելավումը։ Պետական ապարատում տեղ գտած բյուրոկրատիզմը, քաշքշուկը, անիրազեկությունը հաղթահարելու համար Վ. Ի. Լենինի պահանջով վերակառուցվեց բանգյուղտեսչությունը։ Այնտեղ աշխատանքի գործուղվեցին կուսակցության փորձառու, ստուգված կադրեր, հստակորեն սահմանվեցին բանգյուղտեսչության խնդիրները։



Հատուկ կարևորություն տալով բանգյուղտեսչության գործունեությանը և այդ մարմինների հեղինակությունը բարձրացնելու նպատակով Վ. Ի. Լենինն առաջարկեց բանգյուղտեսչությունը միավորել կուսակցության Կենտրոնական վերահսկողության հանձնաժողովի հետ։ Այդ ամենն օրինականացրեց կուսակցության XII համագումարը (1923 թ.), որը հատուկ բանաձև ընդունեց։

Սովետական ու կուսակցական վերահսկողության միացյալ մարմինը իր գործունեությունը դադարեցրեց կուսակցության XVII համագումարի որոշմամբ. հաշվի առնվեց, որ նա հիմնականում կատարել էր իր գլխավոր խնդիրը՝ պետական ապարատի աշխատանքների բարելավումը։ Սովետական վերահսկողության իրականացման համար ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին առընթեր ստեղծվեց Սովետական վերահսկողության հանձնաժողով (հետագայում այն վերակառուցվեց և վերածվեց պետական վերահսկողության մինիստրության), իսկ կուսակցական վերահսկողության իրականացման համար ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ստեղծվեց Կուսակցական վերահսկողության կոմիտե։

ՍՄԿԿ XXII համագումարը (1961 թ.) նպատակահարմար գտավ նորից միավորել կուսակցական ու պետական վերահսկողության մարմինները, սակայն այդ կառուցվածքը 1965 թ. վերանայվեց։ Կուսակցական վերահսկողությունն անջատվեց պետական վերահսկողությունից, կենտրոնում և տեղերում ստեղծվեցին ժողովրդական վերահսկողության կոմիտեներ՝ աշխատավորական մասսաներին վերահսկողության գործում ընդգրկելու լայն ցանցով։

Սակայն կառուցվածքային այդ փոփոխություններից ու անվանումներից անկախ՝ կուսակցական, սովետական, պետական, ժողովրդական վերահսկողության մարմինները մշտապես ձգտել և ձգտում են իրենց գործունեությունը կազմակերպել վերահսկողության լենինյան սկզբունքներին, կուսակցության առաջադրած պահանջներին համապատասխան։

Վերահսկողության լենինյան սկզբունքներին բնորոշ են օբյեկտիվությունը, գործնականությունը, վերահսկման սիստեմատիկ բնույթը, մասսայականությունը, հրապարակայնությունը, քննադատական մոտեցումը, «վերևից» ու «ներքևից» իրականացվող վերահսկողության զուգորդումը։ Լենինը պահանջում էր, որպեսզի ղեկավար աշխատողները պարտադիր կերպով մասնակցեն վերահսկողության կազմակերպմանն ու իրականացմանը և այդ ամենը նպատակամղեն ոչ միայն թերությունների ու սխալների բացահայտմանը, այլև, որ գլխավորն է, դրանց պատճառների բացահայտմանն ու վերացմանը, որոշման ու կատարման, խոսքի ու գործի միասնության ապահովմանը, աշխատանքի ոճի մշտական կատարելագործմանը։

Խորապես սկզբունքային նշանակություն ունի վերահսկողության կազմակերպման օբյեկտիվ բնույթը։ Առանց բացարձակ օբյեկտիվության վերահսկողությունն անկենդան է, անպտուղ, անիմաստ, նույնիսկ վնասակար։ Օբյեկտիվությունը վերահսկողության հիմքն է, առանց որի անհնար են ճշմարտության բացահայտումը և սոցիալական արդարության հաստատումը։

Վերահսկողության մասսայականության և հրապարակայնության դերը հատկապես մեծ է կոմունիստների, աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվության և նախաձեռնության զարգացման, կոլեկտիվներում առողջ բարոյահոգեբանական մթնոլորտ ստեղծելու, թերությունների նկատմամբ մարդկանց անհանդուրժողականության ոգով դաստիարակելու գործում։

Մեր օրերում ևս բացառիկ կարևոր նշանակություն ունի վերահսկողական աշխատանքներին ղեկավարների անձնական մասնակցությունն ապահովելու լենինյան պահանջը։ Այդ պահանջը կարմիր թելի նման անցնում է մեր կուսակցության մի շարք որոշումներում։ ՍՄԿԿ XXV համագումարը նշեց, որ ընդունված որոշումների կատարման վերահսկողությունն ու ստուգումը յուրաքանչյուր կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարի, յուրաքանչյուր մարմնի, յուրաքանչյուր սկզբնական կուսկազմակերպության առաջնահերթ խնդիրն է։

ՍՄԿԿ XXVI համագումարը ևս անդրադարձավ այդ կարևորագույն հարցին և արձանագրեց, որ կատարման ստուգումը դեռևս մնում է որպես շատ

կուսակցական կազմակերպությունների աշխատանքի նեղ տեղերից մեկը։ Ղեկավարման արվեստը, հիրավի ոչ թե շատ որոշումներ ընդունելու մեջ է, այլ դրանք հետևողականորեն կենսագործելու մեջ։

Կուսակցության XXVI համագումարից հետո, 1981 թ. օգոստոսի 11-ին ՍՄԿԿ Կենտկոմն այդ մասին որոշում ընդունեց։ Վերստին նշվեց, որ վերահսկողությունն ու կատարման ստուգումը պետք է դառնան կուսակցական, պետական ապարատի յուրաքանչյուր օղակի, յուրաքանչյուր կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարի, բոլոր կուսակցական կազմակերպությունների ամենօրյա կազմակերպական աշխատանքի կարևորագույն բաղադրիչ մասը։

Սոցիալիստական վերահսկողության իմաստը նրա փաստական, գործնական բնույթի մեջ է։ Վերահսկողության գործնականությունը, ինչ խոսք, ապահովվում է ոչ թե կոչերով ու լոզունգներով, ոչ թե կիսատ-պռատ միջոցառումներով, այլ հետևողական ու նպատակասլաց կազմակերպական ու քաղաքական աշխատանքով, որի ընթացքում վերահսկողությունն օրգանապես ձուլվում, միահյուսվում է փաստական կատարման, որոշումների, կարգադրությունների, հրամանների պրակտիկ իրականացման հետ։

Որոշումների կատարման վերահսկողության և դրանց կենսագործման իրականացման մեջ չպետք է լինի ոչ մի խզում և հակասություն։ Բոլոր պարագաներում վերահսկողությունը ոչ թե պետք է արձանագրի իրավիճակը, այլ անպայման հասնի որոշումների կենսագործմանը՝ չխնայելով դրա համար ո՛չ ժամանակ, ո՛չ էլ ջանք ու եռանդ։ Ուղղել սխալը, ուղղել ժամանակին և հըմտորեն՝ ահա դրանում էր տեսնում Լենինը բանգյուղտեսչության գլխավոր խնդիրը։ Նա գտնում էր նաև, որ արձանագրել գործի անբավարար վիճակը և գտնել մեղավորին հանձին պետի՝ դա աշխատանքի շատ փոքր բաժինն է (տե՛ս ԵԼԺ, հ. 44, էջ 152—154)։

Վերահսկողության գործնականության հակոտնյան ձևականությունն է։ Ոմանք վերահսկողության հստակ համակարգ ստեղծելու և գործադրելու փոխարեն զբաղվում են թղթաբանությամբ, տեղին ու անտեղի տեղեկանքներ ու հաղորդումներ են պահանջում, զանազան հանձնաժողովներ ստեղծում, նիստեր ու խորհրդակցություններ գումարում, նույնիսկ հաշվողական տեխնիկա են օգտագործում (որը, ինքնին, խրախուսելի գործ է)։ Սակայն հնարավոր չի լինում ցանկալի արդյունքի հասնել, որովհետև այդ ամենը չի կարող փոխարինել կենդանի կազմակերպչական աշխատանքը՝ տեղերում, այնտեղ, որտեղ անմիջականորեն որոշվում է պլանների, առաջադրանքների, կոնկրետ հանձնարարականների կատարման բախտը։

Վերահսկողությունն անբաժան է քննադատությունից։ Դրանք կուսակցական կյանքի կարևորագույն նորմերն են, որոնք հանդես են գալիս միասնաբար, հետապնդում են միևնույն նպատակներն ու խնդիրները, վեր հանում մեր կյանքի թերություններն ու սխալները և պայքարում դրանց հաղթահարման համար։ Քննադատությունը երբեմն հնչում է որպես տագնապի ազդանշան։ Վերահսկողությունը պետք է անմիջապես արձագանքի դրան, օգնության գա քննադատությանը, որպեսզի միացյալ ուժերով հաղթահարվեն թերությունները, իսկ մեղավորները ենթարկվեն պատասխանատվության։

Քննադատությունն ուղղություն է տալիս վերահսկողությանը, իսկ քննադատական վերլուծությունը վերահսկողության ամենահուսալի և ամենահաստատուն զենքն է։ Իսկ երբ ոմանք քննադատությունը դիմավորում են սվիններով, խոչընդոտներ են հարուցում դրա ճանապարհին, ապա օգնության է հասնում վերահսկողությունը, վեր հանում քննադատության ճնշման փաստերը, պատժում մեղավորներին։ Վերահսկողությունը լայն առումով այլ բան չէ՝ քան քննադատության գործով։

ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը, ինչպես նաև քաղկոմ-շրջկոմներին առընթեր կուսհանձնաժողովները ձգտում են իրենց աշխատանքները կազմակերպել վերահսկողության լենինյան սկզբունքների և կուսակցության արդի պահանջների ոգով։ Քաղկոմ-շրջկոմներին առընթեր



կուսհանձնաժողովներից շատերը իրենց նպատակասլաց գործունեությամբ, հետևողականությամբ և հաստատակամությամբ դարձել են կազմակերպվածության և կարգ ու կանոնի ջատագովներ, դրսևորում են իրենց որպես կուսակցական կոմիտեների ակտիվ և մարտական օգնականներ։

Անցել են այն ժամանակները, երբ կուսհանձնաժողովներն զբաղված էին հիմնականում կոմունիստների անհատական և կուսշարքերի ընդունելության գործերի նախնական քննարկմամբ։ Դրանց այժմ էլ պատշաճ ուշադրություն է հատկացվում, սակայն կուսհանձնաժողովների գործունեության մեջ հետըզհետե ավելի ու ավելի մեծ տեղ է տրվում վերահսկողության և կատարման ստուգման, կոմունիստների, կադրերի պատասխանատվության բարձրացման, կազմակերպվածության և կարգ ու կանոնի հաստատման, կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերին։ Բուն վերահսկողական աշխատանքն այժմ նրանց գործունեության մեջ առաջնակարգ տեղ է գրավում։

Կուսհանձնաժողովների դերի և ակտիվության բարձրացմանը պատշաճ ուշադրություն են հատկացնում հատկապես Սովետական, Լենինյան, Շահումյանի, Աշտարակի, Իջևանի, Հոկտեմբերյանի, Ղափանի, Գորիսի, Նոյեմբերյանի, Վարդենիսի, Էջմիածնի կուսշրջկոմները։ Այդ հանձնաժողովները պլանային կարգով պարբերաբար անդրադառնում են կուսակցական, պետական, աշխատանքային կարգապահության ամրապնդման, կադրերի, կոմունիստների պատասխանատվության բարձրացման հարցերին, վերահսկում են, թե ինչպես են կոմունիստները կատարում ՍՄԿԿ ծրագրի ու կանոնադրության պահանջները, հավատարիմ մնում կուսակցական բարոյականության նորմերին, ուսումնասիրում և կուսակցական կոմիտեների քննարկմանը ներկայացնում չարաշահումների և տարբեր բնույթի օրինախախտումների վերաբերյալ նյութերը։ Ավելին, նրանք չեն սահմանափակվում առանձին կոմունիստների և աշխատողների գործունեության մեջ տեղ գտած թերությունների ու սխալների բացահայտմամբ, այլ ձգտում են խորապես ուսումնասիրել և վերլուծել կատարած սխալների պատճառները, դրանց նպաստող հանգամանքներն ու գործոնները, հստակ ու մտածված առաջարկություններ են ներկայացնում սխալները շտկելու, դրանցից պատշաճ դասեր քաղելու վերաբերյալ և, որ ամենագլխավորն է, այդ հարցերը պահում են մշտական վերահսկողության ներքո այնքան ժամանակ, քանի դեռ վիճակը լիովին չի բարելավվել և սխալները լրիվ չեն շտկվել։

Քաղկոմ-շրջկոմներին առընթեր կուսհանձնաժողովները պլանային կարգով և կուսակցական կոմիտեների հանձնարարությամբ 1984 թ. իրականացրել են 350 ստուգումներ և ուսումնասիրություններ, որոնց արդյունքները քննարկվել են կուսակցական կոմիտեներում ու կազմակերպություններում և ընդունվել են համապատասխան որոշումներ։

ՀԿԿ Սովետական շրջկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը (նախագահ՝ Ռ. Աղաբեկյան) անցած տարի կուսակցական ակտիվի հետ միասին կատարել է 10 ստուգում, որից 6-ը սեփական ուժերով։ Այդ ստուգումները որոշակի հետք են թողել կուսակցական կազմակերպությունների կյանքում։ Այդ հանձնաժողովը շրջկոմի արդյունաբերության բաժնի հետ միասին և համապատասխան մասնագետների օգնությամբ 1984 թ. հունիսին ուսումնասիրել և կուսշրջկոմի քննարկմանն է ներկայացրել կուսակցական ու պետական կարգապահության վիճակը Երևանի շամպայն-գինիների գործարանում։ Ստուգմամբ պարզվել է, որ գործարանում հնգամյակի պլանային առաջադրանքները թերակատարվում են, թողարկված արտադրանքը հաճախ ցածրորակ է և չի համապատասխանում պետական ստանդարտներին, ոչ արտադրական ծախսերը, տուգանքները մեծ չափերի են հասնում, եղել են սոցիալիստական սեփականության հափշտակումների դեպքեր։

Սովետական կուսշրջկոմը, քննարկելով ստուգումների արդյունքները, սխալների ու բացթողումների համար կուսակցական պատասխանատվության ենթարկեց 7 կոմունիստների, այդ թվում ձեռնարկության դիրեկտոր Ն. Ղա-

ըստմովին, գլխավոր ինժեներ Մ. Զախարյանին, արտադրամասերի պետեր Ռ. Տիգրանյանին և Ռ. Մարուքյանին։ Գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը հավանություն տվեց այս որոշմանը, սակայն հարցի քննարկումը շատ ավելի արդյունավետ կլիներ, եթե այն նախապես տեղի ունենար սկզբնական կուսկազմակերպությունում, ապա նոր տեղափոխվեր կուսշրջկոմ։

Աշխատավորների հետ կուսակցության կապի լավ միջոց են նրանց նամակներն ու դիմումները, որոնցից շատերն ունենում են հասարակական հնչեղություն և շոշափում են կարևոր հարցեր։ Կուսհանձնաժողովները 1984 թ. ուսումնասիրել և քննարկել են 1.275 դիմում-բողոք։ Դրանք, որպես կանոն, սուր, անհապաղ միջամտություն պահանջող ահազանգեր են, որոնց ստուգումները շատ ջանքեր են պահանջում և վերածվում վերահսկողական բնույթի լուրջ հարցերի։ Սակայն լինում են նաև անձնական նեղ շահերից բխող դիմումբողոքներ, որոնք սոսկ պղտորում են մթնոլորտը։ Այսպես, Գորիսի շրջանի Արավուս գյուղի բնակիչներ, պետտնկարանի գլխավոր հաշվապահ, ՍՄԿԿ անդամ Ն. Ջհանգիրյանը և Արավուսի կոլտնտեսության գլխավոր անասնաբույժ, ՍՄԿԿ անդամ Ռ. Հովսեփյանը, որոնք նախկինում հայրենի գյուղում աշխատել էին որպես կոլտնտեսության վարչության նախագահներ, բազմաթիվ դիմումներ ուղղեցին շրջանային և հանրապետական կազմակերպություններին՝ լուրջ մեղադրանքներ առաջադրելով միմյանց։ Նրանք, մյուս կողմից, խանգարում էին կոլտնտեսության աշխատանքներին, անառողջ բարոյահոգեբանական մթնոլորտ ստեղծում գյուղում։ Այդ ամենը կատարվում էր հեռու գնացող շահադիտական նպատակներով։

ՀԿԿ Գորիսի շրջկոմին առընթեր կուսհանձնաժողովը խորապես ուսումնասիրեց Ն. Ջհանգիրյանի և Ռ. Հովսեփյանի նամակներում առաջ քաշված հարցերը և համապատասխան առաջարկություններ ներկայացրեց կուսշրջկոմի բյուրոյին։ Վերջինս, քննարկելով Ն. Ջհանգիրյանի և Ռ. Հովսեփյանի վարքագծի հարցը, անսկզբունք պայքարի և պաշտոնամոլության համար նրանց ազատեց զբաղեցրած պոստերից, երկուսին էլ հայտարարեց խիստ նկատողություն՝ գրանցելով կուսակցական հաշվառման քարտում և ուղարկեց արտադրություն՝ շարքային աշխատանքի։ Գյուղում այժմ բարոյահոգեբանական առողջ մթնոլորտ է տիրում, կոլտնտեսությունը հաջողությամբ կատարում է իր առաջադրանքները։

Կուսհանձնաժողովները պարբերաբար անդրադառնում են սոցիալիստական սեփականության հափշտակումների, կաշառակերության, սպեկուլյացիայի դեմ պայքարն ուժեղացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1981 թ. հոկտեմբերի 16-ի որոշման կատարմանը։ Նրանց համար այս հարցն ունի ուրույն, միանգամայն սկզբունքային նշանակություն։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դեռևս զգալի թվով կոմունիստներ վտարվում են կուսշարքերից հանրային ունեցվածքի դեմ ոտնձգություններ կատարելու և շահադիտական նպատակով պաշտոնական դիրքը չարաշահելու համար։ Դա վկայում է կադրերի, այդ թվում նաև նյութապես պատասխանատու աշխատողների ընտրության գործում կատարվող կոպիտ սխալների, համաժողովրդական ունեցվածքի պահպանության ոչ պատշաճ կազմակերպման, որոշ տնտեսական ղեկավարների և պաշտոնատար անձանց անպատասխանատվության, ինչպես նաև խստագույն վերահսկողության և պահանջկոտության բացակայության մասին։ Մինչդեռ այդպիսի երևույթների նկատմամբ անտարբերությունն ու հաշտվողականությունն ամենևին անթույլատրելի են։

ՀԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական հանձնաժողովը հաճախ է անդրադառնում սոցիալիստական սեփականության պահպանության հարցերին և այդպիսի պահանջ է ներկայացնում նաև շրջանային ու քաղաքային կուսհանձնաժողովներին։

Կուսհանձնաժողովների մտահոգության գլխավոր առարկան միշտ էլ եղել ու մնում են կուսշարքերի անաղարտությունը, կուսկազմակերպությունների ակտիվության ու մարտունակության բարձրացումը, նրանց միաձուլությունը։



Նրանք կուսկազմակերպությունների հետ միասին պետք է բացառեն անարժան մարդկանց մուտքը կուսշարքերը և, մյուս կողմից, կուսշարքերից վտարեն բոլոր նրանց, ովքեր իրենց սխալ վարքագծով և գործելակերպով արատավորում են կոմունիստի վեհ կոչումը, կոպտորեն խախտում կուսակցության կանոնադրությունը և կոմունիստական բարոյականության նորմերը։

Այդ դժվարին, սակայն նաև լուրջ ու կարևոր գործում, ցավոք, երբեմն նկատվում են կոպիտ սխալներ ու վրիպումներ։ 1983 թ. հուլիսին Երքաղսովետի ճարտարապետական-հատակագծման գլխավոր վարչության սկզբնական կուսկազմակերպությունը և Սպանդարյանի կուսշրջկոմը կուսշարքերը որպես թեկնածու են ընդունում ինժեներ Ա. Բաղդասարյանին, որը մի քանի ամիս անց մերկացվում է կաշառակերության մեջ և վտարվում կուսակցությունից։

Ոչ օրգանական նյութերի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի բաժանմունքի կուսկազմակերպությունը կուսակցության շարքերը որպես անդամության թեկնածու է ընդունում Լ. Մանուկյանին, և այդ որոշումը հաստատում է Լենինյան կուսշրջկոմը։ Այդ անձնավորությունն ունեցել է երկրորդ աշխատանքային գրքույկ, որով աշխատանքի է անցել քիմիական ռեակտիվների գործարանում որպես արտադրամասի վարպետ։ 1984 թ. նա մերկացվում է սոցիալիստական սեփականության հափշտակման փորձ կատարելու մեջ, ապա դատվում և վտարվում կուսշարքերից։

Լենինականի լոկոմոտիվային դեպոյի էլեկտրաքարշերի շահագործման տեղամասի կուսկազմակերպությունը, պատշաճ կերպով չուսումնասիրելով Ս. Հովհաննիսյանի հատկանիշները, նրան ընդունում է կուսթեկնածու, իսկ քաղաքային կոմիտեն համաձայնում է այդ որոշման հետ։ 1984 թ. հունվարին նա մերկացվում է քրեական հանցանք կատարելու համար, դատվում ու դուրս է մնում կուսշարքերից։ 1984 թ. կուսակցությունից վտարվել է Երևանի մսի կոմբինատի մեքենավար, կուսանդամության թեկնածու Ա. Դավթյանը այն բանի համար, որ կեղծիքներ էր կատարել իր փաստաթղթերում և թաքցրել նախկինում դատված լինելը։

Սխալ է նաև այն պրակտիկան, երբ առանձին կուսկազմակերպություններ և քաղկոմ-շրջկոմներ, խախտելով ՍՄԿԿ կանոնադրության պահանջները, միշտ չէ, որ խստագույն պատասխանատվության են ենթարկում ոչ լիարժեք և ոչ օբյեկտիվ կուսակցական երաշխավորագրեր տվող կոմունիստներին։

Կոմունիստական կուսակցության ուժը ոչ միայն նրա միասնության և համախմբվածության մեջ է, այլև նրանում, որ նա մշտապես իր շարքերը մաքրում է անարժաններից։ Մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները, առաջնորդվելով ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումներով, նկատելիորեն խստացրել են պահանջկոտությունը կոմունիստների նկատմամբ։ Իսկ երբ նրանցից ոմանք սխալ վարքագիծ են դրսևորում և արատավորում են կոմունիստի վեհ կոչումը, ապա, որպես կանոն, նրանց նկատմամբ կիրառվում են ՍՄԿԿ կանոնադրությամբ նախատեսված պատժի միջոցները՝ ընդհուպ մինչև կուսշարքերից վտարելը։ 1984 թ. տարբեր արարքների ու զանցանքների համար մեր հանրապետության կուսկազմակերպությունները վտարել են մի քանի հարյուր մարդ։ Կուսշարքերից վտարվածների ավելի քան 85 տոկոսը խստագույն պատիժ է ստացել դատվածության համար։ Կար ժամանակ, երբ առանձին սկզբնական կուսկազմակերպություններ, խախտելով ՍՄԿԿ կանոնադրության պահանջները, զանազան չհիմնավորված պատճառաբանություններով կուսշարքերից չէին վտարում դատված կոմունիստներից ոմանց։ Իսկ քաղկոմ-շրջկոմները միշտ չէ, որ շտկում էին նրանց սխալը։ Այժմ ՀԿԿ Կենտկոմի միջամտությունից ու խստագույն դիտողությունից հետո ՍՄԿԿ կանոնադրության պահանջներից կատարվող այդ կարգի շեղումները բացառվում են։

Սակայն դարձյալ լուրջ խորհրդածության տեղիք է տալիս այն հանգամանքը, որ զգալի թվով սկզբնական կազմակերպություններ դեռևս բավարար չափով մարտունակ չեն, լրջորեն չեն հետևում, թե ինչպես են կոմունիստները կատարում կուսակցության կանոնադրության, սովետական օրենքների, կո-

մունիստական բարոյականության, սովետական ապրելակերպի նորմերն ու պահանջները։ Կոմունիստների անձնական գործերի ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ նրանց կանոնադրական խախտումներն ավելի շատ բացահայտվում են ոչ թե սկզբնական կազմակերպությունների, այլ վերադաս կազմակերպությունների ու վարչական մարմինների կողմից։ Որոշ կազմակերպություններում և կոմիտեներում դեռևս հաղթահարված չէ լիբերալիզմի և ներողամտության հոգեբանությունը, մանավանդ երբ խոսքը վերաբերում է այս կամ այն աստիճանի ղեկավար աշխատողին։ 1983 թ. վերջերին Երևանի Նորաձևության տան գլխավոր ինժեները և մի քանի այլ աշխատողներ կատարել են սոցիալիստական սեփականության մեծ չափերի հասնող հափշտակություն, որի համար ենթարկվել են քրեական պատասխանատվության։ Սակայն ձեռնարկության դիրեկտոր Ռ. Օգանեզովան, որի թողտվության պատճառով տեղի էր ունեցել այդ հանցագործությունը, ոչ մի պատասխանատվություն չկրեց։ ՀՍՍՀ թեթև արդյունաբերության մինիստրությունը նրան ազատեց զբաղեցրած պաշտոնից ըստ նրա դիմումի և անմիջապես տեղավորեց աշխատանքի ավելի բարձր աշխատավարձով, իսկ Սպանդարյանի կուսշրջկոմը չքննարկեց նրան կուսակցական տույժի ենթարկելու հարցը։

ՀԿԿ Կենտկոմի հանձնարարությամբ թեթև արդյունաբերության մինիստրության աշխատանքի գիտական կազմակերպման և կառավարման կենտրոնի սկզբնական կուսկազմակերպությունը և Լենինյան կուսշրջկոմն անդրադարձան Ռ. Օգանեզովային պատասխանատվության ենթարկելու հարցին և նրան հայտարարեցին խիստ նկատողություն՝ գրանցելով կուսակցական հաշվառման քարտում։ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն, քննարկելով այդ հարցը, նշեց թեթև արդյունաբերության մինիստրության կոլեգիայի և Սպանդարյանի կուսշրջկոմի ոչ սկզբունքային մոտեցումը Ռ. Օգանեզովայի նկատմամբ, նրանց առաջարկվեց խստագույն պահանջկոտություն դրսևորել ղեկավար կադրերի նկատմամբ։

Մինչև վերջերս լայնորեն տարածված էր այն սխալ պրակտիկան, երբ տարբեր բնույթի խախտումներ կատարած ղեկավար աշխատողների անձնական գործերը, որպես կանոն, քննարկվում էին անմիջապես քաղկոմ-շրջկոմներում, դրանով իսկ շրջանցվում էր սկզբնական կուսկազմակերպությունը։ Արտաքնապես դա անմեղ թվացող հարց է, սակայն իրականում սահմանված կարգից կատարվող շեղումները մեծապես զցում են կուսակցական տույժերի դաստիարակչական նշանակությունը, չեն նպաստում քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը, կոմունիստների, ղեկավար կադրերի ճիշտ դաստիարակությանը։

ՍՄԿԿ կանոնադրությամբ սահմանված է, որ գոյություն ունի մեկ կարգապահություն՝ բոլոր կոմունիստների համար, անկախ նրանց ծառայություններից և զբաղեցրած պոստերից։ Կոմունիստ ղեկավարների անձնական գործերը պետք է քննարկվեն սկզբնական կուսկազմակերպություններում։ Այդ կարգի խախտումը դիտվում է որպես կուսակցական դեմոկրատիայի, միասնական կուսակցական կարգապահության սկզբունքի խախտում։ Շատ քաղաքային ու շրջանային կոմիտեներ պատշաճ հետևություն են արել այդ որոշումից, սակայն հին սովորության ուժը դեռևս լիովին հաղթահարված չէ։ Առավել անհանդուրժելի է, երբ որոշ քաղկոմ-շրջկոմներ նույնիսկ մարդկանց կուսշարքերից են վտարում՝ առանց նախապես նրանց հարցը քննարկելու սկզբնական կուսկազմակերպություններում, առանց տվյալ կազմակերպության ու կոմունիստների կարծիքը հաշվի առնելու։ Այդպիսի փաստեր կան ՀԿԿ Երքաղկոմի և Լենինյան շրջկոմի աշխատանքի պրակտիկայում։

Իսկ ՀԿԿ Արարատի, Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Կամոյի անվան, Արթիկի շրջկոմները առանձին ղեկավար աշխատողների ենթարկում են կուսակցական պատասխանատվության՝ շրջանցելով սկզբնական կազմակերպություններին։ Դրանով իսկ նրանք շարունակում են անցյալի սխալ պրակտիկան։

Արտադրության նկատմամբ կուսակցական ղեկավարության իրականացման արդյունավետ միջոցներից մեկը ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող կուսակցական հանձնաժողովների աշխատանքն է։ Այդ հանձնաժողովների արդյունավետությունը շատ բանով պայմանավորված է կուսակցական կոմիտեների կողմից նրանց գործունեությանը ցույց տրվող աջակցությամբ, նրանց նախաձեռնության և ակտիվության զարգացմամբ։ Երևանի 26 կոմիսարների անվան շրջանում վերջերս կատարած ուսումնասիրություններից պարզվեց, որ կուսշրջկոմի և կուսակցական կոմիտեների հետևողական ջանքերի շնորհիվ մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտում, «Երարդչին» տրեստում, էլեկտրալամպերի գործարանում և մի քանի այլ կազմակերպություններում կուսհանձնաժողովները լրջորեն վերահսկում են ադմինիստրացիայի գործունեությունը, զգալիորեն նպաստում պլանային և աշխատանքային կարգապահության ամրապնդմանը և ղեկավար կադրերի պատասխանատվության բարձրացմանը։ Դրա հետ մեկտեղ մի շարք կազմակերպություններում (տեղական արդյունաբերության մինիստրության գիտաարտադրական միավորում, «Դինամո» սպորտընկերության կարի արտադրանքի ֆաբրիկա, ավտոբեռնիչների գործարան, թեթև արդյունաբերության մինիստրության շինարարական նորոգման վարչություն և այլն) այդ հանձնաժողովներն անգործության են մատնված։ Մեր պահանջով կուսշրջկոմն այժմ միջոցներ է ձեռնարկում նրանց գործունեությունը բարելավելու համար։ Ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովների աշխատանքը պետք է մշտապես լինի կուսհանձնաժողովների ուշադրության կենտրոնում։

ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը խստագույնս քննադատեց աշխատանքի գրասենյակային, թղթային ոճը, կտրվածությունը տեղերից, տեղական կուսակցական կազմակերպություններից, նրանց հոգսերից ու գործերից։ Թղթամոլությունը, ձևականությունը, նիստերով ու խորհրդակցություններով չափից ավելի հրապուրվելը, պատշաճ վերահսկողության և կատարման ստուգման բացակայությունը բնորոշ են նաև մեր պետական ու տնտեսական ապարատի շատ օղակների համար։ Այժմ, երբ մեր կուսակցությունը, կոմունիստների հզոր բանակը համակողմանիորեն նախապատրաստվում է ՍՄԿԿ XXVII համագումարին, ողջ սրությամբ ծառանում է աշխատանքի լենինյան ոճի արմատավորման խնդիրը։ Դրա պատշաճ լուծման գործում վճռական դեր է խաղալու նաև կուսակցական արդյունավետ վերահսկողությունը։ Քաղաքային և շրջանային կոմիտեներին առընթեր կուսակցական հանձնաժողովները այդ պահանջների ոգով էլ պետք է ծավալեն իրենց գործունեությունը։ Նրանց պարտքն է միշտ հիշել ՍՄԿԿ ապրիլյան պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովի առաջադրած հետևյալ դրույթը. «Ստուգել պետք է, վերահսկել անհրաժեշտ է, և ամեն մի ստուգում պիտի գործնական օգուտ տա, գործի շահերին ծառայի»։

## Մեծ հաղթանակի տարեգրության էջերից

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

**Գ. ԱԼԵՔՅԱՆ**

ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐԻՆԵՐԻ ՀԵՌԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԻՑ, երբ հետադարձ հայացք ենք ձգում գերմանական ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի տարած փառապանծ հաղթանակին, ավելի պարզորոշ է դառնում դրա համաշխարհային պատմական նշանակությունը։

Սովետական ժողովուրդը ռազմաճակատում թե թիկունքում հաղթահարեց շատ դժվարություններ, հանդես բերեց չտեսնված համառություն և տոկունություն, գործեց առասպելական սխրանքներ ու անօրինակ քաջագործություններ, հաղթեց ուժեղ ու ամբարտավան թշնամուն։ Այդ գործում արժանի ավանդ ներդրեց նաև լենինյան կոմերիտմիությունը։ Նա ռազմաճակատում և թիկունքում դարձավ կոմունիստական կուսակցության հավատարիմ օգնականն ու հուսալի ռեզերվը, պատվով կատարեց նրա բոլոր առաջադրանքները։

Պատերազմի լուրը փոթորկեց նաև Սովետական Հայաստանի երիտասարդության, կոմերիտականների հայրենասիրական ոգին։ Նրանք անհուն վրեժով լցվեցին գերմանաֆաշիստական զավթիչների հանդեպ և կուսակցության կոչով ոտքի ելան հայրենիքը պաշտպանելու համար։ Բավական է ասել, որ պատերազմի առաջին հինգ-վեց ամիսներին զորակոչվեցին և կամավոր բանակ մեկնեցին Երևանի Սպանդարյանի, Կիրովի (ներկայիս Մյասնիկյան) շրջանների, Լենինականի, Կիրովականի և մի շարք գյուղական շրջանների կոմերիտականների հիսուն տոկոսը, ՀԼԿԵՄ Երևանի Կիրովյան շրջկոմի 41 անդամներից 32-ը, Էջմիածնի շրջկոմի 27 անդամներից 22-ը, Երևանի, Լենինականի, Արտաշատի, Ղափանի և 12 այլ շրջանների կոմերիտական սկզբնական կազմակերպությունների քարտուղարների մեծ մասը։

ՀԼԿԵՄ Կենտկոմը և քաղկոմ-շրջկոմներն ակտիվորեն օգնեցին զինվորական կոմիսարիատներին, ժամանակին ապահովեցին կարմիր բանակի զորակոչերը և պաշտպանության ժողկոմատի ու Անդրկովկասի ռազմական օկրուգի բոլոր կարգադրերի անթերի կատարումը։ 1942 թ. ծանր օրերին, երբ դաժան մարտեր էին մղվում Ստալինգրադում, և թշնամին մոտեցել էր Կովկասյան լեռնաշղթային, կամավորների նորանոր ջոկատներ մեկնեցին Կովկասյան ռազմաճակատ։ Վեց ամսվա ընթացքում ՀամԼԿԵՄ Կենտկոմի և պաշտպանության ժողկոմատի որոշմամբ անցկացվեց երեք մոբիլիզացիա, և տրված առաջադրանքը կատարվեց ժամանակին։ Պարաշյուտային-դեսանտային զորամասերում ծառայելու համար Հայաստանից մեկնեցին 1.759 կոմերիտականներ ու երիտասարդներ, 22 կոմերիտական ղեկավար աշխատողներ, իսկ 4.584 աղջիկներ ծառայության գնացին հակաօդային քիմիական պաշտպանության միավորումներ։

Հայրենական պատերազմի տարիներին մեր հանրապետությունից կարմիր բանակ զորակոչվեցին և կամավոր մեկնեցին 78.555 կոմերիտական և կոմերիտուհի։ Եթե այդ թվին ավելացնենք նաև 1939 և 1940 թվականներին զորակոչված 15.127 կոմերիտականներին, որոնք մասնակցեցին պատերազմին, ապա միայն նրանցով կարելի էր կազմել ինը դիվիզիա կամ համազորային մեկ բանակ[1]։

[1] ՄԼԻ Հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 48, ց. 29, գ. 319, թ. 29 և 30։



Սովետական բազմազգ ժողովուրդների ներկայացուցիչների հետ միասին ռազմաճակատներում իրենց քաջագործություններով աչքի ընկան նաև հայ ժողովրդի զավակները։ Բազմաթիվ են հայ մարտիկների ու հրամանատարների կատարած քաջագործությունները ռազմաճակատներում և պարտիզանական ջոկատներում։ Սովետական Միության հերոսի կոչման արժանացած 108 հայրենակիցներից 68-ը կոմերիտականներ էին։ Սովետական Միության կրկնակի հերոս դարձավ հայ խիզախ օդաչու, փոխգնդապետ Նելսոն Ստեփանյանը։ Հայ ժողովրդի զավակներից 70 հազար զինվորներ ու հրամանատարներ, որոնց մեծ մասը կոմերիտականներ էին, պարգևատրվեցին կառավարական շքանշաններով ու մեդալներով, իսկ Հայկական կրկնակի շքանշանակիր 89-րդ Թամանյան դիվիզիան, Հայաստանի լենինյան կոմերիտմիության սան, գեներալ Նվեր Սաֆարյանի ղեկավարությամբ Կովկասյան լեռներից մարտերով հասավ Բեռլին և մասնակցեց ֆաշիզմի ջախջախման վերջին գրոհներին։

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՍԿԶԲԻՑ կոմունիստական կուսակցությունը ձեռնարկեց խոշոր և բազմակողմանի աշխատանք թիկունքն ամրապնդելու, երկրի բոլոր ուժերն ու հնարավորությունները հայրենիքի պաշտպանությանը նվիրաբերելու համար։ Կատարելով ռազմական ժամանակվա հրատապ խնդիրները՝ կոմունիստական կուսակցությունը ղեկավարվում էր Վ. Ի. Լենինի այն դրույթով, որ «Երբեք չեն հաղթի այն ժողովրդին, որի մեջ բանվորներն ու գյուղացիներն իրենց մեծամասնությամբ իմացել, զգացել և տեսել են, որ իրենք պաշտպանում են իրենց, սովետական իշխանությունը՝ աշխատավորների իշխանությունը, որ պաշտպանում են այն գործը, որի հաղթանակը իրենց և իրենց զավակների համար կապահովի կուլտուրայի բոլոր բարիքներից, մարդկային աշխատանքի բոլոր ստեղծագործություններից օգտվելու հնարավորությունը» (ԵԼԺ, հ. 38, էջ 392)։

Արդյունաբերության և տրանսպորտի հաջող աշխատանքը, երբ կադրային բանվորների զգալի մասը մեկնել էր ռազմաճակատ և նրանց փոխարինելու էին եկել մեծ թվով պատանիներ ու կանայք, անհնարին էր առանց մասսայական պրոֆեսիայի բանվորական կադրերի պատրաստման և վերապատրաստման։ Կուսակցական, արհմիութենական, տնտեսական կազմակերպությունների հետ միասին այդ կարևոր գործին ձեռնամուխ եղավ կոմերիտմիությունը։ Բանվորական մասնագիտությունների կադրերի պատրաստումը կատարվում էր անմիջականորեն արտադրության մեջ, մեքենաների մոտ, փորձված վարպետների անմիջական ղեկավարությամբ։ Կադրերի որակավորման և ուսուցման գլխավոր ձևը ստախանովյան դպրոցներն էին, տեխնիկական ուսուցման խմբակները, նոր տեխնիկայի ուսումնասիրման դասընթացները։ Ելնելով ժամանակի խիստ պահանջներից՝ կոմերիտական կազմակերպություններն սկսեցին խորանալ արտադրության տեխնոլոգիայի և էկոնոմիկայի հարցերի մեջ, միջոցներ որոնել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, գյուտարարների ու ռացիոնալիզատորների շարժումը ծավալելու համար։

Կոմերիտական կազմակերպությունների առաջնահերթ գործերից մեկը բանվորական կադրերի պատրաստումն էր պետական աշխատանքային ռեզերվների համակարգում։ Հայրենական պատերազմի տարիներին կոմերիտմիության գործնական մասնակցությամբ ժողովրդական տնտեսության համար պատրաստվեցին 10.500 երիտասարդ բանվոր-մասնագետներ՝ մետաղագործներ, լեռնագործներ, կապավորներ, քիմիագործներ, երկաթուղայիններ և այլն։

1942 թ. ՀամԿ(բ)Կ Կենտկոմը և ՍՍՀՄ Ժողկոմխորհը հատուկ որոշում ընդունեցին հանրապետության ժողովրդական տնտեսությունը ռազմական ժամանակվա պահանջներով վերակառուցելու մասին։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և կառավարությունը մի շարք միջոցառումներ մշակեցին այդ կարևոր որոշումը կենսագործելու համար։ Կարճ ժամանակում հանրապետության էկոնոմիկան դրվեց ռազմական ռելսերի վրա և լիովին ծառայեց ռազմաճակատին։

Արտադրական պլանները կատարելու և գերակատարելու համար արդյունաբերության մեջ և տրանսպորտում լայնորեն ծավալվեց սոցիալիստական մրցությունը։ Հազարավոր երիտասարդներ սկսեցին աշխատել «Իր և ռազմա-

ճակատ մեկնած ընկերոջ փոխարեն» լոզունգով։ Բոլոր գործարաններում, ֆաբրիկաներում, հանքերում, տրանսպորտում, մանավանդ ռազմական արտադրանք թողարկող ձեռնարկություններում, ինչպես նաև կոլտնտեսություններում, սովխոզներում, մեքենատրակտորային կայաններում հաստատվել էին կայուն գրաֆիկներ, որոնց կատարումը խիստ պարտադիր էր բոլորի համար։

Հազարավոր երիտասարդներ լարված և եռանդուն աշխատանքով գերակատարում էին տրված առաջադրանքները, կատարում մեկուկես-երկու նորմա, իսկ եթե պահանջվում էր մնալ գործարանում, նրանք մնում էին առանց տրտնջալու, սիրով և պատրաստակամությամբ։ Երիտասարդության շրջանում ծնունդ առավ երկուհարյուրականների, երեքհարյուրականների, հինգհարյուրականների և նույնիսկ հազարականների հայրենասիրական շարժումը։ Բազմաթիվ երիտասարդներ, ձգտելով հավասարվել ճակատայինների հերոսություններին, սահմանեցին բարձր ռեկորդներ և արժանացան «Գվարդիականի» կոչման։ Շատ էին թիկունքի աշխատանքային հերոսները, որոնց անունները տեղ գտան Հայաստանի Լենինյան Կոմերիտմիության պատմության էջերում։ Ղափանի կոմերիտական հանքափոր Արամ Հարությունյանը 1942 թ. հունվարի 26-ին երկրին տվեց 1.020 տոննա հանքաքար։

Հանրապետության գործարաններում, ֆաբրիկաներում, հանքերում, շինարարական օբյեկտներում և երկաթուղային տրանսպորտում գործում էին 750 կոմերիտական-երիտասարդական ճակատային բրիգադներ, որոնք սիստեմատիկաբար արտադրական պլանները կատարում էին 200—300 տոկոսով և իրենց օրինակով խանդավառում բոլոր բանվորներին։ Իրենց գերազանց աշխատանքով հայտնի դարձան հատկապես ավտոնորոգման գործարանի էլեկտրաարտադրամասի կոմերիտական-երիտասարդական ճակատային բրիգադի անդամ Իսկուհի Թերզյանը և երիտասարդ վարպետ Թորգոմ Թորոսյանը, որոնք պլանները կատարում էին 200—300 տոկոսով, իսկ 1943 թ. սեպտեմբերի 10-ին, ի պատիվ ՀամԼԿԵՄ 25-ամյակի, նրանք սահմանեցին ավելի բարձր ռեկորդ։

ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, արդյունաբերության մեջ և տրանսպորտում կազմակերպչական ու մասսայական-քաղաքական հսկայական աշխատանք ծավալեցին ճակատային բրիգադներն ամրապնդելու, նրանց աշխատանքի փորձը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տարածելու համար։ Պլանային առաջադրանքների գերակատարման գործում խոշոր նշանակություն ունեցավ նաև ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը Մոսկվայի գնդիկավոր առանցքակալների գործարանի կոմերիտուհի Եկատերինա Բարիշնիկովայի բրիգադի աշխատանքի փորձի մասին։ Բրիգադը բաղկացած է եղել 6 հոգուց, կրճատել են 3-ով և ապահովել 6 մարդու համար սահմանված պլանի կատարումը։ Հետևելով այդ մեթոդին՝ Երևանի Լենինյան շրջանում 120 ճակատային բրիգադներում 900 երիտասարդներից 160-ը կրճատվեցին և տեղափոխվեցին այլ աշխատանքի։ Սպանդարյանի շրջանի 17 ճակատային բրիգադներում նույն սկզբունքով կրճատվեց և այլ արտադրամասեր տեղափոխվեց 136 բանվոր։

Անվանի մեքենավար Լունինի, ինչպես նաև Բարիշնիկովայի բրիգադի մեթոդներով էին գործում նաև մեր հանրապետության մի շարք գործարանների ու երկաթուղային տրանսպորտի հարյուրավոր աշխատողներ։ Նրանց մշտական օգնություն էին ցույց տալիս վաստակավոր երկաթուղայիններ, Լենինի շքանշանակիրներ Գարեգին Աբաջյանը, Թորգոմ Պողոսյանը, սոցիալիստական աշխատանքի հերոս Անդրանիկ Խաչատրյանը և ուրիշներ։

Ռազմաճակատին օգնելու գործում անմասն չմնացին նաև բարձրագույն ուսումնական հաստատությունների, տեխնիկումների սովորողները, պիոներ-դպրոցականները։ Նրանք մեծ խանդավառությամբ աշխատում էին շինարարական ջոկատներում, արդյունաբերական ձեռնարկություններում և գյուղատնտեսության մեջ։

ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ ՄԵԾ ՍԽՐԱՆՔՆԵՐ կատարեցին գյուղական աշխատավորները, գյուղի երիտասարդությունը։ Աշխատանքային ծանր պայմաններում, երբ ժամանակավորապես օկուպացված էին զգալի բարեբեր հողա-



տարածություններ, քիչ էին տրակտորները, բերքահավաքի մեքենաները, պակասում էր բանվորական ձեռքը, սովետական բանակը, ռազմածովային նավատորմը և քաղաքային բնակչությունն անընդմեջ ստանում էին սննդամթերք, իսկ արդյունաբերությունը՝ հումք։ «Հացը մեր զենքն է»— այսպիսի մարտական նշանաբանով էին աշխատում պատանիներն ու աղջիկները, կանայք, որոնց ուսերին էր դրված գյուղատնտեսական աշխատանքների, ռազմաճակատի մատակարարման հիմնական ծանրությունը։

Կուսակցությունը գյուղական կոմերիտական կազմակերպություններին վերաբերվում էր մեծ վստահությամբ, քաջալերում նրանց աշխատանքային էնտուզիազմը։ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Մ. Ի. Կալինինը սիստեմատիկաբար հանդես էր գալիս քաղաքի ու գյուղի երիտասարդության առջև, իր իմաստուն խորհուրդներով նրանց մղում խիզախության։

Հայաստանի կոմերիտմիությունը, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, իրենց շուրջը համախմբելով հանրապետության բոլոր երիտասարդներին, լայն շարժում ծավալեցին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու և բերքի կորուստները կանխելու համար։ Գյուղական կոմերիտականներն ու երիտասարդները ակտիվորեն մասնակցեցին ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՍՍՀՄ Հողժողկոմատի կողմից բարձր բերքի ստացման համար հայտարարված համամիութենական սոցիալիստական մրցությանը։ Հանրապետության կոլտնտեսությունների, սովխոզների, մեքենատրակտորային կայանների երիտասարդները, քաղաքային և շրջանային հիմնարկ-ձեռնարկությունների երիտասարդների, սովորողների, պիոներ-դպրոցականների աջակցությամբ, եռանդուն աշխատանք կատարեցին դաշտերը քարերից, մոլախոտերից մաքրելու, էրոզիայի դեմ պայքարելու, նոր հողերի յուրացման ասպարեզում։ Կենսագործելով ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը՝ ՀԼԿԵՄ Կենտկոմը և գյուղական ԼԿԵՄ շրջկոմները բոլոր կոլտնտեսություններում ստեղծեցին կոմերիտական սկզբնական կազմակերպություններ։ Հանրապետության 277 կոլտնտեսություններում, որտեղ չկային կուսակցական կազմակերպություններ, տնտեսությունների ողջ տնտեսական ու ռազմաքաղաքական աշխատանքները ղեկավարում էին կոմերիտական կազմակերպությունները։

Ճակատայիններին հավասարվելու նպատակով գյուղական երիտասարդները արշավի դուրս եկան բարձր բերքի համար։ Կոլտնտեսություններում և սովխոզներում ստեղծվեցին 1.648 բարձր բերքի կոմերիտական-երիտասարդական օղակներ, որոնք, ուսումնասիրելով ագրոտեխնիկայի կանոնները, բարձր կազմակերպվածությամբ անցկացրին ցանքը, մշակությունն ու բերքահավաքը։ Բարձր բերքի համար ծավալված սոցիալիստական մրցությունում հաղթող ճանաչվեց և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին արժանացավ Թալինի շրջանի Ջիթհանքով գյուղի (ներկայումս Անիի շրջան) կոլտնտեսության կոմերիտական կազմակերպությունը։ Նրա քարտուղարն էր բարձր բերքի կոմերիտական-երիտասարդական օղակի օղակավարուհի Օֆիկ Մադոյանը, որը 1944 թ. պարգևատրվեց Լենինի շքանշանով։ Բերքատվության բարձրացման և նոր հողերի յուրացման գործում իրենց բարձր ցուցանիշներով աչքի ընկան և ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով պարգևատրվեցին Հոկտեմբերյանի շրջանի Մեծ Շահրիարի (այժմ՝ Նալբանդյան) ՄՏԿ-ի տրակտորային բրիգադի բրիգադավար Նազանի Մարտիրոսյանը, Արթիկի ՄՏԿ-ի կոմերիտական-երիտասարդական բրիգադի բրիգադավար Սարգիս Զաքարյանը, Նոյեմբերյանի ՄՏԿ-ի բրիգադավար Վարշամ Թումանյանը և ուրիշներ։

Գյուղական երիտասարդության վրա մեծ պատասխանատվություն էր դրված նաև անասնապահության զարգացման պետական պլանները կատարելու ասպարեզում։ Անասնապահության ասպարեզում աշխատելու համար մոբիլիզացվեցին ավելի քան 16.132 կոմերիտականներ։ Այդ բնագավառում իրենց պարտականությունները ավելի հաջողությամբ էին կատարում և դրա զարգացման գործում ավելի լավ արդյունքների հասան Ստեփանավանի, Աղինի, Արթիկի, Թալինի, Նոր Բայազետի, Իջևանի կոմերիտական կազմակերպությունները։ 1943—1944 թթ. Հայաստանը անասնապահության բնագավառում ձեռք բերած նվաճումների համար արժանացավ Պաշտպանության պետական կոմի-

*րունակողն է։ Լենինի գործին հավատարմորեն ծառայելու և ֆաշիզմի ջախջախմանն ակտիվորեն մասնակցելու համար կոմերիտմիությունը նվաճեց սովետական մարդկանց անսահման սերն ու հարգանքը։ Կոմերիտմիության հեղինակության բարձրացման վառ վկայություններից էր պատերազմի տարիներին նրա շարքերի բուռն աճը։ Բանակում և թիկունքում ՀամԼԿԵՄ շարքերն ընդունվեցին 10,5 միլիոն երիտասարդներ, իսկ ՀամԿ(բ)Կ շարքերը՝ 2,5 միլիոն կոմերիտականներ։ Մեծ Հայրենականի տարիներին Հայաստանի լենինյան կոմերիտմիության շարքերն ընդունվեցին 79.271 պատանիներ ու աղջիկներ։ 1941 թ. հունիսից մինչև 1945 թ. սեպտեմբերը կուսակցության շարքերը որպես թեկնածու ընդունվեց 17.721 մարդ։ Նրանց 59,2 տոկոսը կոմերիտականներ էին[1]։*

*Հայրենական պատերազմի տարիներին ցուցաբերած ծառայությունների և պատանիներին ու աղջիկներին հայրենիքի նկատմամբ ջերմ հայրենասիրությամբ դաստիարակելու համար ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով ՀամԼԿԵՄ-ը պարգևատրվեց Լենինի շքանշանով։ Մոսկվայի, Լենինգրադի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Կիևի, Ստալինգրադի, Կրասնոդոնի և մի շարք այլ կոմերիտական կազմակերպություններ նույնպես պարգևատրվեցին կառավարական շքանշաններով։ Շատ ուշագրավ է, որ Սովետական Միության 11.603 հերոսներից 7.000-ը կոմերիտմիության սաներ էին, քառասուն տարբեր ազգերի երիտասարդներ։*

*...Այո՛, շատ թանկ գնով է ձեռք բերվել հաղթանակը։ Այսօր մեզ հետ չեն հազարավոր պատանիներ ու աղջիկներ, որոնք իրենց երիտասարդ կյանքով ապահովեցին պատմական հաղթանակը ֆաշիստական հրոսակների դեմ։*

*Հայրենական մեծ պատերազմը վաղուց դարձել է պատմություն, բայց հիշողությունը նրա մասին կենդանի է։ Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել։ «Այո՛, ինքը՝ պատերազմը անցյալ է դարձել,— ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովը Հայրենական մեծ պատերազմի վետերանների հետ ունեցած հանդիպման ժամանակ։— Բայց երբեք չի մոռացվի մեր բանակի ռազմիկների, պարտիզանների, թիկունքի աշխատավորների հայրենասիրական և ինտերնացիոնալ անմահ սխրանքը, որոնք պատմական հաղթանակ տարան կուսակցության ղեկավարությամբ»։*

*Սովետական ժողովուրդը, մեր գիտնականները, գրողները, բանաստեղծները, կոմպոզիտորները, նկարիչներն ու քանդակագործները, երիտասարդներն ու պատանի լենինյանները հավերժացնում են անմահ հերոսների հիշատակը։ Մեծ Հայրենականի կրակոտ օրերի ավանդույթները ներկայումս պահպանում են իրենց ուժը և մեծապես օգնում են երիտասարդ սերունդներին կոմունիզմ կառուցելու գործում։*

*Հիշելով այն հրաբորբ տարիներին երիտասարդների կատարած մարտական ու աշխատանքային սխրանքները՝ հպարտանում ենք, որ 80-ական թվականների երիտասարդ սերունդը հետևողականորեն շարունակում է կոմերիտմիության հեղափոխական, մարտական ու աշխատանքային ավանդույթները, նոր փայլուն էջեր գրում զարգացած սոցիալիզմի կառուցման գործում։ Մեր հանրապետության շուրջ 625 հազարանոց կոմերիտականների բանակը ոչ միայն ակտիվորեն մասնակցում է միութենական խոշոր կառույցների շինարարությանը, այլև իր մեծ ներդրումն արեց Արփա—Սևան ջրատարի, Երևանի մետրոպոլիտենի կառուցմանը, հանդես է գալիս հայրենասիրական մի շարք նախաձեռնություններով։*

*Այժմ, երբ իմպերիալիզմը բոլոր միջոցներով ձգտում է մարդկությանը նետել ահավոր անդունդի մեջ, շատ պատասխանատու խնդիրներ են դրվում նաև լենինյան կոմերիտմիության, ամբողջ երիտասարդության առջև։ Հայրենասեր պատանիներն ու աղջիկները, ջերմորեն պաշտպանելով հարազատ կուսակցության խաղաղասիրական քաղաքականությունը, իրենց անդուլ և ժրաջան աշխատանքով բարձրացնում են մեր սոցիալիստական հայրենիքի ռազմական և տնտեսական հզորությունը։*

*1 Տե՛ս ՄԼԻ Հայկական մասնաճյուղի կուսարխիվ, ֆ. 1, ց. 71, գ. 98—104, թ. 1։*

# ՀԱՅԿԱԿԱՆ ԴԻՎԻԶԻԱՅԻ ՈՒԿՐԱԻՆԱՑԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐԸ

(ՌԱԶՄԱՃԱԿԱՏԱՅԻՆ ՀՈՒՇԵՐ)

**Գ. ՍԱՀԱԿՅԱՆ**
Նախկին 409-րդ դիվիզիայի հրետանային գնդի կուսկազմակերպիչ

1944 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ ՍԿԶԲՆԵՐԻՆ, Կիրովոգրադի ազատագրումից հետո ստացած մի փոքր հանգստից և համալրումից հետո, Հայկական 409-րդ հրաձգային դիվիզիան կրկին մտավ մարտերի մեջ։ Այդ օրերին ռազմաճակատային մեր պատվիրակությունը Երևանից վերադարձավ դիվիզիա։ Կատաղի մարտեր էին մղվում Կիրովոգրադից արևմուտք՝ Նովոուկրաինկայի ուղղությամբ։ Դիվիզիայի հրամանատար էր նշանակվել գվարդիայի գեներալ-մայոր, մարտերում փառաբանված Եվստաֆի Պետրովիչ Գրեչանինը։

Երկրորդ օրը, առավոտյան գնացի դիվիզիայի քաղբաժին։ Նոր նշանակված հրամանատարին դեռ չէին հասցրել զեկուցել Հայաստան մեկնած պատվիրակության վերադարձի մասին։ Այդ կատարվեց միանգամից, երբ ես քաղբաժնի պետ, փոխգնդապետ Տիւլենևի հետ մտա հրամանատարի դիտակետը։

Ես համառոտակի նկարագրեցի հանրապետության աշխատավորության հերոսական աշխատանքը, ռազմաճակատին օգնելու համար նրանց գործադրած ջանքերը, պատմեցի մեզ ցույց տված ջերմ ընդունելության, կայացած հետաքրքրական հանդիպումների մասին։ Իմ պատմածները ոգևորեցին դիվիզիայի հրամանատարին։ Նա գոհունակությամբ իմացավ, որ մայիս ամսին Հայաստանից հատուկ պատվիրակություն կժամանի դիվիզիա։ Ապա նա դարձավ քաղբաժնի պետին.

— Փոխգնդապետ, այժմ մենք ծանր մարտեր ենք մղում։ Գերմանացիները կատաղի դիմադրություն են ցույց տալիս իրենց նահանջի ճանապարհին։ Կապիտանը և պատվիրակության մյուս անդամները պետք է հանդես գան մարտիկների առջև, պատմեն հայ ժողովրդի ջանքերի, հաղթանակի համար նրանց ներդրած ավանդի մասին։ Մշակեցեք ստորաբաժանումներում տարվելիք քաղաքական աշխատանքի համապատասխան միջոցառումներ։

Գեներալի խորհրդով պատվիրակության անդամները խրամատներում ու կրակային գծերում զինվորների հետ ունեցան ջերմ հանդիպումներ ու սրտամոտ զրույցներ, որոնք մեծ ոգևորություն առաջացրին հայ մարտիկների շրջանում, նրանց մղեցին անձնուրաց սխրանքների ու հերոսության։

Հետագա մի քանի օրերի ընթացքում դիվիզիայի գնդերը մարտերով մոտեցան և գիշերային հանկարծամարտով ազատագրեցին Պոմոշնայա երկաթուղային հանգուցային կայարանն ու Նովոուկրաինկա քաղաքը։ Դա դիվիզիայի հայ քաջորդիների առաջին մարտն էր իրենց նոր հրամանատար, ուկրաինական ժողովրդի քաջարի զավակ, գեներալ Գրեչանինի ղեկավարությամբ։ Գեներալը գոհ մնաց իր նոր մարտական ընկերներից՝ հայ սպաներից ու զինվորներից, իր հետ առաջին մարտերում դրսևորած խիզախության և վառ հայրենասիրության համար։

1944 թվականի մարտի 29-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով Նովոուկրաինկան և Պոմոշնայան ազատագրելու համար դիվիզիան պարգևատրվեց Բոգդան Խմելնիցկու երկրորդ աստիճանի շքանշանով։

Առջևում նոր, ավելի կատաղի ճակատամարտեր էին։ Գեներալ Գրեչանինի ղեկավարությամբ հայկական դիվիզիայի զորամասերը, մարտի վերջերին գետանցելով

Հարավային Բուգը, այնուհետև՝ Դնեստրը, Երկրորդ ուկրաինական ռազմաճակատի զորքերի կազմում ռազմական գործողությունները փոխադրեցին Մոլդավիայի տարածքը և սկսեցին նրա ազատագրումը: Այստեղ ևս ծանր բաժին ընկավ մեր դիվիզիային: Նրա հարձակման ուղիները անցնում էին Մոլդավիայի լեռներով և անտառներով: Գարնանային անձրևները, անանցանելի հովիտները, կպչուն ցեխը և ճանապարհների բացակայությունը դժվարացնում էին թշնամու հետապնդումը: Այն ժամանակ, երբ դիվիզիայի հետևակային զորամասերը գեներալ Գրեչանինի գլխավորությամբ բարձրացել էին լեռները, նրանցից տասնյակ կիլոմետրերով ետ էին մնացել հրետանին, զինամթերք, սնունդ և այլ ռազմական հանդերձանք մատակարարող ստորաբաժանումները:

Դիվիզիայի հրամանատարը կարգադրեց ետ մնացող ստորաբաժանումները 24 ժամում հասցնել հետևակին: Այստեղ գեներալին զարմացրեց հայ մարտիկների հնարամտությունը: Դիվիզիայի ավտովաշտի հրամանատար կապիտան Մկրտիչ Պատրիկյանը, լինելով Մուշի ծնունդ, հիշում էր իր մեծերի պատմածները Մշո լեռներում թուրքական հրոսակների դեմ սասունցիների կռիվների մասին: Մշեցի տղամարդը հրացանը ձեռքին լեռներում կռվել է, իսկ կանայք ու պատանիները շալակով մթերք են հասցրել նրանց: Իսկ ինչո՞ւ հիմա այդպես չվարվել:

Եվ նա, մոլդավացի կանանց, երիտասարդների ու իր ղեկավարած ավտովաշտի մարտիկների հետ, սնդամթերքի պարկերն ու փամփուշտի արկղիկները շալակած, լեռնային կածաններով բարձրանալով, ներկայանում է դիվիզիայի հրամանատարին: Այս դիպվածը և ամենօրյա մարտերում հայ ռազմիկների դրսևորած խիզախությունը գեներալին ավելի սերտորեն կապեցին հայ ժողովրդին և նրա անցյալի պատմությանը: Մարտերի դադարի, երթի կամ համեմատաբար հանգիստ ժամանակ իրեն շրջապատող սպաների և զինվորների օգնությամբ գեներալ Գրեչանինն սկսեց ծանոթանալ օտար բռնակալների դեմ հայ ժողովրդի մղած հերոսամարտերի պատմությանը: Հետագա ծանր մարտերից առաջ, երբ հարկ էր լինում զինվորներին քաջալերել, նա հաճախ կրկնում էր՝ Վարդան զորավարի նման անձնուրաց կռվենք, տղե՛րք: Օրավուր ավելի մեծացավ և խորացավ մարտիկների նվիրվածությունը, սերն ու հարգանքը շատ մարդասեր ու ինտերնացիոնալիստ, քաջ ու զորավարական արվեստին խորագիտակ իրենց հրամանատարի նկատմամբ:

Դիվիզիան գեներալ Գրեչանինի գլխավորությամբ մարտական փառքի մեծ ճանապարհ անցավ: 1944 թվականի գարնան վերջերին նա հարևան զորամիավորումներից առաջինը մարտերով հասավ սովետառումինական սահմանը, գետանցեց Պրուտը, մտավ Ռումինիայի հողը, մասնակցեց Յասսի—Քիշնևյան հայտնի օպերացիային: Այնուհետև, Ռումինիայի տարածքում հետապնդելով թշնամուն, դուրս եկավ ռումինահունգարական պետական սահմանը: Այդ մարտերում իր հարևան զորամիավորումների հետ նա մասնակցեց ռումինական Յասսի, Կետրեշալ, Բեկեու, Բեզեու, նավթարդյունաբերության խոշոր կենտրոն Պլոեշտի, Տրանսիլվանիայի Սինհայ, Առադ քաղաքների և հարյուրավոր գյուղական բնակավայրերի ազատագրմանը:

Դիվիզիան առավել ծանր մարտեր մղեց Հունգարիան գերմանաֆաշիստական լծից ազատագրելու կռիվներում: 1944 թվականի հոկտեմբերի առաջին օրերից 7-րդ գվարդիական բանակի կազմում 409-րդ դիվիզիան մարտական գործողություններ սկսեց Հունգարիայում. հարձակման հիմնական ուղղությունն էր նրա մայրաքաղաք Բուդապեշտը: Ճանապարհը դժվարանցանելի էր: Տիսսա գետը գերմանացիները վերածել էին պաշտպանական ամրացված գծի: Այն անցնելը մեզանից կխլեր մեծ ջանքեր և զոհեր: Մեր զորքերի հուժկու հարվածների տակ այդ օրերին գերմանաֆաշիստական հրոսակախմբերը մեծ արագությամբ ետ էին նահանջում դեպի Բուդապեշտ՝ ճանապարհին մեր դեմ ստեղծելով արհեստական դժվարություններ: Դիվիզիայի հարձակման գոտում էր Տիսսայի ափամերձ, արդյունաբերական կենտրոն և երկաթուղային խոշոր հանգույց Սոլնոկ քաղաքը:

Դիվիզիայի հրամանատարությունը որոշեց ստեղծել հետապնդման հատուկ ստորաբաժանում, որը գիշերային պայմաններում պետք է խորանար նահանջող գերմանական զորքերի թիկունքը, մյուս ստորաբաժանումներից շուտ մտներ Սոլնոկ և գրավեր Տիսսայի վրա եղած կամուրջները, որպեսզի գերմանացիները չհասցնեին պայթեցնել դրանք:



Դժվարին առաջադրանք էր: Այս այն դեպքն էր, երբ զինվորը վտանգավոր հանձնարարություն կատարելու համար պետք է ունենար ներքին մղում, դրան մասնակցելու անձնական ցանկություն: Այդ սկզբունքով էլ կազմակերպվեց այսպես կոչված հետապնդող խումբը, որի մեջ մտան մեքենայացված հետևակի մեկ գումարտակ, գնդացրային մեքենայացված մեկ վաշտ, հրետանային և հակատանկային մեկական դիվիզիոն: Խումբը հիմնականում համաքագրվեց լավագույն հայ մարտիկներից, փորձված հետախույզներից, դիպուկ հրաձիգներից:

Հետապնդող խմբի հրամանատար նշանակվեց հետևակային գնդերից մեկի գումարտակի հրամանատարը, իսկ նրա քաղգծով տեղակալ՝ մայոր Տրոմբովեցկին: Վերջինիս անսպասելի հիվանդության պատճառով նրա պարտականությունը դրվեց ինձ վրա: Դիվիզիայի հրամանատարի հետ միասին հանգամանորեն զրուցեցինք խմբում ընդգրկված սպաների և մարտիկների հետ, առաջարկեցինք՝ ովքեր վստահ չեն իրենց ուժերին, կարող են հրաժարվել: Սակայն ոչ ոք չհրաժարվեց:

Հոկտեմբերի 8-ի ուշ երեկոյան, մեկ անգամ ևս մարտական տեխնիկայի, հանդերձավորման վիճակն ստուգելուց հետո, գեներալ Գրեչանինը, համբուրվելով մեզ հետ, ասաց. «Բարին ձեզ հետ, բարի երթ, քաջ պահեցեք ձեզ, դիվիզիայի գնդերը կշարժվեն ձեր հետքերով»:

Տեղանքի քարտեզի վրա մեզ համար գծված էին այնպիսի ճանապարհներ, որոնցով անցնելիս մենք պետք է խուսափեինք հակառակորդի զորքերին հանդիպելուց: Բայց այդ չէր նշանակում, թե խումբը պետք է շարժվեր առանց նախազգուշական միջոցներ ձեռք առնելու: Ընդհանրապես, մենք շարժվում էինք մարտական առավելագույն պատրաստ վիճակով:

Առաջին հիսուն կիլոմետրն անցանք բարեհաջող: Երբ խոշոր բնակավայրերի մատույցներում, հետագա ուղին ճշգրտելու համար տրվում էր կարճատև կանգառ, վախվխելով մեզ էին մոտենում ու իրենց ծառայությունն առաջարկում հունգար գյուղացիները: Մեր մտավախությունը նրանց վերաբերմունքի նկատմամբ բարեբախտաբար չարդարացավ: Նրանք մեզ հայտնեցին, թե որ ճանապարհներն ու կամուրջներն են ականապատված, որ ճանապարհներով են նահանջում գերմանական վերջապահ զորքերը և որոնք են դիմադրության համար ամրացված հենակետերն ու բնակավայրերը: Գիշերային մթության մեջ, գյուղամիջյան ճանապարհներով, շրջանցելով քաղաքներն ու խոշոր բնակավայրերը, հունգարները մեզ առաջնորդեցին մինչև Սոլնոկ:

Կեսգիշերն անց էր, երբ մենք արդեն Սոլնոկի մատույցներում էինք: Հետախուզության տվյալներով այստեղ գերմանական զորքեր չպետք է լինեին: Առաջադրանքը կատարելու համար պետք էր, որ մենք ընթացքից մտնեինք քաղաք, տիրանայինք Տիսսայի կամուրջներին, զբաղեցնեինք հաղորդակցության գլխավոր ուղիները: Սակայն պետք էր ստուգել, համոզվել, թե արդյոք քաղաքում գերմանական զորքեր չկա՞ն:

Մեզ ուղեկցող հունգար բարեկամների հետ, փորձված հետախույզ Գևորգ Կարապետյանի ղեկավարությամբ, մի խումբ հետախույզներ ուղարկեցինք ստուգելու գերմանական զորքերի առկայությունը քաղաքում: Պարզվեց, որ Սոլնոկի հանգուցային կայարանում կանգնած զինվորական էշելոններից իջեցվում են մեծ քանակությամբ գերմանական մեքենայացված ու տանկային զորամասեր: Դա մեզ կանգնեցրեց բավական ծանր կացության առջև: Մեր և հակառակորդի նկատված ուժերի քանակական տարբերությունը շատ մեծ էր:

Իրավիճակի մասին ռադիոկապով հաղորդվեց դիվիզիայի շտաբ: Շուտով մեզ հայտնեցին, որ մեր զեկույցը չի համապատասխանում հետախուզության տվյալներին, որ Սոլնոկ քաղաքում գերմանական զորքերի կուտակում չի կարող լինել: Դիվիզիայի հրամանատարի անունից խմբի հրամանատարին և ինձ հանձնարարվեց անձամբ ստուգել իրադրությունը:

Լուսաբացը մոտենում էր: Դրությունը դառնում էր ճակատագրական: Ժամանակը չէր սպասում, հարկավոր էր ճիշտ որոշում ընդունել, հակառակ դեպքում մենք կարող էինք մեծ զոհեր տալ և պատասխանատու առաջադրանքի ձախողման պատճառ դառնալ:

Խումբը քաղաքի ծայրամասերի տների մոտակայքում գրավեց մարտական դիր-

քեր: Երկինքը շառագունում էր, երբ հետախույզների մի մեծ խմբի ուղեկցությամբ խմբի հրամանատարն ու ես թափանցեցինք Սոլնոկի երկաթուղային հանգույցը: Պարզվեց, որ հետախույզ Կարապետյանի տվյալները ճիշտ էին: Երկաթուղային կայարանի շրջակայքում մեծ եռուզեռ էր: Բեռնաթափվում էին տանկերով և ռազմական հանդերձանքով բարձված էշելոնները: Վերադառնալով անմիջապես զեկուցեցինք դիվիզիայի շտաբին: Ստացանք՝ նոր կարգադրություն՝ մեր անցած ճանապարհով 20 կմ ետ քաշվել Սոլնոկից, շրջվել դեպի արևմուտք, դիրքեր գրավել և սպասել դիվիզիայի հիմնական ուժերին:

Առանց ժամանակ կորցնելու, մեծ զգուշությամբ շարժվեցինք առաջադրված ուղղությամբ՝ մեզ հետ տանելով ճանապարհին մեր կողմից գերված հունգարացի չորս երիտասարդ սպաներին: Արևի ճառագայթները նոր էին սփռվել երկնակամարում, երբ հետախույզների և ավտոմատավորների մի մեծ խմբի ուղեկցությամբ մեր դեմ հանդիման դուրս եկան դիվիզիայի հրամանատար գեներալ Գրեչանինը և շտաբի գծով նրա տեղակալ գնդապետ Իվան Պրոկոպենկոն:

Գերված սպաների հարցաքննությունից պարզվեց, որ Սոլնոկ քաղաքում եղած գերմանահունգարական զորքերի առկայության վերաբերյալ մեր զեկույցը ճիշտ էր: Սակայն սպաները չասացին, որ մեզնից քիչ հեռու կա ուժեղ պաշտպանված գերմանական զինվորական օդանավակայան: Հունգարական սպաների հարցաքննությունից հետո դիվիզիայի հրամանատարը որոշեց բոլոր զորամասերը կենտրոնացնել Տիսսա գետի ելուստում գտնվող Ծանդոշելեշ բնակավայրի շրջակայքում, որից հետո անցնել Տիսսան և Սոլնոկը գրավել թիկունքից:

Ընդունված որոշմանը համապատասխան՝ հետապնդման մեր խումբն ու արդեն նրան միացած դիվիզիայի 675-րդ գունդը շարասյուներով սկսեցին շարժվել կենտրոնացման համար նշանակված վայրը և գերմանացիների համար անակնկալ դուրս եկան օդանավակայանի ամրացված պաշտպանական գծի վրա: Նկատելով, որ մեր զորամասերը շարժվում են առանց մարտակարգերի, գերմանացիները մեզ թողեցին մոտենալ խոցելի տարածության վրա և ամրացված կրակակետերից հրետանային ու գնդացրային ուժեղ կրակ բացեցին: Ընկանք ծուղակի մեջ:

Գեներալ Գրեչանինը, արագ կողմնորոշվելով ստեղծված իրադրության մեջ, հրամայեց գրոհել թշնամու կրակակետերի վրա, կոտրել հակառակորդի դիմադրությունը, գրավել օդանավակայանը: Մյուս կողմից, հանձնարարվեց գնդացրային վաշտին՝ փոքրիկ խմբերով թափանցել օդանավակայանի տարածքը և թույլ չտալ օդանավերը օդ բարձրանան:

Օդանավակայանը պաշտպանող գերմանական զորամասերը կատաղի դիմադրություն էին ցույց տալիս: Տեղատարափ կրակի տակ հնարավոր չէր գլուխ բարձրացնել: Ամենից շատ մեզ նեղում էր հակառակորդի հրետանային կրակը:

Այդպիսին էր իրադրությունը, երբ դիվիզիայի հրամանատարը դարձավ ինձ.

— Տվե՛ք ինձ հրետանավորներ:

Դիվիզիայի հրամանատարի հոգեվիճակն ինձ համար պարզ էր: Գերմանացիների դիմադրությունը ճնշելու համար, իրոք, անհրաժեշտ էր հրետանային ուժեղ կրակ, սակայն հրետանային մեր գունդը, հետևակային մյուս գնդերի ու մնացած ստորաբաժանումների հրետանին դեռևս ճանապարհին էին: Գրեչանինը մտադիր էր օգտագործել գերմանացիներից խլված կրակակետերի հրանոթները:

Ես հասկացա դիվիզիայի հրամանատարի պահանջը և հետևակային գնդի հրամանատարի տեղակալ Աղասի Պապիկյանի հետ գործի դրեցինք թշնամու լքած հակատանկային հրանոթները: Այդ պահին կրակ բացեցին արդեն տեղ հասած մեր հրետանային գնդի հրանոթները, և մարտի մեջ մտան հետևակային մյուս գնդերը: Օդանավակայանը գրավեցինք, այնտեղ գտնվող 140 մարտական և տրանսպորտային ինքնաթիռներից ոչ մեկը չկարողացավ օդ բարձրանալ:

Օդանավակայանի համար հանպատրաստից սկսված մարտը շատ ծանր հետևանքներ կունենար, եթե մեզ հետ չլիներ դիվիզիայի փորձառու հրամանատարը:

Օդանավակայանի գրավումից հետո, զարգացնելով հարձակումը, դիվիզիան մարտերով դուրս եկավ Տիսսայի ափը, և հոկտեմբերի 10-ի առավոտյան, թշնամու կրակի տակ նրա գնդերն սկսեցին գետանցումը և ձեռնարկեցին հենակետի ստեղ-



ծումը: Յոթ օր ու գիշեր դիվիզիայի ստորաբաժանումները ետ էին շպրտում գերմանական տանկերի և մեքենայացված հետևակի գրոհները, քայլ առ քայլ մեծացնում գրաված փոքրիկ հենակետը, որը հարձակման ելակետ պետք է դառնար Սոլնոկ քաղաքի ազատագրման համար: Հոկտեմբերի 16-ի լույս 17-ի գիշերը, ստացված կարգադրությանը համապատասխան, դիվիզիան արագ տեղափոխվեց Սոլնոկից 20 կմ արևելք ընկած Տերեկ-Սենտմիկլոշ քաղաքի կողմը: Այս հատվածում կենտրոնացնելով մեծ քանակությամբ թարմ ուժեր և խոշոր զրահատանկային միավորումներ՝ գերմանացիները նպատակ էին դրել այստեղ կռվող մեր զորքերը ետ մղել Սոլնոկի ստրատեգիական մատույցներից և ապահովել իրենց զորքերի և ռազմական տեխնիկայի էվակուացիան:

Մեր զորամասերը դեռևս չէին հասցրել ամրանալ իրենց նոր դիրքերում, երբ հակառակորդը սեպ խրեց դիվիզիայի 677-րդ հետևակային գնդի ու հարևան 243-րդ դիվիզիայի միջև և «Վագր» տանկերին ուղեկցող մեքենայացված մեծաքանակ հետևակի ջոկատներով խորացրեց այն: Սկսվեց կատաղի և անհավասար ճակատամարտ: Բայց հակառակորդի հետագա առաջխաղացման բոլոր փորձերը խափանվեցին: Մինչև հոկտեմբերի 20-ը գերմանացիները չկարողացան հաղթահարել մեր և հարևան դիվիզիաների դիմադրությունը և հասնել տակտիկական որևէ հաջողության:

Սակայն հոկտեմբերի 20-ի լուսաբացին նրանց հաջողվեց շոշափել մեր մարտակարգերի թույլ օղակը: Դիվիզիայի ձախ թևում գործում էր այդ ժամանակ արդեն մեզ դաշնակից Ռումինիայի հետևակային 2-րդ դիվիզիան: Հենց այստեղ էլ հակառակորդը կենտրոնացրեց տանկային խոշոր ուժեր և անցավ հարձակման: Ռումինացիները չկարողացան երկար դիմադրել և սկսեցին ետ քաշվել: Հակառակորդը թիկունքից շրջանցեց մեր և հարևան 243-րդ դիվիզիայի դիրքերը և, դուրս գալով Մեզետուր ու Տուրկեև քաղաքների մատույցները, օղակեց մեզ:

Շրջապատման մեջ եղած ժամանակ ցերեկային մարտերում մեր զորամասերը ետ էին մղում հակառակորդի՝ ավիացիայի պաշտպանությամբ ուղեկցվող կատաղի գրոհները, իսկ գիշերը վերադասավորում էին ուժերը, ամրապնդում կրակակետերը, հոգին հանձնում զոհվածներին և կազմակերպում վիրավորների բուժումը:

Հոկտեմբերի 21-ին և 22-ին հակառակորդին հաջողվեց առանձին հատվածներում ընդհուպ մոտենալ մեր կրակակետերին: Դիվիզիայի ողջ հրամանատարական կազմը, քաղաքական ապարատի աշխատողները, գեներալ Գրեչանինի ղեկավարությամբ, շարքային մարտիկների հետ կողք-կողքի, մասնակցում էին մարտերին, անձնական օրինակով գրոհի տանում, հաղթանակի հավատ ներշնչում: Նաև դա էր պատճառը, որ հակառակորդի կատաղի գրոհները, ճիշտ է, նեղացնում էին շրջապատման օղակը, բայց չէին կոտրում պաշտպանվողների ոգին:

Առավելագույն պատասխանատվություն և ծանրաբեռնվածություն էր ընկած մեր հրետանավորների վրա: Նրանցով էր պայմանավորված շրջապատման մեջ գտնվող հազարավոր մարդկանց բախտը: Միայն նրանք կարող էին իրենց դիպուկ կրակով փակել հակառակորդի տանկերի ճանապարհը: Եվ մեր հրետանավորները այդ ծանր օրերին մեծ անձնվիրությամբ կատարեցին իրենց պարտքը:

Հոկտեմբերի 22-ին եղավ մի պահ, երբ ֆաշիստները բոլոր կողմերից սեղմեցին պաշարման օղակը, ճնշեցին 684-րդ հրաձգային գնդի դիրքերը, շարքից հանելով գումարտակներից մեկի կրակակետերը, տեղ-տեղ միրճվեցին նրա դիրքերը: Գնդի հրամանատարական կազմն ու քաղաքական աշխատողներն իրենց վրա վերցրին ծանրությունը, զինվորների գլուխ անցած կենաց ու մահու մարտեր մղեցին խրամատները լցված թշնամու դեմ: Դրությունը դառնում էր տագնապալի: Պետք էր շտապ գտնել ելքը...

Դիվիզիայի առանձին կործանիչ հակատանկային դիվիզիոնի հրամանատար կապիտան Ֆիլիպովիչը գեներալ Գրեչանինի կարգադրությամբ հակատանկային հրանոթներով ուղիղ նշանառությամբ զրահախոց հրկիզող արկերով այրեց գերմանական 10 տանկ և 8 զրահապատ մեքենա: Իրավիճակը փոխվեց:

Թշնամին համոզված, որ մենք թե՛ ֆիզիկապես, թե՛ բարոյապես այլևս դիմադրելու ուժ չունենք, հոկտեմբերի 23-ի առավոտյան, արկերի փոխարեն մեզ վրա սկսեց թափել թռուցիկներ, որոնցում ասվում էր. «Ձեզ համար ստեղծված է ծանր վիճակ:

Առաջարկում ենք դադարեցնել անիմաստ դիմադրությունը և հանձնվել, այլապես ձեր մարտակարգերը կճզմվեն տանկերով, և դուք ամբողջովին կոչնչացվեք: Ովքեր հանձնվեն առանց դիմադրության՝ կպահպանվի նրանց կյանքը»:

Այդ օրը մեր վիճակը, իրոք, հույժ ծանր էր: Կապը դրսի զորամասերի հետ կտրված էր: Զորամասերը շրջապատման օրերին ռազմամթերք և սննդամթերք չէին ստացել, արկերի և փամփուշտների պաշարը սպառվելու վրա էր: Կարգադրված էր աննպատակ ոչ մի փամփուշտ ու արկ չարձակել: Մարդկանց սնունդը դաշտում եփած բանջարեղենն էր, հատկապես՝ եգիպտացորենի հատիկները:

Չնայած դրան՝ մեր մարտիկներն ու հրամանատարները պահպանում էին ոգու կորովը: Դիվիզիայի հրամանատարը, նրա քաղաքական գծով տեղակալը, շտաբի և քաղբաժնի աշխատողները մշտապես մարտիկների կողքին էին: Խրամատներում ու հրետանային մարտկոցներում նրանց ներկայությունը ոգևորում և հուսադրում էր մարդկանց: Այդ պատճառով ոչ ոք չտատանվեց: Մեր զինվորներն իրենց մեջ ուժ գտան՝ մինչև վերջ դիմակայելու թշնամուն:

Այդ օրերին չէին քնում ո՛չ հրամանատարը, ո՛չ զինվորը: Իրադրությունը առանց բացառության, բոլորից պահանջում էր ֆիզիկական և բարոյական ուժերի մեծ լարում, ինքնատիրապետում, գլխավորը՝ հավատ սեփական ուժերի նկատմամբ, անկոտրում կամք: Այս պայմաններում քիչ դեր չխաղացին քաղաշխատողների մտերմիկ զրույցներն ու անհատական աշխատանքը մարտիկների առանձին խմբերի և առանձին մարդկանց հետ:

Հոկտեմբերի 23-ին դիվիզիայի հրամանատարը գնդերի և ստորաբաժանումների հրամանատարների և քաղաշխատողների հետ քննարկեց ստեղծված իրադրությունն ու ծրագրեց հետագա անելիքները: Նա կռահել էր թշնամու նպատակը, դրա համար որոշեց մինչև երեկո սպասել, եթե սպասվող օգնությունը չհասնի գիշերը, ապա ամեն գնով դիվիզիան դուրս հանել օղակումից:

Այդ օրվա երկրորդ կեսն ու երեկոն հանգիստ անցան: Թշնամին դադարեց օդից ռմբակոծումը, արկերի և ականների փոխարեն մեզ վրա թափեց թռուցիկներ: Մեզ հայտնի դարձավ, որ ֆաշիստները, մեր դրությունը համարելով անելանելի, մտածել էին, որ դժվար թե մենք փորձենք դուրս գալ շրջապատումից: Որոշել էին գիշերը հանգիստ տալ իրենց զորամասերին, որպեսզի լուսաբացին անցնեին ընդհանուր հարձակման: Բայց նրանք չհասցրին իրականացնել իրենց պլանը, որովհետև հեռատես Գրեչանինը գլխի էր ընկել և հարևան զորամիավորումների հրամանատարության հետ միասին որոշեցին օգտվել թշնամու սխալից՝ ստեղծված հանգիստ վիճակից, և կեսգիշերին, առանց աղմուկի, կազմակերպված ձևով իրենց զորքերը դուրս բերեցին կրակե օղակից:

Լուսաբացին, երբ 20 րոպե տևող հրետակոծությունից հետո, մեր դատարկ դիրքերի վրա սկսեցին գրոհել թշնամու տանկերը, մեր զորամասերն արդեն ոչ միայն դուրս էին եկել շրջապատումից, այլև հասցրել էին միանալ իրենց օգնության շտապող 7-րդ գվարդիական բանակի տանկային զորամասերին, որոնք լայն ճակատով և արընթաց հարվածով կովի մեջ մտան հանկարծակիի եկած հակառակորդի զորամասերի դեմ:

...Գեներալ Գրեչանինի ղեկավարությամբ հայկական դիվիզիան բազմաթիվ ահեղ ճակատամարտեր տվեց Հունգարիայի, Չեխոսլովակիայի, Ավստրիայի տարածքներում: Նա ազատագրեց Սլովակիայի մայրաքաղաք Բրատիսլավան և ստացավ «Բրատիսլավյան» անվանումը:

1945 թվականի ապրիլից դիվիզիան հիմնականում մարտական գործողություններ վարեց չեխոսլովակյան հողում և իր վերջին համազարկերով մասնակցեց Պրագայի ազատագրմանը:

Պատերազմն ավարտվեց:

1945 թվականի հուլիսի կեսերին դիվիզիան դուրս եկավ Պրագայից: Կրկին մենք անցանք այն վայրերով, ուր մասնակցել էինք մարտական գործողություններին, ուր թողել էինք մեր զոհված ընկերների շիրիմները:

Դիվիզիան անցավ Տաբոր, Գմյունդ, Խորն, Վիեննա, Դեր քաղաքներով և կենտրոնացավ Բալատոն լճից ոչ հեռու ընկած հունգարական Մոր քաղաքի շրջակայքում: Մի քանի օրվա հանգստից հետո 409-րդ հայկական հրաձգային դիվիզիան լուծարքվեց: Գեներալ մայոր Ե. Գրեչանինը նշանակվեց այլ դիվիզիայի հրամանատար...

---



# ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՊԼՅՈՒՐԱԼԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԺԳՆԱԺԱՄԸ

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ աննախադեպ սրման արդի պայմաններում կապիտալիստական հասարակարգի ջատագովները դիմում են զանազան տեսական հնարքների, գործի են դնում հոգեբանական պատերազմի նենգ միջոցները, սոցիալիստական երկրների դեմ կազմակերպում են ամենախսկական պրոպագանդիստական ինտերվենցիա: «Չխորշելով կեղծիքից ու զրպարտությունից,— նշված է ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշման մեջ,— բուրժուական պրոպագանդան ձգտում է վարկաբեկել սոցիալիստական կարգերը, խարխլել մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը»:*

*Այդ նպատակներին է ծառայում բուրժուական գաղափարախոսության և պրոպագանդայի բավականին լայնորեն կիրառվող զենքերից մեկը՝ «պլյուրալիստական դեմոկրատիայի» քարոզը, մի դեմոկրատիա, որը, իբր, բնորոշ լինելով կապիտալիստական հասարակարգին, վերջինիս արմատապես տարբերում է «տոտալիտար կոմունիստական ռեժիմներից»:*

*Հենց այս սոցիալ-դասակարգային նպատակն է առավել էականը, բնորոշը «պլյուրալիստական դեմոկրատիայի», ինչպես նաև պլյուրալիզմի գաղափարախոսության վրա խարսխվող «տնտեսական պլյուրալիզմի», «հավասար հնարավորությունների հասարակության», սոցիալիզմի «ազգային մոդելների», «պլյուրալիստական սոցիալիզմի» և բուրժուական սոցիոլոգիայում տարածված այլևայլ տեսությունների համար: Պլյուրալիզմի գաղափարախոսությունը կապիտալիստական հասարակության ներսում բուրժուազիայի դասակարգային իշխանությունը տեսականորեն արդարացնելու և քողարկելու միջոց է, իսկ արտաքին պրոպագանդիստական ծրագրերում՝ սոցիալիստական երկրների քաղաքացիների ապակողմնորոշման, սոցիալիզմի սոցիալ-տնտեսական նվաճումների և հոգևոր արժեքների վարկաբեկման գործիք:*

*Պլյուրալիստական տեսությունները արտաքուստ բավականին գրավիչ են, գիտականակերպ, քննադատական պաթոսով հագեցված: Չէ՞ որ բուն կապիտալի իրականությունը նույնպես արտաքուստ թողնում է «ազատ» ձեռներեցության, զանազան սոցիալական ուժերի «ազատ» բախման տպավորություն: Բացի այդ, բուրժուական գաղափարախոսներն ու պրոպագանդիստներն իրենց դասակարգային դիրքորոշումը, որպես կանոն, հմտորեն քողարկում են «օբյեկտիվության», վերդասակարգային մոտեցման մասին դատողությունների պաճուճանքով: Վերջապես, պլյուրալիզմը, իբրև գաղափարախոսություն, զանազան տեսական-աշխարհայացքային հիմնավորումների, մեթոդաբանական դրույթների մի համախումբ, առհասարակ ինքնին խիստ հեղհեղուկ է, խայտաբղետ: Ահա թե ինչու պլյուրալիստական դատողությունների կարելի է հանդիպել և՛ լիբերալների, և՛ պահպանողականների մոտ:*

*Պլյուրալիզմի «մոնիստական» էությունը ի հայտ է գալիս դրա դասա-*

դեմոկրատիզմը, պառլամենտական պայքարի հնարավորությունները, «եվրոկոմունիզմի» տեսաբանները բնավ էության ամլացնում էին պրոլետարիատի ազատագրական պայքարը, կատարում աններելի տեսական-աշխարհայացքային զիջումներ։ Իրադարձությունների ընթացքը, սակայն, ի դերև հանեց նման պատրանքները։

Պլյուրալիզմի տեսաբանների, հատկապես քաղաքագետների հիմնական փաստարկներից մեկը ժամանակակից կապիտալիստական երկրներին բնորոշ բազմակուսակցականությունն է։ Այդ կուսակցությունների մեծ մասը, ճիշտ է. մասնակցում է քաղաքական կյանքին, ընտրական կամպանիաներին, բայց դրանց փոքրամասնությունն է միայն ներկայացված կառավարական մարմիններում։ Այդուհանդերձ, «պլյուրալիստական դեմոկրատիայի» ջատագովները համառորեն բազմակուսակցականությունը հակադրում են միակուսակցականությանը, վերջինս դիտելով իբրև իսկական դեմոկրատիայի և դրա դրսևորման սահմանափակում։ Ընդսմին, քանի որ բուրժուական գաղափարախոսները սոցիալիստական հասարակության քննադատության համար որպես օբյեկտ վերցնում են առավելապես մեր երկիրը, վերջինիս բնորոշ միակուսակցական կառուցվածքով, ապա դեմոկրատիան նրանք նույնացնում են կապիտալիզմի, իսկ դեմոկրատիայի բացակայությունը՝ սոցիալիզմի հետ։

Մինչդեռ, ճշմարտությունն այն է, որ բազմակուսակցականությունն ինքնին ամենևին էլ տվյալ պետական ռեժիմի դեմոկրատականության արտահայտությունը կամ ազատության երաշխիքը չէ, ինչպես որ փորձում են ներկայացնել բուրժուական հեղինակները։ Կուսակցություններն առհասարակ ձևավորվում են ոչ թե այս կամ այն անձնավորության կամքով, այլ օբյեկտիվորեն։ Կուսակցությունների գոյացումը բնապատմական պրոցես է, որտեղ կարևոր են թե՛ տվյալ երկրի, տվյալ ժամանակամիջոցի կոնկրետ պատմական առանձնահատկությունները, դասակարգային ուժերի փոխհարաբերությունները և թե՛ դասակարգերի կամ նրանց ներսում որոշակի խմբավորումների քաղաքական ղեկավարների, կազմակերպիչների անձնական հատկանիշները։ Օրինակ, կոնկրետ օբյեկտիվ հանգամանքները և դրանց գիտակցումը (կապված հատկապես շրջապատող միջավայրի ահագնացող ապականման հետ) ԳՖՀ-ում հինգ տարի առաջ պայմանավորեցին «կանաչների» կուսակցության ծնունդը, այն արդեն տեղ է գրավել բունդեստագում, «եվրոպառլամենտում», դարձել լուրջ քաղաքական ուժ։

Կուսակցությունները հատկապես բուռն կերպով գոյավորվում կամ վերանում են պատմության շրջադարձային պահերի ընթացքում։ Ասենք, Ռուսաստանում 1917 թ. փետրվարյան հեղափոխությունը, ինքնակալության տապալումը չէին կարող չանդրադառնալ կուսակցությունների կազմի վրա։ Ինքնաբերաբար վերացան միապետական կուսակցությունները՝ Ռուսական միապետական կուսակցությունը, միապետական-սահմանադրականները, օկտյաբրիստները և այլն։ Ի դեպ, կարելի՞ է արդյոք պնդել, թե ցարական Ռուսաստանում 70-ից ավելի կուսակցությունների առկայությունը խոսում էր հօգուտ ցարիզմի դեմոկրատականության։ Ճիշտ հակառակը, այդ փաստի ետևում բազմազգ երկիրն է, դրա բազմակացութաձև տնտեսությունը, անգամ իշխող դասակարգերի ներսում տիրող պառակտվածությունը, ազգային և սոցիալական անհավասարությունը։ Հատկապես 1905—1907 թվականների ռուսական առաջին հեղափոխության ընթացքում բնականոն ճանապարհով կազմավորվեցին ինչպես առաջավոր, հեղափոխական, այնպես էլ հետադիմական կուսակցություններ։ Հզոր լիցք ստացավ ազգային-ազատագրական շարժումը, Ռուսաստանի ծայրամասերում գոյացան բազմաթիվ ազգային կուսակցություններ։

Ինչ վերաբերում է բանվոր դասակարգի կուսակցություններին, ապա հեղափոխական պայքարի, այնուհետև սոցիալիզմի շինարարության պրակտիկան դարձավ դրանց անաչառ դատավորը։ Պատմության գիրկն անցան աշխատավոր մարդկանց պատահական «հովանավորները», իրենց «սոցիալիստական» հռչակած մի շարք կուսակցություններ (մենշևիկները, էսէռները, տրուդովիկները, ժողովրդական սոցիալիստները, նարոդնիկ-կոմունիստները և



այլն)։ Դրանց մի մասը ակնհայտորեն անցավ հակահեղափոխության ուժերի կողմը։ Միայն լենինյան բոլշևիկյան կուսակցությունը պատվով բռնեց քննությունը, գլխավորեց պրոլետարիատի և աշխատավորական զանգվածների ազատագրական պայքարը, ապա հաղթանակած հեղափոխության երկրում ստանձնեց նոր հասարակարգի շինարարության ղեկավարի դժվարին պարտականությունը։

Բոլշևիկյան կուսակցությունը, պատմության մեջ առաջին մարքս-լենինյան տիպի կուսակցությունը, միայնակ կազմակերպեց և գլխավորեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Դառնալով կառավարող կուսակցություն, բոլշևիկները կարիք ունեի՞ն արդյոք որևէ այլ կուսակցության։ Այս հարցը սկզբունքային նշանակություն ունի։ Չէ՞ որ մյուս սոցիալիստները՝ մենշևիկները և էսէռները արդեն վարկաբեկել էին իրենց երկիշխանության ընթացքում, հին սովետներում վարած իրենց դավաճանական քաղաքականության հետևանքով։ Հասկանալի է, սակայն, որ բոլշևիկները չէին կարող և չէին ձգտում իրենցից վանել բոլոր ձախ ուժերը։ Երիտասարդ սովետական հանրապետությունը ծանր վիճակում էր, և առաջնահերթ խնդիր էր նոր կառավարության սոցիալական լայն բազայի ապահովումը, աշխատավորության, հակակապիտալիստական բոլոր խավերի համախմբումը։ Ահա թե ինչու բոլշևիկյան կուսակցությունը սկզբնապես ձգտում էր կոալիցիոն կառավարության։

Այդպես էլ ստացվեց։ Սովետական պետության բարձրագույն օրգանում՝ սովետների Համառուսաստանյան Կենտգործկոմի կազմում նախնական շրջանում բոլշևիկներից բացի (62 մարդ) ներկայացված էին նաև ձախ էսէռները (29), մենշևիկ-ինտերնացիոնալիստները (6), ուկրաինական սոցիալիստները (3) և էսէռ-մաքսիմալիստները (1)։ Իսկ բուն կառավարության՝ Ժողկոմխորհի կազմում, ինչպես հայտնի է, 1917 թ. դեկտեմբերին ընդգրկվեցին ձախ էսէռներ. երկկուսակցական կառավարությունում ներկայացված էին 8 բոլշևիկ և 7 էսէռ։ Այնպես որ, մեր երկրում բազմակուսակցականությունն ամենևին էլ բացառված չի եղել։ Բոլշևիկները չեն էլ ձգտել միանձնյա իշխանության հանուն իշխանության։ Եվ եթե ի վերջո այդպես ստացվեց, դրա պատճառը մյուս կուսակցությունների դավաճանական, հակահեղափոխական, հակասովետական քաղաքականությունն էր։ Ձախ էսէռների համար, ինչպես հայտնի է, փորձաքար դարձավ Բրեստյան հաշտության հարցը։ Երբ 1918 թ. մարտի 15-ին սովետների IV արտակարգ համագումարը վավերացրեց այն, էսէռները, իբրև բողոքի նշան, դուրս եկան Ժողկոմխորհից։ Սովետական կառավարությունը դարձավ միակուսակցական։ Կենտգործկոմում և տեղական սովետներում բազմակուսակցականությունը որոշ ժամանակ պահպանվեց, սակայն մենշևիկների և էսէռների բացահայտ հակասովետական գործունեությունը հանգեցրեց այն բանին, որ Կենտգործկոմը 1918 թ. հունիսի 14-ին հեռացրեց դրանց իր կազմից և նույն բանը խորհուրդ տվեց անել նաև տեղական սովետներին (տեղերում դա տևեց մինչև 1923 թվականը)։ Ի վերջո, ձախ էսէռների 1918 թ. հուլիսյան զինված խռովությունը, ուղղված սովետական իշխանությունը տապալելուն, հանգեցրեց ձախ էսէռների կուսակցության տրամաբանական և անփառունակ վախճանին։

Այսպիսով, սոցիալիստական հեղափոխության առաջադրած խնդիրները, նոր հասարակարգի սոցիալական պրակտիկայի բազմաբնույթ պրոբլեմներն իրոք որ անաչառ դատավոր դարձան Ռուսաստանի քաղաքական կուսակցությունների, դրանց առաջնորդների ծրագրերի և վարքագծի համար։ Հեղափոխության նկատմամբ գիտական վերաբերմունքը, ինչպես շեշտեց Վ. Ի. Լենինը սովետների Համառուսաստանյան V համագումարում, 1918 թ. հուլիսի 5-ի իր զեկուցման մեջ, պահանջում է համադրել Ռուսաստանի բոլոր կուսակցությունների ամբողջությունը։ «Երբեք չպետք է մոռանալ, որ բոլոր կուսակցությունների հարաբերությունների վրա պետք է նայել նրանց ամբողջության մեջ։ Առանձին անձինք, առանձին խմբեր կարող են սխալվել, հնարավոր է, որ չկարողանան գտնել, չկարողանան բացատրել իրենց սեփական վարքագիծը, բայց եթե մենք վերցնենք Ռուսաստանի բոլոր կուսակցությունների գումարը

և նայենք դրանց հարաբերակցությանը՝ սխալ չի կարող լինել» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 36, էջ 606)։ Եվ, իրոք, սխալ չկատարվեց։ Բոլշևիկյան կուսակցությունը դիմացավ պատմության փորձություններին, ապացուցեց իր դրույթների ճշմարտացիությունը, սոցիալիստական շինարարությունը նաև առանց անհուսալի քաղաքական գործակիցների ղեկավարելու իր կարողությունը։

Պատմական նոր պայմաններում, նոր հանգամանքների առկայությամբ սոցիալիզմի ձևավորումը ուղեկցվեց և՛ բազմակուսակցական (Չեխոսլովակիա, ԳԴՀ, Վիետնամ և այլն), և՛ միակուսակցական (Կուբա, Մոնղոլիա) կառուցվածքով։ Այնպես որ, միակուսակցականությունն ամենևին էլ սոցիալիզմի գլխավոր հատկանիշներից չէ, ինչպես և բազմակուսակցականությունը լոկ կապիտալիզմի առանձնաշնորհը չէ։ Բնութագրականը, այսինքն՝ օբյեկտիվ օրինաչափությունն այս առումով այն է, որ ցանկացած սոցիալիստական երկրում անցումը նոր հասարակարգին և դրա բարեհաջող զարգացումը հնարավոր եղավ միմիայն կոմունիստական կուսակցության ուղղություն տվող գործունեության շնորհիվ։ Ինչպես հայտնի է, բազմակուսակցական սոցիալիստական երկրների այլ կուսակցություններն իրենց ծրագրերում ընդունում են կոմունիստական կուսակցության ավանգարդային դերը։

Պատահական չէ, ուրեմն, այն հանգամանքը, որ պլյուրալիզմի գաղափարախոսները, ինչպես և առհասարակ բոլոր «սովետաբանները», մեր երկրի ներքին պրոբլեմների «հոգացողությամբ» տառապող տեսաբանները զարմանալի միահամուռությամբ հարձակվում են հատկապես ՍՄԿԿ-ի ղեկավար դերի աճի մասին մարքս-լենինյան դրույթի վրա։

Եթե մեր երկրում լինեին հակամարտ դասակարգեր, հակամարտ սոցիալական խմբեր, ապա դրանց միջև պայքարը կդրսևորվեր նաև քաղաքական ոլորտում, կառաջանային կուսակցություններ, ըստ որում՝ օբյեկտիվորեն, այլ ոչ թե որևէ մեկի ցանկությամբ։ Սակայն նման բան տեղի չունի և չի կարող ունենալ. մեր երկրի բանվոր դասակարգը, գյուղացիությունը, մտավորականությունը, բոլոր կոլեկտիվները, սոցիալական բոլոր խավերը միավորված են ընդհանուր շահերով և գաղափարախոսությամբ։ «Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը,— ասված է ՍՍՀՄ սահմանադրության 6-րդ հոդվածում,— նրա քաղաքական սիստեմի, բոլոր պետական ու հասարակական կազմակերպությունների միջուկը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է։ ՍՄԿԿ-ն գոյություն ունի ժողովրդի համար և ծառայում է ժողովրդին»։ Իսկ այն «պլյուրալիզմը», որին ձգտում են մեր ներքին կյանքով այդքան «մտահոգված» բուրժուական գաղափարախոսները և արևմտյան հատուկ ծառայությունները, մեր երկրում զուրկ է որևէ հիմքից։

«Պլյուրալիստական դեմոկրատիան» չի շրջափում կապիտալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների, այլ առաջավոր կազմակերպությունների ու շարժումների վիճակը։ Գաղտնիք չէ, որ դրանց նկատմամբ կիրառվում են խտրականության բազմազան ձևեր, կազմակերպվում են վարկաբեկման և ահաբեկման կամպանիաներ։ Հատկապես կոմունիստական կուսակցությունների դեմ ԱՄՆ-ում, Անգլիայում, ԳՖՀ-ում, Կանադայում և կապիտալի այլ երկրներում ընդունված են մի շարք օրենսդրական ակտեր, որոնք աղաղակող հակասության մեջ են անգամ այդ երկրների սահմանադրություններում հռչակված քաղաքական իրավունքների և ազատությունների, գործող իրավական նորմերի և օրենքների հետ։

Հակադեմոկրատական գործողությունների հարցում յուրատեսակ ռեկորդ սահմանեց Մ. Թետչերի կառավարությունը։ Բավական է միայն հիշատակել ոստիկանական այն միջոցները և պրոպագանդիստական հարձակումը, որ պահպանողականների կառավարությունը կիրառում էր անգլիական ածխահատների հերոսական պայքարը ճնշելու, նրանց արհմիությունը և ընդհանրապես երկրում արհմիութենական շարժումը վարկաբեկելու, աշխատավորությանը ծնկի բերելու նպատակով։ Անցյալ տարվա ընթացքում «դեմոկրատական» Մեծ Բրիտանիայում ընդունվեցին մի շարք օրենքներ՝ ուղղված ոստիկանության իրավունքների ընդլայնմանը։

«Հավասար հնարավորությունների հասարակության» տեսության հիմնադրույթները ոչ մի քննադատության չեն դիմանում։ Կապիտալիստական ամենազարգացած երկրներն անգամ չեն ապահովում կանանց իրավահավասարությունը, էլ չենք խոսում ազգային և ռասայական խտրականության մասին։ Ամերիկյան աշխատավորուհիները տղամարդու հետ հավասար աշխատանք կատարելիս վարձատրվում են 30-ից 50 տոկոսով պակաս։ Ամերիկյան սևամորթների շրջանում գործազրկությունը երկու անգամ ավելի է, քան սպիտակամորթների շրջանում։

ԱՄՆ-ում ներկայումս շուրջ 35 միլիոն մարդ ապրում է չքավորության ընդունված մակարդակից ցածր պայմաններում, այսինքն՝ պաշտոնապես չքավոր են համարվում, իսկ հինգ միլիոն մարդ առհասարակ անօթևան է։ Հատկապես պրեզիդենտ Ռեյգանի օրոք ակնհայտ դարձավ «հավասար հնարավորությունների» իրական սատարը՝ հարուստներն ավելի հարուստ են դառնում, աղքատները՝ ավելի աղքատ։ Վերջին չորս տարվա ընթացքում ԱՄՆ-ում տարեկան մեկ միլիոն և դրանից ավելի եկամուտ ունեցողների թիվը կրկնապատկվել է՝ 4.414-ից հասնելով մինչև 8.408 մարդու։ Պետության հարկային քաղաքականությունը նույնպես անհավասար, անարդարացի պայմանների մեջ է դնում աշխատավորներին և կապիտալիստներին։ Իսկ սոցիալական օգնության զանազան ծրագրերի բացահայտ կրճատման քաղաքականությունը յուրօրինակ «սոցիալական գիլիոտին» է երկրի բնակչության զգալի մասի համար։ Այս ֆոնի վրա առնվազն անհամոզիչ հնչեցին «Երկրի դրության մասին» փետրվարի սկզբին Ռեյգանի ավանդական ուղերձի խոսքերը «հույսի և հնարավորությունների երկրորդ ամերիկյան հեղափոխության» մասին։

Անգլիայում հետևյալ փորձն են կատարել։ Հաշվառման են վերցրել 17 հազար նորածինների, յոթը տարի անց ուսումնասիրել են դրանց և պարզել, որ բանվորական ընտանիքների երեխաները ընդհանուր առմամբ իրենց զարգացման մեջ երկու տարով ետ են մնացել այսպես կոչված «միջին դասակարգի» երեխաներից. մասնավորապես, բանվորների երեխաների թվում 6 անգամ պակաս են եղել կարդալ իմացողները, և նույնիսկ 3 սմ-ով ցիչել են հասակի մեջ։ Ահա և «հավասար հնարավորությունները» գործողության մեջ։ Սոցիալական անարդարությունը անգամ ֆիզիոլոգիական հետևանքներ ունի։

«Տնտեսական պլյուրալիզմի» գաղափարները նույնպես զուրկ են գիտական լուրջ հիմքերից։ Իսկապես, եթե բաժնետիրական ընկերությունների փայատերերի թիվն աճում է, ապա դա ամենևին չի վկայում «ժողովրդական կապիտալիզմի» կամ տնտեսության ապամոնոպոլացման մասին, ինչպես փորձում են ապացուցել բուրժուական տեսաբանները։ Ընդհակառակն, փայատերերի թվի աճի հետևանքով հսկիչ ծրարը հայտնվում է ավելի փոքրաթիվ մարդկանց ձեռքին, հետևաբար առավել կարևոր հարցերի լուծման գործում վերջիններիս մոնոպոլիան ավելի որոշակի է դառնում։ Այսինքն, այդ կերպ իրականացվող տնտեսության «պլյուրալիզացումը» փաստորեն առավել մեծ կենտրոնացման է հանգեցնում, իրական իշխանությունը կենտրոնացնում խիստ փոքրաթիվ մոնոպոլիստների ձեռքում։ Ամենաարտառոցն այն է, որ բուրժուական կառավարությունը հաճախ «ժողովրդական կապիտալիզմի» անվան տակ մասնավոր անձանց է վաճառում ազգայնացված սեկտորին պատկանող ձեռնարկությունները, ինչպես, ասենք, անցյալ տարվա վերջին վարվեց անգլիական կառավարությունը, վաճառելով «Բրիտիշ տելեկոմ» պետական հեռախոսային կամպանիան։

Բաժնետիրական ընկերությունների և փայատերերի թվի աճը սոսկ արտաքուստ կարող է թվալ իբրև կապիտալի «ապամոնոպոլացման» միտում։ Այս երևույթը, ինչպես և կապիտալիստական հասարակության շատ այլ երևույթներ, խաբուսիկ է և քողարկում է գործի բուն էությունը։ Եթե, օրինակ, ԱՄՆ-ում այսօր շուրջ 25 միլիոն մարդ բաժնետոմսերի տեր է, ապա դրանց սոսկ երկու տոկոսը տիրում է բաժնետոմսերի ընդհանուր քանակի կեսին։

*Ավելացնենք նաև, որ այդ փայատերերի մեջ բանվորները և ֆերմերները միայն հինգ տոկոսն են կազմում։ Թեպետև, ինչպես նշվեց, ամերիկյան միլիոնատերերի թիվը կրկնապատկվել է, սակայն երկրի ազգային հարստությունը կենտրոնացված է փոքրաթիվ գերհարուստների ձեռքին. ներկայումս ամերիկյան բնակչության մեկ հարյուրերորդ մասն ութն անգամ ավելի մեծ ունեցվածքի տեր է, քան մնացած ամերիկացիների կեսը։ Նմանօրինակ թվեր կարելի է բերել կապիտալիստական այլ երկրների համար, թվեր, որոնք մեկնաբանության կարիք չեն զգում։*

*Բացահայտելով պլյուրալիզմի գաղափարախոսության գիտական և դասակարգային-աշխարհայացքային կողմերը, մենք չպետք է անտեսենք դրա հոգեբանական կողմը։ Բանն այն է, որ մոնոպոլիաների գերիշխանության կենտրոնացման, բուրժուական պետության տոտալիտարիստական միտումների, սոցիալական ինստիտուտների բյուրոկրատացման, արտադրական ձեռնարկությունների կառավարման ավտորիտար մեթոդների ուժեղացման պայմաններում ավանդական մասնավոր-ձեռնարկատիրական գործունեության զովքը, անհատական հաջողության հնարավորության հիմնավորումը, «ինքն իրեն ստեղծած մարդու» բարոյախոսական պատգամը, անշուշտ, բավականին գրավիչ են և ցանկալի կապիտալիստական հասարակության շատ ու շատ անդամների համար։*

*Պլյուրալիստական գաղափարները սնում են նաև կապիտալիզմին բնորոշ անհատապաշտական հոգեբանությունը։ Այդ գաղափարախոսությունը խոչընդոտում է բանվորներին իրենց տնտեսական և քաղաքական շահերի միասնությունն ըմբռնելու, համախմբվելու, արգելակում է առաջադիմական արհմիությունների և կուսակցությունների գործունեությունը։*

*Ի վերջո, եթե անգամ պլյուրալիզմը փորձում է հանդես գալ հասարակության անդամների սոցիալական հավասարության պահանջով, ապա ամենևին էլ կապիտալիստական հասարակարգը չէ այդ պահանջը կենսագործողը։ Իրական սոցիալական միատարրությունը, բոլոր քաղաքացիների, սոցիալական բոլոր խավերի իրավահավասարությունը, սոցիալական արդարությունը հատուկ են միայն սոցիալիստական հասարակարգին։*

*Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXVI համագումարը սոցիալական միատարրության խնդիրը ձևակերպեց իբրև զարգացած սոցիալիզմի շրջանակներում գործնականորեն լուծելի խնդիր։ Այս հարցը, անկասկած, մանրամասն կլուսաբանվի կուսակցության առաջիկա XXVII համագումարում։*

*Ռեալ սոցիալիզմը «պլյուրալիստական դեմոկրատիայի» պատվաստման որևէ կարիք չունի։ Սոցիալիզմն անբաժան է դեմոկրատիայից, քանի որ բուն սոցիալիզմը, իբրև հասարակական համակեցության ձև, ամենից առաջ մարդկանց ստեղծագործական ակտիվության, ինքնուրույնության արգասիքն է։ «Կուսակցությունը,— շեշտեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. մարտյան արտահերթ պլենումում ընկ. Մ. Ս. Գորբաչովը,— ներքին քաղաքականության արմատական խնդիրներից մեկը համարում է դեմոկրատիան, ժողովրդի սոցիալիստական ինքնավարության ամբողջ համակարգի հետագա կատարելագործումն ու զարգացումը»։ Հավասարության և դեմոկրատիայի հարցերը մեր հասարակության համար ոչ թե ինքնանպատակ են, ինքնարդարացման ինչ-որ ցանկությամբ թելադրված, ինչը բնութագրական է ժամանակակից բուրժուական գաղափարախոսներին և քաղաքագետներին, այլ բխում են սոցիալիստական քաղաքակրթության հետագա կատարելագործման անհրաժեշտությունից, նրա բուն էությունից։*

*Իրական սոցիալիզմը գործնականորեն է ապացուցում անհատի և հասարակության, սոցիալական բոլոր խավերի շահերի ներդաշնակման, հասարակության տնտեսական և սոցիալական զարգացման միասնության, ազգերի ծաղկման և մերձեցման, հասարակական կյանքի ինտերնացիոնալացման ճշմարիտ ուղին և դրանով իսկ հաստատում սոցիալիզմի ռեալ հնարավորությունների ու առավելությունները։*



# ՆՐԱ ԿՅԱՆՔԸ ՊԱՅՔԱՐ ԷՐ ՈՒ ԱՐԱՐՈՒՄ



ԴՐԱՍՏԱՄԱՏ ՏԵՐ-ՍԻՄՈՆՅԱՆ... Բարի և անմոռաց անուն: Ապրեց ընդամենը 42 տարի: Սակայն այդ տարիները իմաստալից են եղել ու խոր բովանդակությամբ հագեցած. ուսումնառություն՝ Թիֆլիսում և Կիևում, Ռուսաստանի հեղափոխական հորձանուտ, մարքսիստական աշխարհայացքի ձևավորում, մեծ Հոկտեմբերի բարիկադներ, մաքառման ուղիներ՝ Անդրկովկասում...

...Տասնյոթամյա պատանի էր, երբ զինվորագրվեց բոլշևիկյան կուսակցությանը: Իբրև լենինյան գվարդիայի զինվոր, մարտնչեց սովետական իշխանության հաստատման համար: Իր գիտակցական ողջ կյանքը անմնացորդ նվիրաբերեց մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդմանը, հարազատ ժողովրդի ազատությանն ու բարգավաճմանը, նրա մշակույթի, գիտության ու գրականության զարգացմանը, Սովետական Հայաստանի և սփյուռքի կապերի հաստատմանն ու ամրապնդմանը:

Դ. Տեր-Սիմոնյանի կյանքը անդադրում պայքար էր ու արարում, ազնվություն և նվիրում, համեստություն և խիզախում...

**Դրաստամատ Սարգսի Տեր-Սիմոնյանը** (1895—1937) ծնվել է Սպիտակի շրջանի Համամլու գյուղում, գյուղացու ընտանիքում: 1903-ին Տեր-Սիմոնյանների ընտանիքը տեղափոխվում է Թիֆլիս, որտեղ և սովորում է Դրաստամատը: 1912 թ. ավարտում է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը, ուր սովորել էր գերազանց առաջադիմությամբ և հրապուրվել աշակերտական դեմոկրատական խմբակների աշխատանքով: Ապա էքստեռն հանձնում է գիմնազիայի քննությունները և ընդունվում Կիևի առևտրական ինստիտուտի տնտեսագիտական ֆակուլտետը: Անշուշտ, նրա հայացքների ձևավորման վրա բարերար ազդեցություն է ունեցել հորեղբոր՝ անվեհեր հեղափոխական, «Հայ բանվոր հեղափոխական ասոցիացիայի» հիմնադիրներից Միսակ Տեր-Սիմոնյանի գործունեությունը: Ռուսաստանի արդյունաբերական կենտրոններից մեկում՝ Կիևում, Դրաստամատը կապվում է տեղի սոցիալ-դեմոկրատական, մարքսիստական խմբակների հետ, ջանասիրաբար ուսումնասիրում Կ. Մարքսի ուսմունքը, գիտական կոմունիզմի սկզբունքները: 1913 թ. նա ընդունվում է բոլշևիկյան կուսակցության շարքերը:

Բանվորական հեղափոխական միջավայրը, ուսանողական շարժումները քաղաքականապես հասունացրին երիտասարդ հեղափոխականին: Ուսումնառությանը զուգընթաց նա խորությամբ ուսումնասիրում է մարքսիզմի դասականների՝ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, նրանց հետնորդների, միջազգային բանվորական և կոմունիստական շարժման գործիչների՝ Կ. Լիբկնեխտի, Ա.

բոլշևիկյան բջիջներին: Դ. Տեր-Սիմոնյանը ջանադրաբար աշխատակցել է նաև «Նոր ուղի» բոլշևիկյան թերթին:

ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի որոշմամբ 1920-ի ապրիլին Դ. Տեր-Սիմոնյանն ուղարկվում է Հայաստան, ուր կոոպտացվում է Արմենկոմի կազմում: Ս. Կասյանի, Ա. Մելիքյանի մասնակցությամբ հիմք է դնում «Գյուղացու ձայնը» թերթին: ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտեն, որի քարտուղարը պրոֆեսիոնալ հեղափոխական Ստեփան Ալավերդյանն էր, բանվորներին, աշխատավոր զանգվածներին նախապատրաստում էր սոցիալիստական հեղափոխության: Ազատագրական պայքարի նշանավոր իրադարձություն էր 1920-ի մայիսյան հերոսական ապստամբությունը, որն ուրույն տեղ ունի Դ. Տեր-Սիմոնյանի կյանքում:

Հայաստանի հողը 1920-ին այրվում էր դաշնակցականների ոտքերի տակ: Աճում էր ժողովրդական հուժկու շարժումը: Ապրիլի 28-ին Ադրբեջանում հաղթանակում է սովետական իշխանությունը: Հերթը Հայաստանինն ու Վրաստանինն էր: 1920-ի մայիսմեկյան ցույցերը Հայաստանում աստիճանաբար վերածվում են քաղաքական ընդհարումների և ապստամբության:

Երևանում ցուցարարները, բոլշևիկների ղեկավարությամբ, մայիսի 1-ին տանում էին մարտական լոզունգներով պաստառներ, կարմիր դրոշներ: Աշխատավորների երթը ղեկավարում էին Արմենկոմի և Երևանի կոմիտեի անդամներ Ս. Ալավերդյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Ս. Մարտիկյանը, Ա. Խանջյանը, կուսակցական կարևոր հանձնարարություններ ստանալու նպատակով Կարսից նոր վերադարձած Ղ. Ղուկասյանը, իր հեղափոխական գործունեության համար Նոր Բայազետից արտաքսված Հ. Սարուխանյանը: Արմենկոմի քարտուղար Ս. Ալավերդյանը միտինգում բոցաշունչ ճառ է արտասանում և մերկացնում դաշնակցության կործանարար քաղաքականությունը: Ալավերդյանն իր խոսքն ավարտում է «Կեցցե Խորհրդային Հայաստանը» բացականչությամբ, որն արժանանում է ցուցարարների ջերմ ընդունելությանը:

Ալեքսանդրապոլում մայիսի 2-ին աշխատավորների ցույցը վերածվեց զինված ապստամբության: Նույն օրը բանվորները ու հեղափոխական զինվորները գրավեցին երկաթուղային կայարանը, դեպոն, ապստամբների կողմն անցավ «Վարդան Զորավար» զրահագնացքը՝ կապիտան Սարգիս Մուսայելյանի հրամանատարությամբ: Մարտերը բորբոքվում են: ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտեն, ելնելով ստեղծված քաղաքական դրությունից, մայիսի 6-ին լայն լիազորություններով Ալեքսանդրապոլ է ուղարկում Դ. Տեր-Սիմոնյանին և Ա. Մելքոնյանին: Ստեղծվում է Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտե, որի կազմում էին Ս. Մուսայելյանը, Ա. Նուրիջանյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Ա. Մելքոնյանը, Ա. Գոգունցը, Ա. Տեր-Սահակյանը, Լ. Ուլիբեկյանը, Պ. Պետրոսյանը և Գ. Սարգսյանը:

Թեև մայիսյան ապստամբությունը պարտություն կրեց, բայց մեծ դաս հանդիսացավ և դարձավ հաղթական նոյեմբերի նախերգանքը: «Մայիսյան ապստամբության գլխավոր դասը այն գիտակցությունն է,— ասել է Ալ. Մյասնիկյանը,— որ Հայաստանի աշխատավորության համար չկա փրկություն առանց խորհրդային իշխանության» (տե՛ս «Կոմունիստ», Երևան, № 82, 13 մայիսի, 1921):

Մայիսյան ապստամբության պարտությունից հետո Դ. Տեր-Սիմոնյանն անցնում է ընդհատակ՝ հաղթահարելով մեծ դժվարություններ: Նա մեկնում է Բաքու և աշխատում Հայաստանի կոմունիստական կազմակերպության արտասահմանյան բյուրոյում:

Դ. ՏԵՐ-ՍԻՄՈՆՅԱՆԸ 1920-ի աշնանը մեկնում է Դոնի Ռոստով, որտեղից ՌԿ(բ)Կ Կենտկոմի կազմբյուրոյի դեկտեմբերի 10-ի որոշմամբ նորից է գործուղվում արդեն սովետական դարձած Հայաստան: Շուտով Հայաստան է գալիս և Վ. Ի. Լենինի մերձավոր զինակից, ականավոր հեղափոխական Ալ. Մյասնիկյանը և ստանձնում հանրապետության Ժողկոմխորհի նախագահի պաշտոնը: Հենց այդ ժամանակ էլ Դ. Տեր-Սիմոնյանը կուսակցական ղեկավար աշխատանքի է անցնում, դառնում կուսավարության անդամ: Իբրև Անդրկովկասյան առանձին բանակի ռազմահեղափոխական խորհրդի լիազորի տեղակալ և Զանգեզուրի արտակարգ կոմիսար՝ նա ղեկավարում է Զանգեզուրում դաշնակցական բանդաների դեմ ծավալված կռիվները, կազմակերպում դրանց վերջնական ջախջախումը:

Հայաստանում սովետական կարգերի հաստատմամբ ու ամրապնդմամբ նոր փուլ է սկսվում Դ. Տեր-Սիմոնյանի կյանքի և գործունեության մեջ: Երկու տասնամյակ, մինչև իր կյանքի վերջը, նա ղեկավար դեր է խաղացել Սովետական Հայաստանի սոցիալիստական շինարարության գործում, ակտիվորեն մասնակցել ժողովրդական տնտեսության, մշակույթի, սոցիալ-քաղաքական զարգացման հոյակապ պլանների կենսագործմանը:

Մեծ են Դ. Տեր-Սիմոնյանի ծառայությունները սովետական իշխանության քաղաքականությունը, վերածնված հայ ժողովրդի ձեռքբերումները, սոցիալիզմի հաղթանակները սփյուռքահայության, արտասահմանյան հայկական գաղթօջախների աշխատավորության շրջանում պրոպագանդելու ասպարեզում: Նա Հայաստանի փոխօգնության կոմիտեի (ՀՕԿ) սյուներից էր, վայելում էր մեծ հեղինակություն աշխարհասփյուռ հայության շրջաններում: 1928-ին նա գործուղվում է Փարիզ, ուր խմբագրում է այնտեղ հայերեն հրատարակվող «Երևան» առաջադիմական թերթը: Դ. Տեր-Սիմոնյանը սփյուռքահայությանը միաբանության էր կոչում, պատմում վերածնունդ ապրող Հայաստանի մասին, կամուրջ գցում մայր հայրենիքի և սփյուռքահայ աշխատավորության միջև:

Որպես ՀԿ(բ)Կ Երևանի քաղաքային կոմիտեի քարտուղար, քաղսովետի գործկոմի նախագահ, սոցիալական ապահովության, կապի, լուսավորության ժողկոմ, ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյի անդամ, Անդրկովկասյան ֆեդերացիայի և Հայաստանի կենտգործկոմների անդամ Դ. Տեր-Սիմոնյանը դրսևորել է կուսակցական-պետական ղեկավար աշխատողի փայլուն հատկանիշներ: Դ. Տեր-Սիմոնյանի ստորագրությամբ էր, որ 1922-ի դեկտեմբերի 27-ին հեռագիր ուղարկվեց Վ. Ի. Լենինին՝ նրան Երևանի քաղսովետի պատվավոր անդամ ընտրելու առթիվ:

Քաղաքական-կուսակցական աշխատանքը նա հմտորեն զուգակցել է գիտամանկավարժական գործունեությանը: Եղել է Երևանի պետական համալսարանի լենինիզմի ամբիոնի վարիչ և դասախոս: Որպես մարքսիստական գրականության թարգմանիչ ու խմբագիր, լրագրող և հրապարակախոս՝ մեծ հեղինակություն է նվաճել:

Դ. Տեր-Սիմոնյանը կրթված մարքսիստ էր, գիտելիքների հարուստ պաշարով մտավորական: Նա եղել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի «Կոմունիստ» (այժմ՝ «Լենինյան ուղիով») տեսական-քաղաքական ամսագրի առաջին գլխավոր խմբագիրը, «Խորհրդային Հայաստան» թերթի խմբագիր, գրողների միության հիմնադիրներից մեկը և նրա անդրանիկ նախագահը (1934), Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր արվեստի գործերի վարչության պետ:

Դ. Տեր-Սիմոնյանը սոցիալիստական մշակույթի, լուսավորության, գրականության և արվեստի ջատագովն ու կազմակերպիչն էր: Երեսնական թվականների գաղափարախոսական պայքարի բարդ մթնոլորտում կարողանում էր պաշտպանել մեր պատմական արժեքները, դասական և ժամանակակից գրականության նվաճումները, սրտացավությամբ օգնել գրողներին, արվեստագետներին՝ հաղթահարելու դժվարությունները, յուրացնելու սոցիալիստական ռեալիզմի հիմունքները, կանգնելու գաղափարական ճիշտ դիրքերի վրա: Նա երբեք չէր դիմում ծայրահեղություններին, հավասարակշիռ էր, խոհեմ, մշտապես կուսակցական գծի հետևողական և խելամիտ պաշտպան:

Դ. ՏԵՐ-ՍԻՄՈՆՅԱՆԸ ճանաչված մարքսիստ-գրականագետ էր: Նրա գրչին են պատկանում բազմաթիվ տեսական, գրական-պատմական աշխատություններ: Դրանցից առանձնապես հիշատակության արժանի են **Կարլ Մարքս, Մարքսը և արվեստը, Ալ. Մարտունին Սովետական Հայաստանում և Անդրկովկասում, Բոլշևիզմի հաղթանակի հուշարձանը: Ստեփան Շահումյանի հուշարձանի բացման առթիվ,** ինչպես և **Մեծ գրողը և սոցիալիզմի մարտիկը** (Մ. Գորկի), **Միքայել Նալբանդյան, Մարիետա Շահինյան, Տերյանի պոեզիան, Հայաստանի գրականությունը** և ուրիշ երկեր:

Մեզանում Դ. Տեր-Սիմոնյանն առաջիններից էր, որ հայ ընթերցողին մատչելի լեզվով ներկայացրեց գիտական կոմունիզմի հիմնադիր Կարլ Մարքսի կենսագրությունը:

Դրվատելով հավատարիմ լենինյան Ստ. Շահումյանի հեղափոխական գործունեությունը՝ նա նշել է. «Ստեփան Շահումյանն այսօր նայում է մեզ որպես բոլշևիզմի, լենինիզմի առաջին դրոշակակիրը հայ բանվորական շարժման պատմության մեջ, իսկ նրան հաջորդող բոլշևիկյան սերունդներն իրենց հայացքներն ուղղած են Շահումյանի գրական ժառանգությանը՝ նրանում դիտելով բոլշևիզմի հայկական իրականության մեջ թողած առաջին ակոսները»:

Դ. Տեր-Սիմոնյանը գլխավորել է Հայաստանի գրողների պատվիրակությունը ՍՍՀՄ գրողների համամիութենական առաջին համագումարում, որտեղ ընդարձակ զեկուցում է կարդացել հայ գրականության մասին: Բնութագրելով հայ գրականության զարգացման հիմնական փուլերը, Մովսես Խորենացուց մինչև մեր օրերը՝ նա առանձնապես կանգ է առել Խ. Աբովյանի, Մ. Նալբանդյանի, Գ. Սունդուկյանի, Հովհ. Թումանյանի գրական ժառանգության վերլուծության վրա: Անդրադառնալով սովետահայ գրականությանը՝ նա ծանրակշիռ խոսք է ասել Շիրվանզադեի, Իսահակյանի, Արազու, Հակոբյանի, Չարենցի, Բակունցի, Զաբյանի և այլոց ստեղծագործությունների վերաբերյալ, շեշտել սոցիալիստական ռեալիզմի արմատավորման շնորհիվ ձեռք բերված նվաճումները:

Դ. Տեր-Սիմոնյանը ճշմարիտ արվեստի երկրպագու էր: Դրվատելով Ե. Չարենցի ստեղծագործությունները, հեղափոխությանը, Վ. Ի. Լենինին նվիրված հրաշունչ բանաստեղծությունները ու պոեմները՝ նա հատկապես բացահայտել է «Երկիր Նաիրի» վեպի գեղարվեստական արժանիքները, նշել, որ այն «դարաշրջան է բացում Հայաստանի սովետական գրականության զարգացման մեջ», որ «Չարենցը խոշոր ազդեցություն է գործել հայկական հեղափոխական պոեզիայի վրա»: Ուշագրավ են նրա «Մեր թատերական արվեստի մասին», «Հայաստանի կերպարվեստագետները և ճարտարապետները 13 տարում», «Սովետական Հայաստանի օպերան» և այլ հոդվածները: Նա Սովետական Հայաստանի կառավարության հանձնարարությամբ 1936 թ. գարնանը Փարիզից հայրենիք՝ Երևան է փոխադրել հանճարեղ Կոմիտասի աճյունը:

Դ. Տեր-Սիմոնյանի կյանքը ժողովրդանվեր գործ էր, համակ նվիրում կուսակցությանն ու կոմունիզմի գաղափարներին: Հենց այդ պատճառով էլ նա խոր հետք է թողել հայ հասարակական-քաղաքական մտքի, ժողովրդի սոցիալիստական վերածննդի տարեգրության մեջ:

Դ. Տեր-Սիմոնյանն իսկական կոմունիստ էր, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հմուտ պրոպագանդիստ, ազնիվ գրականագետի տիպար: Թեև մոտ կես դար է անցել նրա մահից, բայց նա մեզ հետ է, ապրում է մեր գործերում, երախտագետ ժողովրդի հիշողության մեջ:

**Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

---



---

Վերստուգող սրբագրիչ՝ Ջ. Մ. ԱՍԱՏՐՅԱՆ

---

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ 375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: Հեռախոսներ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22 մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանքի բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

---

*Հանձնված է շարվածքի 6.06.1985: Ստորագրված է տպագրության 5.07.1985: ՎՖ 05187: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16832: Պատվեր 1469:*

---

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

**Типография издательства ЦК КП Армении.**
**Ереван-23, пр. Орджоникидзе, 2.**